ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

2

ՓԵՏՐՎԱՐ

ԵՐԵՎԱՆ • 1968

### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից. նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Ձտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2 ՓԵՏՐՎԱՐ . 1968
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении




## Բովանդակություն

## Содержание




ԳՐԻԲԿՈՎ Ա. Ի.


# ԿԵՍ ԴԱՐ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

*Հիսուն տարի է բաժանում մեզ այն օրից, երբ մեծ Հոկտեմբերի նվաճումների պաշտպանության համար մղվող ահեղ մարտերում ծնվեցին աշխարհում առաջին սոցիալիստական պետության փառավոր զինված ուժերը։*

*Սովետական ժողովուրդը սիրո ջերմ զգացումով, անսահման հպարտությամբ է համակված այն ամենի համար, ինչ արին մեր բանակն ու նավատորմը հանուն մեծ Հոկտեմբերի նվաճումների պաշտպանության, աշխարհի խաղաղության ու մարդկանց երջանկության։*

*Սովետական զինված ուժերի ծննդյան օրը մեր երկրում նշվեց որպես համաժողովրդական տոն։ Այն նշեցին նաև սոցիալիստական երկրների ժողովուրդները, աշխարհի ողջ պրոգրեսիվ հասարակայնությունը։ Հողագնդի աշխատավորներն այդ օրերին խոնարհվեցին գալիք սերունդների ազատ ու երջանիկ կյանքի համար ահեղ կռիվներում ընկած մարտիկների շիրիմների առաջ, մարտիկներ, որոնց հիշատակը երախտագիտությամբ հավետ կհիշվի։*

*Սովետական զինված ուժերի 50-ամյա տարելիցն աշխարհի պրոգրեսիվ մարդկությունն իր տոնն է համարում, որովհետև նա պատմական փորձով համոզվեց, որ սովետական բանակն է նրա հավատարիմ և հուսալի հենարանն ազգային ազատագրության ու անկախության, ագրեսորների սանձահարման համար մղվող պայքարում, ագրեսորներ, որոնք սպառնում են մարդկությանը ներքաշել նոր, իր մասշտաբներով չտեսնված աղետի մեջ։*

*Սովետական զինված ուժերը միշտ պատվով են կատարել ու կատարում իրենց պատմական միսիան։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո, միջազգային իմպերիալիզմը համագործակցելով ներքին հակահեղափոխության հետ՝ կռվի ելավ սովետական իշխանությունը հենց օրրանում խեղդելու համար։ Սկսվեց ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի երկարատև ժամանակաշրջանը։ Անհրաժեշտ էր, ծայրահեղ քայքայման ու սովի պայմաններում, հակահարված տալ մինչև ատամները զինված թշնամուն, հանուն սոցիալիստական հայրենիքի պաշտպանության ոտքի հանել ժողովրդական մասսաներին, անողոք պայքարում ստեղծել ու ամրապնդել քաջարի բանակ։ Առաջնորդվելով Վ. Ի. Լենինի՝ ամեն մի հեղափոխություն միայն այն դեպքում է նշանակալից, եթե ունակ է պաշտպանվե-*

լու՝ ցուցումով, կոմունիստական կուսակցությունն իր ողջ գործունեությունն
ուղղեց կարմիր բանակի ստեղծմանն ու ամրապնդմանը։
Կուսակցության մեծ առաջնորդ, աշխարհում առաջին սոցիալիստական
պետության ստեղծող Վ. Ի. Լենինը հիրավի այդ վիթխարի գործի գլուխն էր
կանգնած։ Լենինյան հանճարը, կուսակցության հսկայական քաղաքական ու
կազմակերպական աշխատանքը, ողջ ժողովրդի հեղափոխական խանդավա-
ռությունը, աշխատավորության ու բանակի միասնությունը հնարավորություն
ընձեռեցին հաղթահարելու անասելի դժվարությունները և ապահովելու կար-
միր բանակի մարտական հզորության արագ աճը։
Համառ մարտերում էր հասակ առնում ու արիանում սոցիալիստական
պետության երիտասարդ բանակը, որը եռամյա ծանր պայքարից հետո ջախ-
ջախեց ինտերվենտների ու սպիտակգվարդիականների հորդաները, նրանց
մնացորդները դուրս շպրտեց հայրենի սահմաններից։ Սովետական իշխա-
նությունը, նրա արդարացի դեկրետները, լենինյան ամենաճշմարիտ քաղա-
քականությունը պաշտպանող հրացանավոր մարդը վայելում էր իր ժողովրդի
անկեղծ համակրանքը։ Քաղաքացիական պատերազմի տարիներին, երբ
վճռվում էր աշխարհում առաջին սոցիալիստական պետության բախտը, որդի-
ներին կարմիր բանակ ճանապարհելիս, մայրերը նրանց մաղթում էին՝ լինել
արի, կռվել անձնուրաց, ջախջախել հայրենիքի թշնամիներին, կրծքով պաշտ-
պանել հարազատ սովետական հողի յուրաքանչյուր թիզը։
1920 թվականի նոյեմբերի 29-ին ոտքի ելած Հայաստանի բանվորներն
ու գյուղացիները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, վերջ
տվին դաշնակների ատելի տիրապետությանը և հաստատեցին սովետական
իշխանություն։ Հայ ժողովրդի համար պատմական այդ նշանավոր պահին
ռուս մեծ ժողովուրդը եղբայրական օգնության իր ամուր ձեռքը մեկնեց նրան։
Կատարելով ապստամբած հայ ժողովրդի խնդիրքը՝ սովետական կառավարու-
թյան հրամանով, Հայաստանի բանվորներին ու գյուղացիներին օգնության
եկավ փառաբանված XI կարմիր բանակը, որը գլխավորում էին Ս. Կիրովը,
Գ. Օրջոնիկիձեն, Ա. Միկոյանը։ Հայաստանը սովետական դարձավ։ Նրա վրա
ճառագեց ազատության արևը։ Սովետական իշխանությունը հայ ժողովրդին
բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն։
Լենինը ջերմորեն ողջունեց Հայաստանում սովետական կարգերի հաս-
տատումը։ 1920 թվականի դեկտեմբերի 2-ին Հայաստանի ռազմա-հեղափո-
խական կոմիտեի նախագահ Ս. Կասյանին ուղարկած հեռագրում նա գրում
էր. «Հանձին Ձեզ ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշ-
խատավորական Սովետական Հայաստանին»։

Ինտերվենտների ու ներքին հակահեղափոխականության դեմ տարած
հաղթանակից հետո կուսակցությունը չմոռացավ մեր հայրենիքի վրա իմպե-
րիալիստների նոր, հնարավոր ոտնձգությունների վտանգի մասին, ձեռնարկեց
բոլոր միջոցները նրա պաշտպանության ամրապնդման համար։
Կոմունիստական կուսակցության ստեղծած ու դաստիարակած, ողջ ժո-
ղովրդի կողմից հոգատարությամբ ու սիրով շրջապատված սովետական զին-
ված ուժերը դարձան սովետական պետությունն արտաքին թշնամիներից հու-
սալիորեն պաշտպանող հզոր ուժ։ Դրանում մեկ անգամ չէ, որ համոզվել են
իմպերիալիստական ագրեսորները։



Աշխատավորական մասսաները, աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը
հանձին սովետական բանակի տեսնում էին ֆաշիստական ագրեսիային հա-
կահարված տալու գլխավոր ու վճռական ուժը։ Եվ մեր բանակը Հայրենական
մեծ պատերազմի տարիներին լիովին արդարացրեց նրանց հույսերը։ Իմպե-
րիալիստական լագերի մեր հակառակորդները համառորեն պնդում էին, թե
սովետական զինված ուժերը մեծ պատերազմում չեն դիմանա մարտական
փորձություններին։ Բայց պատմությունը չարախնդաց նրանց «մարգարեու-
թյունների» վրա։
Կոմունիստական կուսակցության կողմից ղեկավարվող ու ողջ ժողովր-
դի աջակցությունը վայելող մեր բանակը ո՛չ միայն անհողդողդ մնաց, այլև
կարողացավ ջախջախել թշնամուն, ոչնչացնել նրան սեփական որջում, ֆա-
շիստական ստրկությունից ազատագրել Եվրոպայի ու Ասիայի շատ ժողովուրդ-
ների։ Մարտի դաշտերում սովետական զինված ուժերի հաղթանակը վճռեց
համաշխարհային երկրորդ պատերազմի ելքը։ Պատերազմի ընթացքում սո-
վետական բանակն արիացավ ու կոփվեց, մարտական վիթխարի փորձ կու-
տակեց և դարձավ ժամանակակից առաջնակարգ բանակ։ Պատերազմի բո-
ցերի մեջ աճեցին ռազմական հրաշալի կադրեր, ստեղծվեց զորավարների
մեծ համաստեղություն, որի կազմակերպած ու իրագործած ռազմական
գործողությունները փառքով պսակեցին մեր հայրենիքը։ Այդ համաստեղու-
թյան աստղերից են նաև հայ ժողովրդի քաջարի զավակներ՝ Սովետական
Միության մարշալ Հ. Խ. Բաղրամյանը, Սովետական Միության նավատորմի
ծովակալ Հ. Ս. Իսակովը, ավիացիայի մարշալ Ա. Ս. Խուդյակովը և ուրիշներ։
Գերմանա-ֆաշիստական հորդայի ջախջախումը Մոսկվայի մատույցնե-
րում, մեծ ճակատամարտը Վոլգայի ափին, Կուրսկի աղեղում, վերջին մար-
տական գործողությունները Բեռլինում, ճապոնական իմպերիալիզմի գլխա-
վոր հարվածային ուժի՝ Կվանտունյան բանակի ջախջախումը, ինչպես նաև սո-
վետական զորքերի բազմաթիվ այլ գործողություններ ռազմական արվեստի
պատմության մեջ մտան որպես չգերազանցված օրինակներ։ Մեր երկրի զին-
ված ուժերը մեկ անգամ ևս աշխարհին ցույց տվին, որ Սովետական Միու-
թյունը տապալելու ամեն մի փորձ ձախողման է դատապարտված։ Այս անգամ
ևս իմպերիալիզմը անկարող գտնվեց պատերազմի միջոցով կասեցնելու պատ-
մության զարգացման ընթացքը։ Միջազգային իմպերիալիզմի հարվածային
ուժի՝ ֆաշիզմի ջախջախման շնորհիվ Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկր-
ներում հաղթանակեց սոցիալիստական հեղափոխությունը, նպաստավոր պայ-
մաններ ստեղծվեցին ազատության ու անկախության ձգտող գաղութային ժո-
ղովուրդների հաղթության համար։ Սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի շըր-
ջանակներից, դարձավ հզոր և անընդհատ աճող համաշխարհային սիստեմ։
Իր հայրենիքի ազատությանն ու երջանկությանը, ֆաշիստական լծից մարդ-
կության ազատագրմանը ամեն ինչ նվիրաբերող սովետական ազատա-
րար զինվորի կերպարը թանկ ու հարազատ դարձավ աշխարհի բոլոր հասա-
րակ մարդկանց համար։ Սովետական մարտիկները՝ հանուն աշխարհի լուսա-
վոր կյանքի, կռվում էին արիաբար, հմտորեն, համարձակ, չխնայելով արյուն
ու կյանք։ Մեր ժողովուրդը խնամքով պահպանում է հայրենիքի համար զոհ-
ված հերոսների հիշատակը։ Նիկոլայ Գաստելլոյի ու Նելսոն Ստեփանյանի,
Յուրի Սմիռնովի ու Սերգեյ Բուռնազյանի, Բրեստի ամրոցի պաշտպաններ սպա
Պյոտր Գավրիլովի ու կոմերիտկազմակերպիչ Սամվել Մաթևոսյանի, Կրաս-
նոդոնի երիտգվարդիականներ Օլեգ Կոշևոյի ու Ժորա Հարությունյանցի, հայ

քաջակորով մարտիկներ Սովետական Միության հերոսներ Հ. Ավետիսյանի, Դ. Մաղոյանի ու Թ. Ավթանդիլյանի, հերոս պարտիզան Քոլոզյանի և մեր ժողովրդի բոլոր քաջարի զավակների անմոռաց սխրագործությունները հավերժ կապրեն միլիոնների սրտերում:

Ավելի քան քսաներկու տարի է անցել Հայրենական պատերազմից: Եվ որքան անցյալի գիրկն են անցնում ռազմի տարիները, այնքան ավելի փառահեղ են ուրվագծվում այդ տարիներին կոմունիստական կուսակցության ղեկավարած սովետական ժողովրդի սխրագործությունները:

Իմպերիալիզմի գաղափարախոսները լավ գիտեն, թե Հայրենական պատերազմում Սովետական Միության տարած հաղթանակը ինչպիսի հեղափոխականացնող ազդեցություն ունեցավ ժողովրդական մասսաների վրա: Նրանք տեսնում են, թե այդ հաղթանակի շնորհիվ որքան է մեծացել ՍՍՀՄ ազդեցությունը համաշխարհային պատմության ընթացքի վրա: Դրանից սարսափահար նրանք ձգտում են ստահոդ գրականության պղտոր հեղեղում ամեն կերպ վարկաբեկել մեր զինված ուժերը, նսեմացնել Սովետական Միության վիթխարի ներդրումը ֆաշիզմի ջախջախման գործում: Բայց պատմության կեղծարարներին երբեք չի հաջողվի նսեմացնել սովետական ժողովրդի ու նրա բանակի սխրագործությունների նշանակությունը: Սովետական հայրենասիրության, ինտերնացիոնալ պարտքի բարձր գիտակցության ոգով կուսակցության դաստիարակած սովետական զինվոր-մարտիկի, զինվոր-քաղաքացու բյուրեղյա, անբիծ կերպարը ընդմիշտ կմնա մարդկության հիշողության մեջ:

Մեր երկրի զինված ուժերը թևակոխում են իրենց գոյության երկրորդ հիսնամյակն այնպիսի նշանակալի ժամանակաշրջանում, երբ սովետական ժողովուրդը մեծ բերկրանքով ու հանդիսավորությամբ նշելով հոկտեմբերի կեսդարյա տարելիցը, օր-օրի ավելի ու ավելի է բարձրացնում կոմունիզմի հոյակապ շենքը: Սովետական յուրաքանչյուր քաղաքացու մեջ գոհունակության խոր զգացում, օրինական հպարտություն, հոգեկան ուժերի նոր հորձանք առաջացրին մեր երկրի կեսդարյա ուղու հանրագումարներն ու հեռանկարները, որոնց մասին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում իր զեկուցման մեջ խոսեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը:

Այդ անմոռաց օրերին միլիոնավոր մարդկանց սրտեր նոր թափով տրոփեցին՝ հայրենասիրական ավյունով լի: Ինչպես երբեք, վառ ու լիակատար դրսևորվեց սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը: Սովետական իշխանության ու կուսակցության դաստիարակած քաղաքի ու գյուղի աշխատավորները միասնական ջանքերով, կենսագործելով ՍՄԿԿ XXIII համագումարի նշած ստեղծագործական վերափոխումների ծրագիրը, կառուցում են կոմունիզմի նյութատեխնիկական բազան:

Միևնույն խոհերով, հոգսերով և ուրախություններով են ապրում սովետական մարդիկ, մեր ողջ միաձույլ հասարակությունը: Ընդհանուր ջանքերով ձեռք բերված նվաճումներն ու հաղթանակները ուրախացնում են մեր հայրենիքի աշխատավորներին: Հոբելյանական օրերին, դիմելով սովետական ժողովրդին, կուսակցությունն ու կառավարությունը կոչ արին կոմունիզմի համար մղվող պայքարում նոր բնագծեր նվաճել: Տարակույս չկա, որ առա-



ջիկայում կյանքի բոլոր բնագավառները կնշանավորվեն նոր, հիանալի գործերով:

Սովետական Միության հետ աննախընթաց վերելքի ուղիով են ընթանում նրա մտերիմ բարեկամները և կոմունիզմի գաղափարների հաղթանակի համար մղվող պայքարի զինակիցները՝ սոցիալիստական երկրները, որոնց եղբայրական համագործակցությունն ու փոխօգնությունը նպաստում են նրանցից յուրաքանչյուրի անարգել զարգացմանը, սոցիալիզմի ողջ համաշխարհային սիստեմի հզորացմանը:

Ազատության ու երջանկության համար մղվող պայքարում ծնունդ առած սոցիալիստական երկրների ժողովուրդների բարեկամությունը, որն ամրապնդվեց ընդհանուր թշնամու դեմ մարտերում թափված արյամբ, ավելի կոփվեց, նոր ուժ ստացավ: Մարդկության առջև բաց անելով կոմունիստական հասարակության ճանապարհը, սովետական ժողովուրդը համաշխարհային ասպարեզում երևան է գալիս որպես առաջընթաց մեծ ուժ, որպես աշխատավոր, ստեղծագործող ժողովուրդ: Սովետական մարդիկ, զբաղված լինելով ստեղծագործական աշխատանքով, կենսականորեն շահագրգռված են աշխարհի խաղաղությամբ և ողջ աշխարհում անվտանգության ապահովմամբ: Մեր ժողովրդի այդ կամքն իր արտացոլումն է գտնում կուսակցության և կառավարության արտաքին քաղաքականության մեջ: ՍՄԿԿ-ի համարձակ ու սկզբունքային, կայուն և միաժամանակ ճկուն արտաքին քաղաքականությունը Սովետական Միությանը հնարավորություն է ընձեռում լինելու համաշխարհային հիմնական պրոբլեմների լուծման նախաձեռնող: Այդ քաղաքականությունը բխում է ողջ աշխարհի ժողովուրդների արմատական շահերից և հզոր խթան է հանդիսանում համաշխարհային պատմական առաջընթացում: Ի հակակշիռ Սովետական Միության և սոցիալիստական երկրների, իմպերիալիստական տերությունները վարում են հարկադրանքի և սպառնալիքի, բռնության և կամայականության քաղաքականություն: Նրանք չեն ուզում հաշտվել սոցիալիստական սիստեմի գոյության և համաշխարհային ասպարեզում իրենց դիրքերի թուլացման հետ: Իմպերիալիստներն ամեն ինչ անում են, որ ուժերի հարաբերակցությունը փոխեն հօգուտ իրենց: Նրանք երկու սիստեմների միջև պատմական վեճը զենքի միջոցով են ուզում լուծել:

ՍՍՀՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների դեմ պատերազմի նախապատրաստմանն են ծառայում ԱՄՆ-ի ու նրա զինակից իմպերիալիստների քաղաքականությունը, էկոնոմիկան, գաղափարախոսությունն ու ռազմական մեքենան: Տեղի է ունենում էկոնոմիկայի հետագա ռազմականացում, հզորանում ու կատարելագործվում են ագրեսիվ բլոկի երկրների զինված ուժերը: ՆԱՏՕ-ի գոյության ողջ ժամանակաշրջանում պատերազմի նախապատրաստման վրա ծախսվել են հազարավոր միլիարդ դոլարներ: Սպառազինման մրցավազքին տոն են տալիս ԱՄՆ-ի իմպերիալիստները: Հետպատերազմյան քսան տարիների ընթացքում ԱՄՆ-ի ռազմական ծախսերը 48 անգամ գերազանցել են նախապատերազմյան երկու տասնամյակից: Ամերիկյան ռեակցիայի ավանտյուրիզմն ու ագրեսիան առանձնապես երևան եկան վիետնամական արյունալի պատերազմում: Մարդկանց ոչնչացման բարբարոսական բոլոր միջոցները՝ ռումբերը, արկերը, ականները, քիմիական ու բակտերիոլոգիական զենքը օգտագործվում են հերոս ժողովրդի դեմ: Ամերիկյան ավելի քան կես միլիոն զորք է մասնակցում այդ զավթողական պատերազմին:

Խաղաղության գործին լուրջ վտանգ է սպառնում Արևմտյան Գերմանիան:

Բոննի ղեկավարների քաղաքականության նշանաբանն է՝ վրեժ լուծել երկ-
րորդ համաշխարհային պատերազմում կրած պարտության համար:

Իրադարձությունները Մերձավոր Արևելքում, իմպերիալիզմի կազմակեր-
պած ռեակցիոն հեղաշրջումները Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկա-
յի առանձին երկրներում ցույց են տալիս, որ իմպերիալիզմը չի փոխել իր ագ-
րեսիվ բնույթը:

Համաշխարհային նոր պատերազմի հասունացող վտանգի պայմաննե-
րում ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը վճռական միջոցներ են ձեռ-
նարկում ագրեսորների մերկացման ու խաղաղության գործին վնասող նրանց
գործունեության խափանման, խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի
համար պայքարող ուժերի ամրապնդման ու համախմբման համար: Լ. Ի.
Բրեժնևը Սոցիալիզմի հաղթանակների հիսուն տարին իր զեկուցման մեջ ա-
սաց. «Լավ իմանալով իմպերիալիզմի ագրեսիվ էությունը, մեր կուսակցու-
թյունն անհրաժեշտ է համարում, որ Սովետական Միության խաղաղասիրա-
կան քաղաքականությունն ամրապնդվի նրա անխորտակելի պաշտպանական
հզորությամբ: Այդ են պահանջում սովետական ժողովրդի շահերը, ընդհանուր
խաղաղության ապահովման շահերը:

Ուստի, Կենտրոնական կոմիտեի, սովետական կառավարության, ամբողջ
ժողովրդի մշտական հոգսերից մեկը մեր փառապանծ զինված ուժերի ամ-
րապնդումն է»:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ինդուստրիալ-տեխնիկական բազայի
վրա, արտադրության մեջ հայրենական գիտության նվաճումների ներդրմամբ
անշեղորեն ու համակողմանիորեն կատարելագործվում է մեր պաշտպանա-
կան արդյունաբերությունը: Մարտական տեխնիկայի արտադրության ավե-
լացման հետ մեկտեղ, մեծ ուշադրություն է նվիրվում դրա նոր տեսակների
կատարելագործմանն ու յուրացմանը, մեր զենքերի մարտական ու տեխնի-
կական որակի բարձրացմանը: Սովետական բանակն ու ռազմա-ծովային նա-
վատորմն այժմ ունեն ժամանակակից հզոր սպառազինություն: Վերջին տա-
րիներին հիմնական ուշադրությունը կենտրոնացվել է ստրատեգիական նշա-
նակություն ունեցող հրթիռային զենքերի և ատոմային սուզանավերի կատա-
րելագործմանը, որոնք պատերազմի ժամանակ ագրեսորներին ետ մղելու և
վճռական հակահարված տալու գլխավոր միջոցները պետք է լինեն:

Մեզ մոտ կարճ ժամանակում շարք մտավ ստրատեգիական զանազան
միջոցների ամբողջ կոմպլեքս, ստեղծվեցին նոր, մի շարք հրթիռային սպա-
ռազինման տեսակներ, ինչպես և շարժական հրթիռային արկեր: Զգալի չա-
փով մեծացել է հրթիռակիր հեռավոր օդագնացության հզորությունը: Մեր
տանկերը մի շարք կարևորագույն ցուցանիշներով գերազանցում են ԱՄՆ-ի և
ՆԱՏՕ-ում գտնվող այլ երկրների տանկերի լավագույն նմուշները: ՀՕՊ-ի
զորքերը լիովին ապահովված են նոր, բարձրորակ զենիթա-հրթիռային սիս-
տեմներով և ինքնաթիռներով, հզորացել են նաև ցամաքային, կապի, ինժե-
ներա-տեխնիկական զորքերը, որի վկայությունը «Դնեպր» աշնանային մեծ
զորախաղերն էին:

Սակայն մեր բանակի ու նավատորմի հզորությունը միայն ժամանակա-
կից մարտական տեխնիկայով չի սահմանափակվում: Այն պայմանավորված
է, ամենից առաջ, ռազմական գործին հմուտ, հրաշալի մարդկանցով, նրանց
բարոյա-մարտական արժանիքներով: Սովետական զինված ուժերը ունեն լավ
նախապատրաստված սպայական կազմ, որն ունակ է ղեկավարելու զորքերը



ինչպես խաղաղ պայմաններում, այնպես էլ պատերազմում: Այժմ յուրաքան-
չյուր չորրորդ սպան ունի ռազմական բարձրագույն կամ մասնագիտական
կրթություն: Սովետական բանակը և ռազմա-ծովային նավատորմը ունեն
հրաշալի զինվորներ, նավաստիներ, ենթասպաներ ու ավագներ: Նրանք դաս-
տիարակված են ավագ սերնդի մարտական տրադիցիաներով, նրանց հատուկ
են քաղաքական բարձր գիտակցականությունը, անսահման նվիրվածությու-
նը մեր կուսակցությանը, հերոսությունը, հայրենիքի պաշտպանության հա-
մար անձնազոհության պատրաստակամությունը:

1967 թվականի նոյեմբերի 3-ի իր զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևն
ընդգծեց, որ այժմ մեր սովետական բանակը հզոր, ահեղ, անհաղթելի ուժ
է: Նա զինված է աշխարհի ամենալավագույն զենքով: Սովետական ռազմիկ-
ները՝ զինվորներից մինչև մարշալները, նավաստիներից մինչև ծովակալները,
զինվորական գործի իսկական վարպետներ են, որոնք գերազանց են տիրա-
պետում ռազմական գիտությանը և իրենց վստահված հիանալի տեխնիկային,
դրանք մարդիկ են, որոնք անսահմանորեն նվիրված են մեր կուսակցությանը,
կոմունիզմի գործին:

Միայն վերջին չորս տարիների ընթացքում տասը հազար զինծառայող-
ներ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով:
Մեծ Հոկտեմբերի 50-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սո-
վետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 300 հուշադրոշներ
հանձնվեցին լավագույն զորամասերին, միավորումներին, ռազմա-ուսումնա-
կան հաստատություններին: Խաղաղության օրերին էլ սովետական մարտիկ-
ներն իրենց կատարած գործերով հերոսներ են դառնում ու հաստատում Ա. Մ.
Գորկու ճշմարիտ ասույթը՝ «Կյանքում միշտ կարելի է սխրանքներ գործել»:

Սովետական բանակի ուժի ու հզորության գլխավոր աղբյուրը, ռազմա-
կան շինարարության հիմքերի հիմքը զինված ուժերին մեր կուսակցության
ցույց տված ղեկավարությունն է: Կոմունիստական կուսակցությունն ու նրա
լենինյան Կենտրոնական կոմիտեն, հաշվի առնելով ռազմական գործում ար-
մատական փոփոխություններ առաջացնող պրոցեսները, հնարավոր պատե-
րազմի բնույթը, գիտակցորեն ձևակերպեցին սովետական ռազմական շինա-
րարության սկզբունքները ժամանակակից փուլում, սահմանեցին զինված
պայքար վարելու միջոցներն ու եղանակները:

Ռազմական շինարարությունը պետական շինարարության մի մասն է,
բանակն էլ՝ ժողովրդի: Մեր բանակի ուժը անսասան միասնությունն է ժողո-
վրդի հետ: Ժողովրդի հետ բանակի կապերի ուժեղացումը՝ սոցիալիստական
երկրների բանակների ստեղծման քաղաքական սկզբունքներից մեկն է, նրանց
հզորության հիմքը:

Մեծ գոհունակությամբ կարող ենք նշել, որ ձեռնարկությունների, ուսում-
նական հաստատությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների տրադի-
ցիոն շեֆական կապերը սովետական բանակի զորամասերի և ստորաբաժա-
նումների հետ ամրապնդվում ու ընդլայնվում են: Անցյալ տարի դասախոսնե-
րի, պրոպագանդիստների, արտադրության առաջավորների և նորարարների
մի մեծ ջոկատ ելույթներ է ունեցել ռազմիկների համար քաղաքական ու գի-
տական տարբեր հարցերի շուրջ, օգնել կուսակցական կազմակերպություն-
ներին՝ անձնակազմի, ռազմիկ-քաղաքացու բարձր հատկություններ ձևավորե-
լուն: Հայաստանի գիտնականներն ակտիվ մասնակցություն են ունենում գի-
-ության ու տեխնիկայի միամսյակներին: Հայաստանի գիտությունների ա-

Ակադեմիան, գիտական հիմնարկները, բարձրագույն ուսումնական հաստատությունները շեֆության կարգով մեծ աջակցություն են ցույց տալիս զորամասերում ու ստորաբաժանումներում գործող տեխնիկական գիտությունների համալսարաններին ու կուլտուրայի լեկտորիումներին, կազմակերպում են էքսկուրսիաներ։ Զինվորների հետ հաճախակի հանդիպումներ են ունենում հանրապետության գրողները, նկարիչները և կինեմատոգրաֆիստները։ Ստորաբաժանումներ են գալիս բանաստեղծներ ու գրողներ (Գ. Էմինը, Մ. Շաթիրյանը, Ա. Դարբնին, Լ. Հուրունցը, Ա. Գրաշին և ուրիշներ)։ Նկարիչ Վարդանյանը զորամասերում կազմակերպել է իր աշխատանքների ցուցահանդեսը («Մարդի՛կ, զգոն եղեք»)։ Հայաստանի նկարիչների միությունը ցուցադրել է հայ նկարիչների գործերը ռազմական թեմաներով։ Անձնակազմի համար զեկուցումներ ու դասախոսություններ են կարդում արվեստի վաստակավոր գործիչները, երաժիշտները, արվեստագետները։ Հայֆիլմ կինոստուդիան մեծ օգնություն ցույց տվեց սիրողների՝ «Կորչագինյան սերնդի հերոսը», «Իսկապես լաչարի», «Ծառայում եմ Սովետական Միությանը» ֆիլմերի ստեղծմանը։

Համոզված կարելի է ասել, որ Սովետական Հայաստանի կուլտուրայի աշխատողները, ի պատասխան զինված ուժերի կուլտուրական շեֆության կենտրոնական հանձնաժողովի կոչի, սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի 50-ամյակի առթիվ ավելի բարձր կպահեն կուլտուրական շեֆության տրադիցիոն դրոշը, կամրապնդեն բանակի ու ժողովրդի միասնությունը։ Այդ միասնությամբ է պայմանավորված նաև սովետական մարդկանց, հատկապես երիտասարդության, ռազմա-հայրենասիրական դաստիարակության բարելավումը։ Այս հարցին պետք է լուրջ ուշադրություն նվիրեն կոմերիտմիությունը, պրոֆմիությունը, բոլոր հասարակական կազմակերպությունները։ Այդ հատկապես կարևոր է ընդհանուր զինվորական պարտականության նոր օրենքի հրապարակման առումով։ Օրենքում մի շարք սկզբունքային փոփոխություններ են մտցվել բանակում ու նավատորմում ծառայելու կարգի վերաբերյալ։ Մեկ տարով կրճատվել է զինվորների, նավաստիների, սերժանտների ու ավագների իսկական ծառայության ժամկետը, միասնական զորակոչի հասակ է սահմանվել 18 տարին, ընդ որում, տարեկան երկու անգամ է իսկական զինվորական ծառայության զորակոչ լինելու։ Նոր օրենքի այս և մյուս դրույթները լիովին համապատասխանում են մեր ժողովրդական տնտեսության հետագա զարգացմանն ու սովետական մարդկանց շահերին, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության կազմակերպման ժամանակակից պահանջներին։

Սովետական զինված ուժերի մեծ տոնը՝ նրանց գոյության կիսդարյա տարելիցը, որ նշվեց փետրվարի 23-ին, թանկ է ողջ սովետական ժողովրդի, զինվորների, սերժանտների, սպաների ու գեներալների մարտական քաջարի գործերով։ Այն թանկ է մեր երջանկության համար արյուն թափած, հայրենիքի թշնամիների դեմ մղված դաժան գոտեմարտերում կյանքները զոհած մեր պապերի, հայրերի ու մայրերի հավերժ հիշատակով։ Այն թանկ է իր ժողովրդին ջերմ սիրող և անսահման նվիրված «Հրացանավոր մարդուն», որն աչալուրջ կանգնած է հայրենիքի շահերի պաշտպանության, կոմունիզմ կառուցողների ստեղծագործ աշխատանքի պաշտպանության դիրքում։

ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ Ռ. Գ.

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ, ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԸՆՏՐԱՆՔԻ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ

1871 թ. մարտ։ Հուզված ամբոխներն ազատագրված Փարիզի փողոցներում տենդագին ամրացնում են բարիկադները, իսկ քաղաքային խորհրդարանում, ծխով լցված դահլիճում, նիստեր են անում Կոմունայի պատգամավորները։ Նրանք, որ անվեհերությամբ նվիրվել են հեղափոխությանը, ընկրճվել չգիտեն։ Կրքերի շիկացումն այստեղ առաջացել է ապստամբած ժողովրդի բախտը որոշելու անհրաժեշտությունից։ Եվ պատգամավորներից մեկը, մի կողմ դնելով թղթերը, հետևյալ խոսքերն է շպրտում իր ընդդիմախոսին՝ «Եթե մենք, որ դավանում ենք սոցիալական հավասարության ու ազատության սկզբունքին, ոչինչ չանենք պրոլետարիատի համար, ապա ես ոչ մի իմաստ չեմ տեսնում Կոմունայի գոյության մեջ»[1]։

Այդ խոսքերն այն ժամանակ հնչում էին ոչ այնքան որպես կշտամբանք կոմունարների դրսևորած օպորտունիզմի հասցեին, որքան մարտահրավեր բուրժուական Վերսալին։ Միայն ավելի ուշ հասկանալի եղավ, որ դա պատմությանը նետված մրցահրավեր էր։

...1917 թ. հոկտեմբեր։

Իր մասշտաբներով վիթխարի հեղափոխական պայթյունը երկրի երեսից սրբեց-տարավ ինքնակալության հիմքերը։ Բարձրացան նրանք, ովքեր, Լենինի արտահայտությամբ, «կանգնած էին 1871 թ. Կոմունայի ուսերին»։ Նրանք ճանապարհ բացեցին հեղափոխության հաղթական ուժերի համար և վճռականություն արտահայտեցին ստեղծելու արժեքների մի նոր աշխարհ, արժեքներ, որոնք պետք է մարդկայնացնեն աշխատավոր մարդկանց աշխարհը։ Եվ Սովետական իշխանության մարդասիրությամբ հագեցած առաջին իսկ դեկրետները համոզում էին դրանում։ Հենց դրանք էլ համոզում էին, որ իմաստալից են եղել այն զոհաբերությունները, որ աշխատավորությունը հազարներով բերում էր ազատության զոհասեղանին...

1917 թ. հոկտեմբերից հետո էլ շարունակում էր շիկանալ մթնոլորտը։ Վրա հասնող սովի, ինտերվենցիայի, հիվանդությունների կապակցությամբ դրությունը չէր կարող է՛լ ավելի տագնապալից չդառնալ։ Հենց այդ ժամանակ խրամատներում կարդալով թերթը, զինվորները ծանոթանում էին այն կարգերի սկզբունքներին ու նպատակներին, որ իրենք պետք է պաշտպանեին։

[1] Տե՛ս «Протоколы Парижской Коммуны 1871 года», т. 2, М., 1962, стр. 268.

Այն ժամանակ Լենինը գրում էր. «Ազատությունը... ամեն մի հեղափոխության համար, սոցիալիստական թե դեմոկրատական լինի այն, մի լոզունգ է, որը շատ ու շատ էական է։ Իսկ մեր ծրագիրը հայտարարում է՝ ազատությունը, եթե այն հակասում է աշխատանքի ազատագրությանը կապիտալի ճնշումից, խաբեություն է» [1]։

Դա նոր քաղաքակրթության արշալույսն էր։

## I

Բերված երկու պատմական փաստերը, թեկուզև փոքր չափով, բայց բավականին համոզիչ կերպով ցույց են տալիս, որ պրոլետարիատն է այն միակ առաջադիմական դասակարգը, որն ընդունակ է հասարակական կյանքում հետևողականորեն և նպատակասլաց իրականացնելու իսկական ազատության սկզբունքները։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի պահից մեզ բաժանող կես դարը սոցիալական ու տնտեսական այնպիսի բուռն զարգացման մի ժամանակաշրջան էր, որը վերափոխեց մեր հասարակության ամբողջ կառուցվածքը։ Մեր ամբողջ հասարակարգին բնորոշ դինամիկությունը բացատրվում է իսկական մասսայական հերոսությամբ, որ սովետական մարդիկ դրսևորել են մարտերում՝ Ձմեռային պալատը գրոհելուց մինչև ռայխստագի գրավումը, աշխատանքում՝ առաջին կոմունիստական շաբաթօրյակներից մինչև վիթխարի հիդրոէլեկտրակայանների կառուցումը, նոր քաղաքների ստեղծումը և տիեզերքի նվաճման զարմանահրաշ հասումները։

Սոցիալիստական գիտակցությունը, կոլեկտիվիզմը, համոզմունքների և վարքագծի միասնությունը՝ մեր հասարակության բարոյական սկզբունքների վրա հիմնված բնավորության գծեր են, որոնք վկայում են հեղափոխության ծնունդ նոր մարդու բարձր սոցիալականության մասին։ Մարդը, որպես պատմության մեջ նոր հասարակական տիպ, չէր կարող ձևավորվել այն պայմաններում, երբ մասսաները ճզմված էին տնտեսապես, սոցիալապես և հոգեպես, այնպիսի հասարակության մեջ, որտեղ հաղթահարված չէին մարդու և հասարակության փոխադարձ թշնամությունն ու օտարումը։ Միայն կոմունիզմն է «իսկապես լուծում հակասությունները մարդու և բնության, մարդու և մարդու միջև». այդ դրույթը, որ հիմնավորել է մարքսիզմը [2] և հաստատված է սոցիալիստական շինարարության կեսդարյա պրակտիկայով, համապատասխանում է պատմության տրամաբանությանը։ Արտադրության միջոցների հանրայնացումը, մասնավոր սեփականության վերացումը, հետևապես, նրա վրա հիմնված՝ մարդու կողմից մարդու շահագործման վերացումը էական, որոշիչ նշանակություն ունեցան հասարակության և անհատի միջև փոխհարաբերությունները հումանիստական դարձնելու համար։ Արտադրության միջոցների հանրայնացումը «արքիմեդյան հենակետն» է այն բոլոր պրոցեսներում, որոնք վերացնում են կոնֆլիկտայնությունը հարաբերություններում, հանգեցնում են անհատի և հասարակության շահերի մերձեցման, իսկ այնուհետև զուգակցման (գլխավորի մեջ, հիմնականում), որի առկայությամբ միայն հնարավոր են անհատի բազմակողմանի, ներդաշնակ զարգացումը, նրա ազատությունը։ Վերջապես, դա (արտադրության միջոցների հանրայնացումը) ընդունակ է արմատապես փոփոխելու մարդու այնպիսի կարևորագույն հասա-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատոր 29, էջ 426—427։

[2] К. Маркс и Ф. Энгельс, **Из ранних произведений**, Госполитиздат, 1956, стр. 588.



րակական ֆունկցիայի բնույթը, ինչպիսին աշխատանքն է։ Այն հասարակության մեջ, որտեղ գործում է «յուրաքանչյուրից ըստ ընդունակության, յուրաքանչյուրին ըստ աշխատանքի» սկզբունքը, հենց աշխատանքն էլ պետք է դառնա բարեկեցության միակ աղբյուրն ու չափը, անհատի սոցիալական ստատուսի հիմնական չափանիշը։

Բուրժուական գիտակցության համար, որն այնպես է կարծում, թե «եսը» արդեն բովանդակում է «իմը» և այդ հիման վրա սեփականությունը նույնացնում է անձնավորության հետ, իսկ անձնավորության մեջ տեսնում է սեփականության սոսկ մի այլ անվանում, սոցիալիզմի նվաճումները մնում են անբացատրելի։ Առաջադիմությունը, ասում են բուրժուական գաղափարախոսները, չի կարող մարդուն ազատություն տալ կամ նրա պահանջմունքները բավարարել։ Էկզիստենցիալիստ Յասպերսը պնդում է. անհատի ներքին կյանքը միմիայն իրեն է պատկանում, ոչ մի պատմություն չի կարող շոշափել այդ ներքին կյանքը, ուստի և առաջադիմություն կարող է նկատվել որտեղ ուզեք, «բայց ոչ մարդկային կեցության սուբյեկտիվության մեջ» [1]։

Մասնավոր սեփականատիրական հարաբերությունները, մարդուն զրկելով իր էական ուժերից, նրա հոգեկան զարգացումը նեղացրել են մինչև անհատական-սեռային պահանջմունքների աստիճանը, օտարման քայքայող ոգով համակել մարդու ամբողջ գոյությունը։ Համապարփակ, ամենազոր, ամենակուլ օտարումը մարդուն դրել է նրան թշնամի ուժերի՝ աստվածների, իր իսկ արտադրած արժեքների, վերջապես այն հասարակության շրջանակի մեջ, որից դուրս նրա գոյությունն անիմաստ է։ Եվ այսօր էկզիստենցիալիստները պատրաստակամությամբ օտարման նշանակությունը, որպես դրամատիկ գործոնի, անխուսափելի են դարձնում յուրաքանչյուր առանձին մարդու կյանքում, անկախ նրանից, թե ինչ սոցիալական պայմաններում է ապրում այդ մարդը։

## II

Ազատությունը, որպես սկզբունք, տարբեր ձևերով է մեկնաբանվում և հաճախ մինչև պարադոքսալության հասնող խեղաթյուրումից հետո է իրագործվում կյանքում։

Մնալով դասակարգերի գաղափարական և քաղաքական սուր պայքարի կենտրոնում, ազատությունը հաճախ օգտագործվում էր որպես հակամարտ ուժերի դրոշակ, այն հնչում էր որպես կոչ, կապվում իդեալի հետ, ազատության էին ձգտում ակտիվ սոցիալական խմբերը, նրա մասին էր երազում մարդը և հենց նրան էր ձոնում իր լավագույն գեղարվեստական ստեղծագործությունների ամբողջ կուլտուրական պատմության ընթացքում։ Իսկ փիլիսոփայության համար ազատությունը մշտապես մնում էր որպես արմատական հարցերից մեկը, թեև փիլիսոփաների աշխատություններում սակավ էր պարուրվում հնչեղ բանաստեղծական այլաբանություններով։ Եվ այդ պրոբլեմի նկատմամբ այդքան նախանձախնդիր վերաբերմունքը արդարացված էր։

Չէ՞ որ եթե հարկավոր է կապ հաստատել պատմության և անհատի միջև, բացահայտել առաջադիմության իմաստը և պարզել այն կերպարանափոխությունների էությունը, որոնք բնորոշ էին քաղաքակրթության զարգացման տարբեր աստիճաններում, ապա որոշ իմաստով հարկ է լինում վիթխարի աշխարհը լուսաբանել մարդկային «ես»-ի դիրքից։ Եթե շրջապատող պայման-

[1] **K. Jaspers.** Vom Ursprung und Ziel der Geschichte. München. 1949, S. 29.

ների հետ սեփական ուժերի հարաբերակցության հարցի լուծման փորձը չլիներ, ապա մարդը ազատության հասկացություն էլ չէր ունենա: Այդ հասկացությունը ինքն իրենով արտահայտում է պահանջմունք՝ բնության դեմ պայքարի արդյունքներն ամփոփելու, նմանապես և գիտակցելու իր հարաբերությունը հասարակության նկատմամբ, հասարակություն, որը խոչընդոտ է հանդիսանում նրա առաջ՝ հասնելու իր անձնական նպատակներին: Մարդ որքան ավելի մեծ նվաճումների է հասնում այդ ոլորտներում, այնքան ավելի քիչ աստվածներ է բնակեցնում երկնքում: Համենայն դեպս քարաժայռերի վրա աստվածներ պատկերելուց մինչև կիբեռնետիկական մեքենաների ստեղծումը մարդկության հասունացման ճանապարհն է և՛ այն պատճառով, որ հասարակական-արտադրական հարաբերությունների յուրաքանչյուր նոր տիպ նոր հնարավորություններ էր բացում արտադրաուժերի զարգացման համար, և՛ այն պատճառով, որ աճում էր ժողովրդական մասսաների դերը պատմական ստեղծագործության մեջ, և, վերջապես, այն պատճառով, որ պատմության ընթացքում տեղի էր ունենում անձնական ազատությունների, սոցիալական խմբերի ձևական և իրական իրավունքների ընդլայնում: Էնգելսի խոսքերով ասած՝ «յուրաքանչյուր առաջընթաց քայլ կուլտուրայի ճանապարհին մի քայլ էր դեպի «ազատություն»»[1]:

Այն ժամանակից, երբ բիբլիական՝ «Ճանաչիր ճշմարտությունը և այն քեզ ազատ կդարձնի» դարձվածքը Սպինոզան տվեց նոր խմբագրությամբ, ազատության պրոբլեմը գնալով ավելի ու ավելի մեծացավ իր նշանակությամբ և, որպես գիտական հասկացություն, այժմ արդեն այն դժվարությամբ կարող է ձևակերպվել: Ազատության այս կամ այն մոմենտի մեկնաբանությունը տալու հարցում տեսակետների բազմաքանակությունը, նրբերանգների զանազանությունը ֆանտաստիկ գաղափարներ են ծնել հետազոտողների գլուխներում: Որպես պրոբլեմ, ասում է Հեգելը, «դա անորոշելի է, բազմանշանակ, մատչելի մեծագույն թյուրիմացությունների համար»: Ի տարբերություն բոլոր փիլիսոփայական սիստեմների, այդ պրոբլեմի ուսումնասիրության հարցում միայն մարքսիզմը մնաց գիտական դիրքերի վրա, իսկ սոցիալիզմը կարողացավ տալ ամբողջ հասարակության կյանքում ազատության սկզբունքների իրականացման կոնկրետ օրինակ:

Ազատության հասկացությունը վերաբերում է այն կատեգորիաների խմբին, որոնք օգտագործվում են մարդու ճանաչողական և վերափոխիչ գործունեության համար, որն արտահայտում է հարաբերությունն ու կապերը հասարակության ներսում, մարդու հարաբերությունը օբյեկտիվ աշխարհի նկատմամբ: Այդ հասկացությունը արտացոլում է սոցիալական կյանքի հակասական շարժումը, ինքնին արձանագրում է այդ կյանքի սպեցիֆիկան, գիտակցությամբ օժտված մարդկանց գոյության և գործունեության բուն փաստը: Ընդ որում ազատություն ո՞ւմ համար, ինչի՞ց, ինչո՞ւմ հարցերի լուծումը կազմում է հետազոտության մեթոդոլոգիական հիմքը և իր մեջ թաքցնում է ոչ միայն ազատության բովանդակությունը որպես կատեգորիայի: Նման հարցադրման դեպքում շահերն էլ պարզ են դառնում, անկախ նրանից՝ խոսքը վերաբերում է անհատի, խմբի, թե հասարակության ազատությանը:

«Ազատությունը ճանաչված անհրաժեշտություն է» ֆորմուլան մասսաներին ծանոթ է այն դասագրքերից, որոնց հեղինակները հաճախ քննադատություն են ենթարկվում ազատության պրոբլեմի իրենց ընդգծված իմացաբանական գնահատականի պատճառով: Բայց գիտական գրականությունը ևս, որն այնքան էլ հարուստ չէ, ինչպես դա կարող է թվալ, հաճախ արտացոլում է հետազոտողների անցումը մեկ այլ ծայրահեղության, երբ ազատությունը անվանվում է «մշտապես սոցիոլոգիական հանդիսացող պրոբլեմ»: Իրականում ազատության սոցիոլոգիական ասպեկտը սոսկ մեկն է եղած ասպեկտներից և իրենով չի սպառում այդ պրոբլեմի բազմազան կողմերը:

Կանգ առնելով, սակայն, հենց այդ ասպեկտի վրա, մենք կարող էինք սահմանափակվել՝ ցույց տալով ազատության այն երեք հիմնական բնորոշումները, որ նշել է Էնգելսը. մարդու իշխանությունը արտաքին բնության վրա (1), իշխանությունը ինքն իր վրա (2), իշխանությունը հասարակական հարաբերությունների վրա (3):

Հարկավոր է նշել, որ առաջին հերթին արտադրահարաբերություններն են երևան գալիս որպես ազատության չափանիշ: Հետևաբար, այն ամենը, ինչ ձեռք է բերել հասարակությունը, փոխադրվում է հասարակական գիտակցության բնագավառը և այստեղ դրսևորվում որպես ազատություն: Այլ կերպ ասած, հնարավոր ազատության աստիճանը վերջին հաշվով որոշվում է մեր հասարակության արտադրահարաբերությունների առանձնահատկություններով:

Եթե անձնավորության, որպես միասնական ամբողջական մի սիստեմի, կառուցվածքը կազմում են գլխավորապես որոշակի սոցիալ-հոգեբանական բաղադրիչները, որոնք փոխադարձաբար ներգործում են միմյանց վրա, ինչպես նաև բնական և սոցիալական գոյացումների կառուցվածքների վրա, ապա բնական է կարծել, որ անձնավորությունն ինքն իր մեջ պարփակված սոցիալական գոյացում չէ, այլ մի բաց սիստեմ, որն ընդգրկում է թե՛ ներքին աշխարհի բաղադրիչները, թե՛ արտաքին, սոցիալական միջավայրի բաղադրիչները: Մեր սոցիալական հոգեբանության մեջ ճշտորեն ընդգծվում է, որ այդ վերջինը (սոցիալական միջավայրը) անձնավորության սիստեմի մեջ է մտնում այնքանով միայն, որքանով դա արտացոլվում է պատկերացումների, ըմբռնումների, դիրքորոշումների, պահանջմունքների և կառուցվածքի ուրիշ սոցիալ-հոգեբանական բաղադրիչների սիստեմի մեջ[1]: Հասարակությունը մարդու համար՝ սոսկ օբյեկտիվորեն առկա աշխարհն է, նրա օբյեկտիվ կեցությունը, և մարքսիզմն արդարացիորեն այդ առկա կեցության մեջ է տեսնում մարդու սոցիալական բնության մի բաղադրիչ մասը:

Հարկ չկա այստեղ հիշեցնելու մարդու էության այն հայտնի բնորոշումը, որ Մարքսը տվել է «Թեզիսներ Ֆոյերբախի մասին» աշխատության մեջ: Սակայն հարկավոր է նշել, որ քանի որ մարդը դիտվում է որպես ամբողջ հասարակական հարաբերությունների համակցության անհատական արտահայտություն (մարմնավորում), ապա անձնավորությունն ակնհայտորեն իր մեջ բեկում է այդ հարաբերությունների ողջ գամմա: Ընտանիքը, պետությունը, դասակարգը, իրավունքը, քաղաքական ու սոցիալական բոլոր ինստիտուտները հանդես են գալիս որպես սուբյեկտին ներքնապես հատուկ հատկանիշներ: «Մարդը,— ասել է Մարքսը,— միշտ էլ մնում է այդ բոլոր սոցիալական հարաբերությունների էությունը, բայց այդ գոյացումները հանդես են գալիս նաև որպես նրա իրական համընդհանրությունը, այդ պատճառով էլ՝ նաև որպես

---

[1] Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, 1953, էջ 107:

[1] Տե՛ս **Б. Д. Парыгин.** Социальная психология как наука, изд. ЛГУ, 1965, стр. 117.

*ընդհանուր բոլոր մարդկանց համար»*[1]։ Սոցիալական գոյացումները, ինստիտուտները և այլն տեսակային ձևեր են, որոնցում անձնավորությունը օբյեկտիվորեն դրսևորում է իր իսկական բովանդակությունը, կապ է հաստատում հասարակության հետ։ Որոշակի իմաստով այստեղ նրանք կերտում են միմյանց և պրելակերպի, ինստիտուտների սոցիալական բովանդակության փոփոխությունը, որը փոփոխություններ է հարուցում մարդկային բնության մեջ։ Առաջադիմության այն աստիճանում, երբ հեղափոխական պրոլետարիատի ուժով օտարումը հաղթահարված է, անձնավորության ֆենոմենը օժտվում է հասարակության հետ տեսանելի կապերով։ Ինչ չափով որ որակապես նոր է մարդու օբյեկտիվ կեցությունը սոցիալիզմի ժամանակաշրջանում, այն չափով էլ անձնավորության ֆենոմենը, ձևափոխվելով, մեր առջև կանգնում է որպես բացառիկ փաստ երկրային քաղաքակրթության ֆոնի վրա։

Այդ փաստի հավաստումը դեռևս չի բացահայտում հարցի ամբողջ էությունը։ Փիլիսոփայական տեսակետից մենք այստեղ գործ ունենք միայն օտարման վերացման հետ։ Եվ այդ մասին պատկերացումը ամենևին էլ չի կարող շատ թե քիչ լրիվ լինել առանց մի քանի ճշտումների։

Օտարումն արտահայտում է հասարակության և անհատի հակամարտությունը՝ շահագործողական դասակարգային հասարակության պայմաններում։ Այդ դասակարգային հասարակությունը, որպես օտարման աշխարհ, մարդուն դարձնում է հասարակական արտադրության մի մասնիկը, նրա գործունեության արդյունքները սեփական կյանքի են կոչվում, սկսում են իշխել մարդու վրա և վերջինս դադարում է գործունեության սուբյեկտ լինելուց. մարդը դառնում է այնպիսի գործունեության օբյեկտ, որի արդյունքները ճնշում են անհատական գոյությունը։

Վերջին տարիներս մեր գրականության մեջ ավելի ու ավելի շատ է տեղ հատկացվում օտարման պրոբլեմին։ Հետազոտողները հաճախ այդ օտարումը տեսնում են արտադրության վերջնական արդյունքի մեջ, մինչդեռ հարկավոր է այն փնտրել արտադրության բուն ակտի մեջ։ Բայց աշխատանքի արդյունքը գործունեության սոսկ հանրագումարն է, այն չէր կարող դիմակայել իր ստեղծողին, եթե արտադրության բուն ակտում տեղի չունենար օտարման պրոցեսը։ Սոցիալիզմը, որպես սկզբունքորեն նոր հասարակական սիստեմ, վերացում, հաղթահարում է այդ օտարումը և դրանով իսկ ոչնչացնում մի շարք հիմնական, պատմության մեջ կլասիկ դարձած, օտարման ձևերը՝ մարդու շահագործումը մարդու կողմից, արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը, ճնշման պետական ապարատը և այլն։

Հատկապես կարևոր է նշել, որ դրա հետ միասին սոցիալական ինստիտուտները, որոնք միշտ էլ եղել են հասարակական կյանքի կազմակերպման կերպափոխված ձևերը, լրացվում են նոր բովանդակությամբ և դրսևորում են այն բանի օրինակը, որ սոցիալիզմն ունակ է հաղթահարելու օտարման հիմնական, կլասիկ ձևերը, պահպանելով նրա մի քանի տեսակները միայն՝ աշխատանքի բաժանումը, անցյալի մնացուկները գիտակցության մեջ, բյուրոկրատիան և այլն։ Իսկ օտարման վերջնական հաղթահարումը կոմունիզմի կառուցման ամբողջ պրոցեսի արդյունքը կարող է լինել։ Օտարման այն ձևերը, որոնք պահպանվում են սոցիալիզմի ժամանակ (և որոնք որոշակի իմաստով անհրաժեշտ են կոմունիզմի բարձրագույն փուլին հասնելու համար), դադարում են մարդու համար կրել այն ընդհանուր ողբերգական բնույթն ու նշանակությունը, որոնց մասին շարունակ խոսում են Սարտրը և Յասպերսը։

Սոցիալիզմը պայմաններ է ստեղծում օտարումը գիտակցաբար հաղթահարելու համար, և այդ է անհատի դրության, նրա ազատության, հասարակության հետ նրա կապերի վերլուծության առավել էական մոմենտը։ Հաղթահարելով կլասիկ ձևով արտահայտված օտարումը, մարդուն վերադարձնելով այն իսկական կապերը հասարակության հետ, որոնք հաստատում են կոլեկտիվիզմ և շահերի զուգակցում, սոցիալիզմը նվաճում է մարդուն, որպեսզի իր զարգացման բարձրագույն փուլում իրականացնի մեծ պոզիտիվ ազատությունը։ Կոմունիզմը, մատնանշում էր Մարքսը, մի պրոցես է, որի ընթացքում մարդիկ «իրենց նորացնում են հենց այն չափով, որչափով նրանք նորացնում են իրենց ստեղծած հարստությունների աշխարհը»[1]։

Եվ առասպել է թվում էկզիստենցիալիստների ցանկությունը՝ քամահրել պատմության փորձը, մարդկանց համոզել այն բանում, թե իսկական ազատության նվաճումը յուրաքանչյուր առանձին անհատի գործն է՝ անկախ հասարակությունից, ժողովրդական մասսաների շարժումից, սոցիալիզմից։ Եթե հավատանք էկզիստենցիալիստներին, «ազատությունը արտաքինի» (այսինքն՝ հասարակական հարաբերությունների) «հաղթահարումն է», ազատությունն իր բնույթով ինքնաբեր է, ծագում է բուն անհատից[2]։ Այլ կերպ ասած, հարկավոր չէ ազատությունը փնտրել հին աշխարհի հեղափոխական վերափոխությունների ուղիներում։ «Ես-ը իմ սեփական ազատությունն է»[3]։

## III

Ազատությունը մեկնաբանելիս ավելի հասարակ բան չկա, քան ծանրության կենտրոնն առանձին անհատի ուսերին դնել և անհատի մեջ փնտրել այն, ինչը փաստորեն պայմանավորված է միայն հասարակական միջավայրով։ Դա ինդիվիդուալիզմի բարոյական սկզբունքներն ամրապնդելու նպատակով սուբյեկտիվ ուժերի բացարձականացումն է, այն կոնցեպցիայի հիմքը, որի գաղափարական իմաստը, բուրժուական սոցիոլոգների խոստովանությամբ, «սոցիալական կառուցվածքից կրիտիցիզմի շեղումն է իր իսկ կողմը։

Սոցիալապես պայմանավորված երևույթները սուբյեկտիվ, անհատականհոգեբանական պլանի վրա փոխադրելու փորձ է կատարում նաև այն փիլիսոփայական ուղղությունը, որն ամենից ավելի է հավակնում բացատրելու մարդկային գոյության գաղտնիքները։ Էկզիստենցիալիզմը, լինի դա գերմանական, ֆրանսիական թե ամերիկյան, ահա արդեն կես դար է, ինչ իր բոլոր ուժերը նվիրում է այդ կեղծ թեզիսն ապացուցելուն։ Եթե նրա կողմից մարդու արտաքին աշխարհն ընդունվում էլ է, ապա սոսկ աղավաղված իմաստով։ «Կեցությունը ո՛չ առիթ ունի, ո՛չ պատճառներ, ո՛չ էլ անհրաժեշտություն»,— ասում է Սարտրը, այդ պատճառով էլ մեզ շրջապատող միջավայրը չի որոշում մեր գոյությունը։ Նման դատողություններում անհատը մեկուսացվում է, նրա բոլոր սոցիալական բնութագրությունները (դասակարգային պատկանելությունը, հասարակության մեջ գրաված դրությունը, իրավական երաշխիք-

---

[1] Տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 1, стр. 264.



[1] Журнал «Большевик» № 11-12, 1939, стр. 65.

[2] **K. Jaspers.** Vom Ursprung... էջ 195.

[3] **J. P. Sartre.** The Reprieve. N. V. 1951 էջ 63.

[4] **R. K. Merton.** Social theory and social structure. Glencoe, 1957, էջ 139 168

ները, բարոյական կերպարը և այլն) կախման մեջ են դրվում ազատ կամքից կամ, ինչպես էկզիստենցիալիստներն են ասում, այն բանից, թե ինչպես է նա ինքն իրեն նախագծել։ Պատմական անհրաժեշտությունը, որպես ազատության բուն որոշիչը, ավելորդ բան է։ «Ամեն մի փիլիսոփայություն,— ասում է Սարտրը,— որը մարդկայինը ենթարկում է այլ սկզբունքի, անմարդկայինին, իր հիմքով և իր հետևանքով ատելություն է տածում դեպի մարդը»[1]։ Երբ արդեն աշխարհը համակենտրոնացած է առանձին մարդու գիտակցության մեջ, ոչինչ չարժե փակել աչքերը սոցիալիզմի փորձի հանդեպ, որը հաստատում է այն ճշմարտությունը, որ միայն հասարակական հարաբերությունների փոփոխությունը կարող է արմատապես փոխել անձնավորության դրությունը հասարակության մեջ։ Եվ մարքսիզմը ոչ թե ատելություն, այլ իսկական հոգատարություն է դրսևորում նրանով, որ անձնավորության դրությունը բարելավելու իրական ուղիներ է մատնանշում՝ հասարակական սիստեմը հեղաշրջելու այնպիսի պայմաններ ստեղծելու միջոցով, որոնց մեջ ձեռք է բերվում ազատությունը։ Իսկ Յասպերսը ուզում է համոզել, որ ազատությունը նույնիսկ «չի կարելի պատկերացնել որպես որոշակի հասկացություն, այն արտահայտվել կարող է ընտրանքի հնարավորության մեջ. միայն ընտրանքն ազատության էությունն է»[2]։

Մինչդեռ իսկական ազատ ընտրանքը միայն այն կլինի, որը հենվում է այսպես, այլ ոչ թե այլ կերպ վարվելու օբյեկտիվ անհրաժեշտության, առաջավոր դասակարգի տեսակետի վրա կանգնելու, հասարակական զարգացման հասունացած պահանջմունքները հաշվի առնելու անհրաժեշտության իմացության վրա։ Այդ իմաստով լիովին հնարավոր է «ընտրել իրեն», գտնել ներքին ազատությունը և դուրս պրծնել ճնշող ուժերի իշխանությունից։ Այդ ընտրությունը ենթադրում է ձերբազերծումն բուրժուական գիտակցությունից։ Արդյոք հենց այդ ձևով չե՞ն իրենց կողմնորոշել հեղափոխության, աշխատավոր մասսաների պայծառ ապագայի համար պայքարող մարտիկները։ «Ես»-ի ինչպիսի փիլիսոփայական կառուցումներ էլ լինեն, շատ վտանգավոր է խզել անհատական և սոցիալական միասնությունը մարդու մեջ։ Չէ՛ որ անձնական ազատությունը ևս կարող է և պետք է դիտվի ոչ այլ կերպ, քան որպես սոցիալ-պատմական ազատության ձևափոխում՝ հաշվի առնելով ընդհանուրի, հատուկի և եզակիի դիալեկտիկան։

Ա. Գրամշին մի լակոնիկ դարձվածք ունի՝ «Ազատության չափը մտնում է մարդու հասկացության մեջ»[3]։ Մարդն ավելի բարձր արժեք չգիտե, քան ազատությունը. դա մարդկային առաջադիմության արդյունքն է և, միաժամանակ, պայմանը, խելացիորեն ըմբռնված նյութական և հոգեկան պահանջմունքների բավարարման հնարավորությունը։ Լիարժեք գոյության և իր ազատությունը հաստատելու համար մարդը մշտապես դիրքորոշվում է՝ նայած անհատականությանն՝ իր անհատականությունը հարստացնելու միջոցով, գործողություն կատարելու կամ գործողությունից հրաժարվելու մասին գործիմացությամբ որոշում ընդունելով և որոշում հասարակության հետ նոր կապեր հաստատել, մի կապից ուրիշ կապերի անցնել։

Ընդգծելով ընտրանքի՝ որպես բուն ազատության արտահայտության, նշանակությունը, մենք մտադիր չենք նույնացնել դրանք. այդ ըմբռնումներից

[1] Տե՛ս **Р. Гароди** Ответ Ж.-П. Сартру ИЛ., 1962, стр. 39:

[2] **К. Jerpers.** Vom Ursprung... էջ 199.

[3] **А. Грамши.** Избр. произведения, *Թարգմ. խտալ.* ИЛ, 1959, т. 3, стр. 55.



յուրաքանչյուրն իր «ինքնավարությունը» պահպանում է հասկացությունների սիստեմի մեջ։ Կարևոր է հաշվի առնել մի ուրիշ բան՝ եթե ազատությունը գործողություն է, իսկ գործողությունը կախված է ընտրող սուբյեկտի սուբյեկտիվ հատկություններից[1], ապա սուր բնույթ է ընդունում այն հարցը, թե ընտրանքի աստիճանը որչափով է համապատասխանում հասարակության և միկրոմիջավայրի, կոլեկտիվի շահերին։ Մարդու արարքների ու գործերի մեջ կամային ջանքերի նշանակությունը չժխտելով, մարքսիզմը միայն այլ կերպ, ավելի ռեալիստորեն է մոտենում կամքի ազատության հարցին, մի կողմ է նետում կամքի իդեալիստական տեսությունները և այն կապում է, ինչպես ասում էր Էնգելսը, «գործիմացությամբ որոշումներ ընդունելու» անհրաժեշտության հետ։

Մեր աչքի առաջ փոփոխություններ են տեղի ունենում այնպիսի գաղափարների ոլորտում, որոնք այնքան նշանակալից են, որ անհնար է լռության մատնել դրանք։ Հակաիմպերիալիստական շարժման բուռն աճը, սոցիալիզմի, որպես կենսունակ հասարակական սիստեմի, ամրապնդումը, գիտության և տեխնիկայի զարգացումը որոշակի իմաստով ներգործություն ունեցան բարոյագիտական հասկացությունների փիլիսոփայական սիստեմի վրա, առաջ քաշեցին մի շարք նոր պրոբլեմներ։ Դրանց թվին է պատկանում պատասխանատվության հասկացությունը, որը հին բարոյագիտության մեջ դիտվում էր որպես պարտքի և խղճի հարց։ Մեր գրականության մեջ դեռ առաջին քայլերն են կատարվում պատասխանատվության դերը հետազոտելու ասպարեզում, և դա թելադրված է կոլեկտիվիստական հայացքներն ամրապնդելու անհրաժեշտությամբ, համաձայն որոնց որոշման ընտրանքը պետք է կատարել այդ որոշման, կոլեկտիվի, հասարակության հանդեպ իր արարքների համար պատասխանատվության գիտակցումով։

Մյուս կողմից, այդ անհրաժեշտությունը թելադրված է էկզիստենց-փիլիսոփայության դեմ մղվող պայքարով, մի փիլիսոփայություն, որը հենց սկզբից պատասխանատվությունը հռչակել է որպես իր հիմնական կատեգորիաներից մեկը։ Սակայն ազատության մարքսիստական ըմբռնման վերլուծությունից պարզ է արդեն, որ պատասխանատվությամբ հանդերձ ընտրանք կատարել նախ նշանակում է ելնել անձնական ազատության ճիշտ ըմբռնումից, նշանակում է սեփական արարքներին բարոյական գնահատական տալ հասարակական շահերի դիրքերից։ Միայն էկզիստենցիալիզմը, որպես ինդիվիդուալիզմի փիլիսոփայություն, կարող է խոսել այն անհատի մասին, որի կեցությունը օբյեկտիվորեն պայմանավորված չէ և, հետևապես, պատասխանատվություն չի ճանաչում որևէ մեկի առաջ, բացի ինքն իրենից։

Ոչ թե սեփական ինքնագիտակցում՝ որպես գլխավոր դատավոր, այլ անձնավորության վարքագծի գնահատում հասարակության կողմից, ոչ թե կամայական ընտրանքն, այլ բուն սոցիալիստական բարոյականության գաղափարների և սկզբունքների հիման վրա կատարված ընտրանք, ահա մի երևույթ, որն ակնհայտորեն նկատվում է մեր հասարակությունում և որը ծանոթ չէ մարդկային պատմության զարգացման վիթխարի ժամանակաշրջանին։ Հենց սոցիալիստական հասարակությունում է ազատությունը ենթադրում պատասխանատվություն, պատասխանատվությունը դառնում ազատության պայման։ Ազատությունը սովետական մարդու գիտակցության մեջ՝ իրական հնա-

[1] Տե՛ս **В. И. Ленин.** Полн. собр. соч., т. 1, стр. 159.

բավորություն է ընտրանք կատարելու հենց առանց հարկադրման, մի ընտրանք, որ կատարվում է առանց երբեք մարդու միջից մարդկայինը դուրս մղելու, իսկ ընտրանքի պատասխանատվությունը, նշանակում է նաև արարքի, որոշման գնահատական։

Մեր կյանքն ամեն օր և ամեն ժամ ծնում է հերոիկա, որն իր մասսայականությամբ առօրեական ստեղծագործության բնույթ ունի։ Անձնուրաց պայքարի ու աշխատանքի տասնամյակները սովետական մարդու մեջ բյուրեղացրել են նոր բարոյական պատկերացումներ. այս հանգամանքը սոցիալիզմի աչքի ընկնող նվաճում, նոր մարդու ձևավորման վկայությունն է։ Գեղարվեստական գրականությունը, արտացոլելով մարդկային նյութի վերամշակման մեծ պրոցեսը, շատ բանի է հասել, ստեղծել է սովետական մարդու տիպիկ կերպարներ, այն մարդու, որը նվիրված է, ստեղծագործող և, եթե անհրաժեշտ է, պատրաստ է անձնազոհության։ Փիլիսոփայական գրականությունն առայժմ առաջին քայլերն է կատարում այդ պատմական երևույթի գիտական վերլուծության ուղղությամբ, ուստի և պրոբլեմների այն կոմպլեքսը, որը վերաբերում է անձնական ազատությանը, նրա սահմաններին (որովհետև սոցիալիզմն ունի արգելքների իր սիստեմը), պատասխանատվությանը, ընտրանքի հոգեբանական հիմունքներին, նոր տիպի անձնավորության կազմավորմանը և ազատության ֆենոմենին և այլն, դեռևս բավարար չափով չի լուսաբանվում։ Որքան ավելի շուտափույթ վերացնեն հետազոտողներն իրենց կանխակալ կարծիքը այդ պրոբլեմների նկատմամբ, այնքան ավելի արագ կամրապնդվի հակակոմունիզմի դեմ պայքարի ճակատի կարևոր տեղամասը, հակակոմունիզմ, որի գաղափարախոսները գնալով ավելի համառորեն են աղավաղում մարդկային գոյության վերլուծման էությունը։

ՍԵՅՐԱՆՅԱՆ Բ. Ս.

# ԸՆԴԴԵՄ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԿԵՂԾԱՐԱՐՈՒԹՅԱՆ

1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մասին բավականին շատ է գրվել։ Այդ հեղափոխությունը լուսաբանված է ոչ միայն պատմաբանների (սովետական և բուրժուական) մենագրություններում, այլև ականավոր քաղաքական գործիչների և ցարական կառավարության ու բուրժուական ժամանակավոր կառավարության դիվանագետների բազմաթիվ մեմուարներում, ինչպես նաև 1917 թվականի հեղափոխական մարտերի ակտիվ մասնակիցների անմիջական վկաների հիշողություններում։ Փետրվարյան հեղաշրջման մասին առանձնապես շատ է գրվել արտասահմանում գտնվող սպիտակ էմիգրանտների կողմից (Պ. Ն. Միլյուկով, Մ. Վ. Ռոձյանկո, Ա. Ի. Գուչկով, Շուլգին, Պ. Ստրուվե, Ա. Ֆ. Կերենսկի և ուրիշներ)։ Բավական է ասել, որ միայն Պ. Ն. Միլյուկովը լույս է ընծայել երեք ծավալուն հատորներ, որոնք ամբողջովին նվիրված են երկրորդ ռուսական հեղափոխության պատմությանը։

Միանգամայն հասկանալի է սովետական պատմաբանների հետաքրքրությունը այն հեղափոխական իրադարձությունների նկատմամբ, որոնց շնորհիվ տապալվեց միապետությունը և խորտակվեց Ռուսաստանյան կայսրությունը։ Այդ հետաքրքրությունը թելադրվում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության սոցիալ-տնտեսական և քաղաքական նախադրյալները բացահայտելու և բազմակողմանիորեն վերլուծելու ձգտումով, հեղափոխություն, որը նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։

Միանգամայն այլ նկատառումներ են ընկած ռուսական երկրորդ հեղափոխության պատմության բուրժուական հետազոտությունների հիմքում։ Հակառակ պատմական փաստերի, բուրժուական պատմագրությունը ճգնում է ապացուցել, թե Ռուսաստանում փետրվարյան հեղաշրջման գլխավոր վճռական ուժը եղել է դումայական բուրժուական օպոզիցիան, որի ֆրակցիաները 1915 թվականի ամռանը միավորվեցին այսպես կոչված «պրոգրեսիվ» բլոկի մեջ։ Բուրժուական ժամանակավոր կառավարության նախկին մինիստր և կադետական կուսակցության լիդեր, սպիտակ էմիգրանտ Պ. Ն. Միլյուկովը դեռ 1921 թ. վերլուծելով 1917 թվականի փետրվարի պատմական անցքերը, գրում էր. «Շարժումը անձև էր և անառարկայական։ Պետական դումայի միջամտությունը փողոցային և ռազմական շարժմանը տվեց կենտրոն, նրան տվեց դրոշ

և լոզունգներ, և դրանով իսկ ապստամբությունը վերածեց հեղափոխության, որն ավարտվեց հին ռեժիմի և դինաստիայի տապալումով» [1]։

Այդ կեղծ վերսիան տարածելու գործում վերջին տեղը չէին գրավում նաև ռուսական կապիտալի մագնատները, որոնք ինքնակալության տապալման նախօրեին երկրում ստեղծել էին մի շարք բուրժուա-օպոզիցիոն կազմակերպություններ՝ համառուսաստանյան զեմստվային և քաղաքային միություններ, ռազմա-արդյունաբերական կոմիտեներ և այլն։ Նրանք իրենց էին վերագրում փետրվարյան հեղափոխության մեջ առաջնության դափնեպսակը։ Օրինակ, Կենտրոնական ռազմա-արդյունաբերական կոմիտեի հանդիսավոր նիստում, որ տեղի ունեցավ 1917 թվականի մարտի 8-ին, ինքնակալության տապալման առթիվ, մեկը մյուսի հետևից հանդես եկան առևտրաարդյունաբերական շրջանների ականավոր ներկայացուցիչներ ֆոն-Դիտմարը, Նոբելը, Կուտլերը, Վիշնեգրադսկին, Դյուֆուրը և ուրիշներ, որոնք հանդիսավոր արտահայտություններով փառաբանում էին բուրժուական օպոզիցիայի լիդերներին՝ փետրվարյան հեղաշրջումը նախապատրաստելու և անցկացնելու գործում նրանց ունեցած ղեկավար դերի համար։ Այդ նիստը փաստորեն դարձավ ռազմա-արդյունաբերական կոմիտեների պարագլուխներ Գուչկովի, Կոնովալովի, Տերեշչենկոյի և Ընկ. մեծարման հանդիսավորություն, որտեղ նրանք ներկայացվում էին որպես փետրվարի հերոսներ։ «Եթե մենք վերցնենք ու քննարկենք կատարված բոլոր իրադարձությունները,— ասում էր հռետորներից մեկը,— ապա պետք է ասենք, որ այն շարժման առաջին խթանը, որը զարգացավ Պետրոգրադում, որը վերջիվերջո սրբեց-տարավ Ռոմանովների դինաստիան, հենց այդ շարժման առաջին խթանը տվեց Կենտրոնական ռազմաարդյունաբերական կոմիտեն» [2]։

Հենց այդ ոգով էլ արտահայտվում են Ամերիկայի և Արևմտյան Եվրոպայի բուրժուական պատմագրության ժամանակակից ներկայացուցիչներ Դ. Շուբը, Ա. Մուրխիդը (ԱՄՆ), Ջ. Մեյնարդը, Է. Կարրը, Ռ. Շարկը, Լ. Շապիրոն, Բ. Պեյրսը (Անգլիա)։ Ռուսական երկրորդ հեղափոխության մեջ բուրժուազիայի ղեկավար դերի վերաբերյալ թեզիսը նրանք բացարձականացնում էին։

Արժե արդյոք խոսել, որ նման պնդումների հիմքում ընկած է այն բանն ապացուցելու ձգտումը, թե բոլշևիկյան կուսակցությունը բոլորովին էլ մասնակից չի եղել փետրվարյան հեղափոխության հաղթանակին։ Անգլիական պատմաբան Ռ. Շարկը «Կայսերական Ռուսաստանի մայրամուտը» գրքում հենց այդպես էլ պնդում է, թե բոլշևիկները շատ քիչ բան են արել, եթե չասենք բոլորովին էլ ոչինչ չեն արել հեղափոխության ընթացքում, որը տապալեց ցարերի ինքնակալությունը և վերջ տվեց դինաստիային» [3]։

Փետրվարյան հեղափոխությանը բոլշևիկյան կուսակցության անմասնակից լինելու վերաբերյալ պնդումը բուրժուական պատմաբանները փորձում են բացատրել նրանով, թե բոլշևիկյան կազմակերպությունները թույլ են եղել, թե նրանք իբր ինքնակալության տապալման նախօրեին չէին հանդիսանում

[1] П. Н. Милюков. **История 2-ой русской революции. София,** 1921 г., т. I, вып. I, стр. 39.

[2] «Отчет о торжественном заседании Центрального военно-промышленного комитета 8 марта 1917 года». Петроград, 1917 г., стр. 15.

[3] «Вопросы истории КПСС» № 7, 1965 г. стр. 53.



շատ թե քիչ ազդեցիկ քաղաքական ուժ, որն ընդունակ լիներ իր հետևից տանելու պրոլետարական մասսաներին։

Ներկա հոդվածում հեղինակը խնդիր է դնում պատմական կոնկրետ նյութերի հիման վրա հերքել 1917 թվականի բուրժուա-դեմոկրատական հեղափոխության շարժիչ ուժերի ու հեգեմոնիայի բուրժուական մեկնաբանությունների ամբողջ սնանկությունը, ցույց տալ, որ այդ հեղափոխության միակ հեգեմոնը բանվոր դասակարգն էր, որին առաջնորդում էր բոլշևիկյան կուսակցությունը։

***

Ցարական Ռուսաստանը, որ ընդարձակ նվաճումների մի պլան էր նախատեսել, 1914 թվականի պատերազմի մեջ մտավ չնախապատրաստված։ Երկրի տնտեսական և ռազմա-տեխնիկական հետամնացությունը, ցարական գեներալների ծախվածությունը, մինչև ուղն ու ծուծը փտած ինքնակալական կարգերը հասցրին ռուսական զորքերի պարտությանը ավստրո-գերմանական դաշինքի դեմ մղված պատերազմում։

1915 թվականի գարնանը գերմանական և ավստրո-հունգարական զորքերը լայն հարձակում սկսեցին արևելյան ռազմաճակատում։ Մերձբալթիկայում գերմանացիները ապրիլի վերջին գրավեցին Լիբավան և սկսեցին սպառնալ Ռիգային։ Գալիցիայում ավստրիական զորքերը մայիսին ռուսներից խլեցին Պերեմիշլը և մոտենում էին Լվովին։ Հուլիսի ընթացքում ռուսական զորքերը հարկադրված եղան թողնել Լվովը և իրենց բոլոր ամրությունները Լեհաստանում։

Ռուսական բանակի նահանջը խիստ անհանգստացրեց բուրժուազիային։ Կադետ Պ. Ն. Միլյուկովի խոսքերով, պատերազմի առաջին օրերի հայրենասիրական վերելքը փոխարինվեց բուրժուազիայի «հայրենասիրական տագնապով»։ Բայց ռուսական բուրժուազիային տագնապահարում էր ոչ թե երկրի ու ժողովրդի ճակատագիրը, այլ իր իմպերիալիստական պլանների խորտակման ուրվականը։

Բուրժուազիայի անհանգստությունն ուժեղացավ նաև այն պատճառով, որ երկրում աճում էր բանվորական հեղափոխական շարժումը։ Ռազմական պարտությունները, տնտեսական ավերվածությունը, սովն ու զրկանքները նպաստում էին ժողովրդական մասսաների քաղաքական ակտիվության վերելքին, սրում դասակարգային պայքարը երկրի ներսում։ Չնայած այն բանին, որ ցարական կառավարությունը դաժան ռեպրեսիաներ էր գործադրում բանվորների նկատմամբ, 1915 թվականի գարնանը և, հատկապես, ամռանը կրկին բարձրացավ գործադուլային շարժման ալիքը, որն ընդգրկեց ամբողջ երկիրը։ Միմիայն Պետրոգրադում 1915 թվականի մայիսի 1-ին 35 հազար բանվոր դադարեցրել էին աշխատանքը։ Հենց այստեղ հունիսին տեղի ունեցավ 164 գործադուլ, որոնց մասնակցեցին ավելի քան 80 հազար բանվոր։ 1915 թվականի սեպտեմբերին Վ. Ի. Լենինը գրում էր, որ ցարական Ռուսաստանի պարտությունը պատերազմում «առաջ է բերել ամենամեծ մասշտաբի հեղափոխական ճգնաժամ, սթափեցրել է միլիոնների, տասնյակ և հարյուրավոր միլիոնների» [1]։

Պատերազմի ընթացքում ռուսական բուրժուազիան խիստ հիասթափվեց ցարական կառավարությունից, որն ակնհայտորեն չէր կարողանում պատե-

[1] Վ. Ի. Լենին. Երկեր, հատ. 21, էջ 485։

բազմը վարել ռազմաճակատներում և պայքարել երկրի ներսում աճող հեղա-
փոխական շարժման դեմ։ Հենց այդ պատճառով էլ առաջացավ բուրժուական
օպոզիցիան, որի կենտրոնը դարձավ այսպես կոչված «պրոգրեսիվ բլոկը»։
Վերջինս ձևավորվեց 1915 թվականի օգոստոսին։ Այդ բլոկի մեջ մտան Պե-
տական դումայի հետևյալ ֆրակցիաները՝ կադետները, ձախ օկտյաբրիստնե-
րը, պրոգրեսիստները, «պրոգրեսիվ» նացիոնալիստները, կենտրոնը և այլն։
Պրոգրեսիվ բլոկը միավորում էր 315 դեպուտատ՝ 410-ից։ Մենշևիկներն ու
էսեռները ձևականորեն չէին մտնում այդ բլոկի մեջ, բայց գրեթե ամբողջովին
պաշտպանում էին նրա քաղաքական պլատֆորմը։

Իր ծրագրով ու տակտիկայով «պրոգրեսիվ բլոկը» իրենից ներկայացնում
էր ռուսական բուրժուազիայի հակաժողովրդական և հակադեմոկրատական մի
միավորում։ Նրա պայքարն ուղղված էր ոչ այնքան ցարական կառավարու-
թյան, որքան երկրում աճող ժողովրդական հեղափոխության դեմ։ Բլոկի
ծրագիրն ուղղված էր բուրժուազիայի և ցարի համաձայնեցմանը՝ չափավոր
ռեֆորմների հիման վրա, որոնց նպատակն էր կանխել հեղափոխությունը և
պահպանել միապետությունը։ Այդ ռեֆորմների հիմքում ընկած էր «վստա-
հության «մինիստրություն» ստեղծելու պահանջը, որի մեջ պետք է մտնեին
գլխավորապես խոշոր բուրժուազիայի ներկայացուցիչները։ Դրանով բուր-
ժուազիան ուզում էր է՛լ ավելի ուժեղացնել իր ազդեցությունը պետական գոր-
ծերում, իր ձեռքը վերցնել պատերազմը վարելու գործը, որպեսզի հաղթա-
կան վախճանի հասցնի պատերազմը և դրա հետ միասին ճնշի հեղափոխա-
կան շարժումը երկրում։

«Պրոգրեսիվ բլոկի» ծրագրի ու տակտիկայի հակահեղափոխական ուղղու-
թյունը կարելի է ցույց տալ նրա գործիչների մի շարք խիստ պերճախոս ար-
տահայտություններով։ Այսպես, օրինակ, բլոկի նիստերից մեկում օկտյաբ-
րիստ Ս. Ի. Շիդլովսկին հայտարարել է՝ «Կառավարությունը կարծում է, թե
մենք հեղափոխություն ենք անում, մինչդեռ մենք այն կանխում ենք... Մենք
մասսաներին չենք հրահրում»։[1] Զեմստվոների և քաղաքների միության ար-
տահերթ համագումարում, որը բացվեց 1915 թվականի սեպտեմբերի 7-ին,
Պետրոգրադի քաղաքային դումայի իրավասու Մ. Մ. Ֆեոդորովը ասել է. «Հե-
ռու չէ այն ժամանակը, երբ ավիները ռազմաճակատից դեպի Պետրոգրադ
կշրջվեն, որովհետև առկա են բոլոր հատկանիշները, որ մենք գտնվում ենք
զինված ապստամբության նախօրեին. այդ պատճառով էլ մենք պարտավոր
ենք փրկել Ռուսաստանը»[2]։

Բուրժուա-օպոզիցիոն «Ժողովրդական փրկության կոմիտեի» կազմած
№ 1 դիսպոզիցիայում մտնանշվում էր այն հանգամանքն ընդունելու ան-
հրաժեշտությունը, «որ պատերազմը մղվում է երկու ճակատում՝ ընդդեմ ար-
տաքին համառ և հմուտ թշնամու և ներքին ոչ պակաս համառ և հմուտ թըշ-
նամու»[3]։ Այն բանի ըմբռնումը, թե հեղափոխության աճող ալիքը կոչնչացնի
ոչ միայն ցարական իշխանությունը, այլև բուրժուազիայի տիրապետությու-
նը, բուրժուական օպոզիցիայի լիդերներին ստիպում էր ցարական կառավա-
րության դեմ մղվող պայքարում ցուցաբերել ծայրահեղ չափավորություն, ան-

---

[1] «Красный архив» № 1 (56), 1933 г., стр. 125.

[2] Буржуазия накануне февральской революции. (Сборник документов), Гиз, 1927 г., стр. 49—50.

[3] «Красный архив» № 1 (26), 1928, стр. 212.



վճռականություն և վախկոտություն։ Իշխանության հասնելու ձգտումը բուր-
ժուազիային դարձնում էր օպոզիցիոն, բայց հեղափոխական բանվոր դա-
սակարգի հանդեպ սարսափը նրան մղում էր ինքնակալության գիրկը, հանձին
որի նա տեսնում էր հուսալի ուժ հեղափոխության դեմ։ «Զափից դուրս պետք
է նրանց ցարիզմը,—գրում էր Լենինը դեռևս 1905 թվականին,—նրա ոստիկա-
նական-բյուրոկրատական և ռազմական ուժերով՝ ընդդեմ պրոլետարիատի և
գյուղացիության»[1]։ Ուստի բուրժուական օպոզիցիան որևէ արմատական պա-
հանջներ չէր ներկայացնում ինքնակալական իշխանությանը, այլ փորձում էր
համաձայնություն գտնել նրա հետ։ Քաղաքական իշխանության նկատմամբ
իր ստրկամիտ-թաքցրած պահանջները նա շաղախում էր ցարական գահին
նվիրված հավատարիմ հպատակության զգացմունքներով։ «Նա սահմանա-
փակվում է հառաչանքներով,—գրել է Վ. Ի. Լենինը,—նա ցանկանում է
Պուրիշկևիչներին համոզել, չվիրավորելով նրանց, հաշտվել նրանց հետ, չհե-
ռացնելով նրանց»[2]։

Որ իշխանության նկատմամբ ռուսական լիբերալ-միապետական բուր-
ժուազիայի չափավոր, համաձայնողական տակտիկայի հիմքում ընկած էր
սարսափը բանվորական հեղափոխական շարժման հանդեպ, առավել պերճա-
խոսությամբ վկայում է օկտյաբրիստների կուսակցության լիդեր Ա. Ի. Գուչ-
կովի ելույթը Մոսկվայի համաքաղաքային համագումարում։ Ինչպես և բուր-
ժուական օպոզիցիայի բոլոր լիդերները, պնդելով իշխանության վերակառուց-
ման անհրաժեշտությունը, Գուչկովը անհրաժեշտ համարեց նախազգուշացնել,
որ «հարկավոր է զգուշանալ, որպեսզի ներքին խռովություն չսանձազերծվի։
Մութ տարրերային բնազդները վտանգավոր են։ Հարկավոր է հոգ տանել, որ-
պեսզի չսասանվեն բուն իշխանության հիմքերը»[3]։

«Ներքին խռովության» սպառնալիքը այնքան էր վախեցնում բուրժուա-
զիային, որ նույնիսկ ամենաչափավոր պահանջները նա չափազանց զգուշու-
թյամբ էր ներկայացնում։ Միլիոնատեր Պ. Պ. Ռյաբուշինսկին, օրինակ, Մոսկ-
վայի բորսային ընկերության ժողովում արտասանած ճառում առաջարկեց
ցարի կողմից արձակված Պետական դումայի աշխատանքը վերսկսելու վերա-
բերյալ պահանջը առաջ քաշել խիստ զգույշ և միայն խաղաղությամբ, քանի որ
«դժգոհությունը կարող է թափանցել մասսաների մեջ և անցանկալի էքսցես-
ների հասցնել»[4]։ Հարկավոր է նշել նաև, որ իշխանության բուրժուական հա-
վակնորդների զգալի մասն այն հույսն էր փայփայում, թե իրենց կհաջողվի
պետական իշխանության ղեկին հասնել առանց որևէ կոնֆլիկտի։

Որքան ավելի պարզորոշ էին ուրվագծվում վերահաս ժողովրդական հե-
ղափոխության հեռանկարները, այնքան ավելի էին դրսևորվում ռուսական
բուրժուազիայի անվճռականությունը, տատանումները և վախկոտությունը։
1916 թվականի դեկտեմբերին բոլշևիկների Պետրոգրադի կոմիտեի օրգանը՝
**Пролетарский голос** թերթը հաղորդեց իր ընթերցողներին, որ 1916 թվա-
կանի նոյեմբերի 16-ին «պրոգրեսիվ բլոկի» բյուրոյի խորհրդակցությունում
բուրժուական օպոզիցիայի գրեթե բոլոր ականավոր լիդերների (Լվով, Չելնո-
կով, Միլյուկով, Կոնովալով, Շինգարյով, Շիդլովսկի և ուրիշներ) ներկայու-

---

[1] Վ. Ի. Լենին. Երկեր, հատոր 18, էջ 500։

[2] Վ. Ի. Լենին. Երկեր, հատոր 18, էջ 678։

[3] «Современный мир» № 9, 1915 г., стр. 110.

[4] «Речь», 8 сентября, 1915 г.

թյամբ կարծիք է արտահայտվել հետաձգելու բուրժուական բոլոր համագումարներն ու խորհրդակցությունները, ինչպես և մեղմացնել քաղաքական ելույթների տոնը, քանի որ «բլոկի ագրեսիվ քաղաքականությունը» կարող է հասցնել Պետական դումայի ցրմանը և ժողովրդական հեղափոխության հաղթանակին։ Բերելով այդ ինֆորմացիան **Пролетарский голос**-ը գրում էր. «Տեղեկությունները մենք ստացել ենք ուղղակի աղբյուրից, և դրանք հաստատվում են Դումայի աշխատանքով։ Կառավարության դավաճանությանը բանվորն ու գյուղացին պետք է միացնեն նաև լիբերալների դավաճանությունը։ Պատերազմի ընթացքում լիբերալ բուրժուազիայի ամբողջ վարքագիծը հաստատում է մեր հին վերաբերմունքը միայն, որ ժողովուրդը՝ դեպի փողոց, լիբերալը՝ դեպի ոստիկանատուն» [1]։

1916 թվականի փետրվարին Պետրոգրադում կայացավ կադետների կուսակցության VI համագումարը։ Համագումարում տարաձայնություններ դրսևորվեցին կուսակցության՝ Մանդելշտամի գլխավորած ձախ թևի և կուսակցության լիդեր Միլյուկովի գլխավորած աջ թևի միջև։ Կադետների ձախ թևը աշխատում էր կուսակցությունը տանել կառավարության դեմ ավելի վճռական պայքարի ուղիով, այն ժամանակ, երբ աջերը ամեն կերպ կուսակցությանը զգուշացնում էին անզգույշ քայլերից, որոնք կարող էին միայն սանձազերծել «ժողովրդական տարերքը»։

1917 թվականի սկզբին, երբ տնտեսական ավերածությունը և պարենային սուր ճգնաժամը երկրում ուժեղացրին առանց այն էլ շիկացած քաղաքական իրադրությունը, բուրժուական օպոզիցիան զգալիորեն ակտիվացրեց իր գործունեությունը։ Դրա պատճառը նաև այն էր, որ համառաբար լուրեր էին շրջում Գերմանիայի հետ սեպարատ հաշտություն կնքելու՝ Նիկոլայ II-ի մտադրության մասին։ Դումայի 1916 թվականի նոյեմբերյան սեսիայում «պրոգրեսիվ բլոկի» լիդերները ցարական մինիստրների դեմ հանդես եկան «ռազմատենչ» ճառերով։ Իշխանության քննադատությունը զուգորդվում էր լրագրական մեծ աղմուկով Ռասպուտինի և ռասպուտինշչինայի, ցարական գահը շրջապատող «մութ ուժերի» վերաբերյալ։ Սակայն այդ ամենը ոչ այլ ինչ էր, քան փոթորիկ մի բաժակ ջրում։ Բուրժուազիան «ծնկաչոք խռովությունից» այն կողմ չէր գնում։ Դումայի բուրժուական դեպուտատների անվերջ աղաղակները, որոնք արտահայտում էին նրանց դժգոհությունը իշխանությունների քաղաքականությունից, ամենևին էլ չէին խոսում այն մասին, թե բուրժուազիան հիրավի մտադիր է Նիկոլայ II-ի կառավարության դեմ պայքարի արմատական միջոցների դիմել։ Դա միայն այն անասնական սարսափի արտահայտությունն էր, որ բուրժուազիան զգում էր 1917 թվականի հեղափոխական փոթորկի հետևանքով։ Այսպես, օրինակ, տեքստիլ արդյունաբերության արքա և արդյունաբերական տուզ Կոնովալովը, Մոսկվայի պահնորդության օրգանների տեղեկությունների համաձայն, արդյունաբերողների մասնավոր ժողովներում կանխատեսում էր բանվոր դասակարգի հեղափոխական ելույթի անխուսափելիությունը, եթե երկրում դրությունը շարունակի մնալ նախկինի պես։

«Առաջին իսկ հեղափոխական պայթյունների դեպքում,— ասել է Կոնովալովը,— կառավարությունը վերջնականապես կշփոթվի և ամբողջ ռուս հասարակությունը կթողնի բախտի քմահաճույքին... Կառավարության վրա հույս

1 «Пролетарский Голос», № 4, 18 декабря 1916 г.



դնել չի լինի, մենք կմնանք բանվորների հետ դեմ հանդիման,—և այստեղ միանգամայն անվիճելի է նրանց ուժը և մեր անզորությունը» [1]։

Անհետաքրքրական չէ նշել, որ մենշևիկները դժգոհություն էին արտահայտում այն բանի առթիվ, որ շիկացած քաղաքական մթնոլորտի պայմաններում, երբ հեղափոխությունն արդեն դուռ էր ծեծում, բուրժուազիան ծայրահեղ անվճռականություն և տատանումներ էր դրսևորում։ Բուրժուազիային համարելով այն միակ ուժը, որն ընդունակ է գլխավորել բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը, մենշևիկները բուրժուական օպոզիցիայի լիդերներին ամեն կերպ հորդորում էին իրենց ձեռքը վերցնել երկրում տեղի ունեցող իրադարձությունների ղեկավարությունը։ Բուրժուական օպոզիցիայի լիդերների գաղտնի խորհրդակցությունում մենշևիկ Չխեիձեն երկյուղ էր հայտնում, թե բուրժուազիան իր անվճռականությամբ իրեն ռիսկի է ենթարկում «մի գեղեցիկ օր գտնվելու իրադարձությունների պոչում, քանի որ, եթե ամեն ինչ շարունակվի հենց նույն կարգով, հեշտությամբ և անսպասելիորեն քաղաքական ելույթների և իրադարձությունների ղեկի մոտ միմիայն բանվորները կմնան» [2]։

Վերահաս ժողովրդական հեղափոխությունը կանխելու համար միջոցներ որոնելիս բուրժուազիան միտք հղացավ պալատական հեղաշրջում իրագործել։ Ենթադրվում էր մի խումբ սպաների օգնությամբ գրավել ցարական գնացքը Պետրոգրադի և Մոգիլյովի միջև, որտեղ ցարական զորակայանն էր գտնվում, ձերբակալել ցարին և ստիպել նրան հարժարվել գահից։ Բայց, նախ՝ դա դավադրություն էր ոչ թե ցարիզմի դեմ, ինչպես պնդում է սպիտակէմիգրանտական պատմագրությունը, այլ բուրժուազիայի համար ոչ ձեռնտու ցարի դեմ (դավադիրները մտադրություն ունեին Նիկոլայ II-ի փոխարեն ցարի գահին նստեցնել Միխաիլ Ռոմանովին). երկրորդ, այդ հարցում ևս բուրժուազիան չուներ հաստատուն գիծ և միասնական կարծիք։ Բուրժուական շատ գործիչներ ընդհանրապես մերժում էին ցարի դեմ դավադրության գաղափարը։ Օրինակ, Ռոձյանկոն վճռականապես հանդես էր գալիս պալատական հեղաշրջման դեմ։ Նա դա համարում էր մի «ավանտյուրա», որը հեշտությամբ կարող էր բանը հասցնել «խռովության» [3]։ Ռոձյանկոյի կարծիքին համաձայն էին «պրոգրեսիվ բլոկի» նաև մի քանի այլ լիդերներ։ Պետական դումայի անդամ Բ. Ա. Էնգելգարդը գտնում էր, թե «փոթորկի ժամանակ փոխել կապիտանին, թեկուզև վատ կապիտանին, վտանգավոր է» [4]։ Իսկ կադետական կուսակցության ականավոր լիդեր Պ. Դ. Դոլգորուկովը պալատական հեղաշրջումը գտնում էր «ոչ միայն անցանկալի, այլ ավելի շուտ կործանարար Ռուսաստանի համար» [5]։

Դեռևս 1912 թվականի դեկտեմբերին Վ. Ի. Լենինը «Նացիոնալ լիբերալները» հոդվածում սպառիչ կերպով վերլուծեց իշխանության համար ռուսական լիբերալ-միապետական բուրժուազիայի մղած պայքարի էությունը։ Նա գրում էր՝ «Նրանք չեն ուզում կալվածատերերի ու բյուրոկրատների լիակատար ու անբաժան տիրապետությունը... Նրանք ուզում են «ուժեղ իշխանություն», որը

1 Буржуазия накануне февральской революции. (Сборник документов), М.—Л., 1927 г., стр. 140.

2 Նույն տեղը, էջ 183։

3 М. В. Родзянко. **Крушение империи**, Л., 1927 г., стр. 209.

4 Վ. Ի. Լենինի անվան պետ. գրադարան, ձեռագրերի բաժին, ֆ. 218. թղթապանակ 306, էջ 726։

5 ЦГАОР, ф. 2 с/1467, оп. I. ед. хр. 578. л. 31.

«Հայրենական արդյունաբերության» համար հրով ու սրով նոր շուկաներ նվաճելու «հայրենասիրական» քաղաքականություն է վարում։ Նրանք ուզում են, որ բյուրոկրատները նրանց նույնքան հաշվի առնեն, որքան Պուրիշկևիչներին։ Եվ այն ժամանակ նրանք պատրաստ են մոռանալու «հին հաշիվները» ռեակցիոներների հետ և նրանց հետ ձեռք-ձեռքի տված աշխատելու «մեծ» կապիտալիստական Ռուսաստան ստեղծելու վրա» [1]։

Ընդհուպ մինչև փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխության հաղթանակը բուրժուազիան շարունակում էր մնալ այդ պլատֆորմի վրա, բայց միայն այն տարբերությամբ, որ նրա լիդերները ցարիզմի տապալման նախօրյակին սովորականից ավելի շատ ու ավելի ուժգին էին աղմկում Պետական դումայի ամբիոնից և մամուլում։ Նույնիսկ այն բանից հետո, երբ Նիկոլայ II-ը արդեն տապալվել էր ապստամբ ժողովրդի կողմից, բուրժուազիան, միապետությունը փրկելու նպատակով, ժողովրդից ծածուկ Գուչկովին և Շուլգինին ուղարկեց Պսկով՝ ցարի մոտ, որ նրան համոզեն գահից հրաժարվել հօգուտ որդու կամ եղբոր։ Եվ եթե բուրժուազիային չհաջողվեց պահպանել միապետությունը, ապա դրանում վճռական նշանակություն ունեցավ հեղափոխական մասսաների դիմադրությունը։ Պրոլետարիատը կտրականապես մերժեց միապետությունը վերականգնելու բուրժուազիայի բոլոր փորձերը։

Կարելի է բերել ուրիշ շատ փաստեր, որոնք հաստատում են ռուսական բուրժուազիայի անվճռականությունը, տատանումները և վախկոտությունը փետրվարյան հեղաշրջման նախօրեին, նրա անասնական սարսափը վերահաս հեղափոխության հանդեպ և, այստեղից էլ, ժողովրդից թաքուն ցարիզմի հետ գործարք կնքելու նրա ձգտումը, որպեսզի կանխի միապետության խորտակումը։ Բայց մեզ թվում է, որ բերված փաստերն էլ բավականին պերճախոսությամբ ապացուցում են այդ։

Այդ փաստերի լույսի տակ բավականին անհեթեթ են թվում սպիտակ-էմիգրանտական և պատմության ժամանակակից բուրժուական կեղծարարների փորձերը ապացուցելու, թե իբր Ռուսաստանում ցարիզմի տապալման վճռական ուժը հանդիսացել է դումայական բուրժուական օպոզիցիան։

***

Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխության վճռական շարժիչ ուժը Ռուսաստանի պրոլետարիատն էր, որը գործում էր գյուղացիության հետ դաշնակցած։ Երկու հեղափոխական դասակարգերի այդ դաշինքում հեգեմոնը բանվոր դասակարգն էր, որին գլխավորում էր բոլշևիկյան կուսակցությունը։ Բոլշևիկները հանդես էին գալիս որպես ցարիզմի դեմ մասսաների մղած պայքարի իսկական կազմակերպիչներ և ղեկավարներ։ Պատերազմական ժամանակի բացառիկ ծանր պայմաններում բոլշևիկյան կուսակցությունը, չնայելով ցարական կառավարության գործադրած ռեպրեսիաներին ու հալածանքներին, ոչ մի պահ չէր դադարեցնում մասսաների մեջ տարվող հեղափոխական աշխատանքը։ Մայրաքաղաքի պրոլետարիատի խորքերում հատկապես ակտիվ գործունեություն ծավալեց ՌՍԴԲ(բ)Կ Պետրոգրադի կոմիտեն, որը Կենտկոմի Ռուսաստանի բյուրոյի անդամների հաճախակի ձերբակալությունների հետևանքով փաստորեն կատարում էր համակուսակցական կենտրոնի դեր։ Լենինը հիանում էր այն անխոնջ ու հիրավի հերոսական աշ-

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 18, էջ 561—562։



խատանքով, որ կատարում էին Պետրոգրադի բոլշևիկները՝ իմպերիալիստական պատերազմի անասելի ծանր պայմաններում։

1916 թվականի գարնանը և հատկապես ամռանը Պետրոգրադի բոլշևիկյան կազմակերպությունը, ղեկավարելով մայրաքաղաքի պրոլետարիատի գործադուլային պայքարը, միաժամանակ սկսում է հեղափոխական ուժերի նախապատրաստումը ինքնակալության դեմ զինված պայքարի համար։ Շրջանային գործադուլային կոմիտեների անդամներից մարտական խմբեր են ստեղծվում, բանվորներից միջոցներ են հավաքվում զենք ու զինամթերք ձեռք բերելու համար։ Այդ ժամանակ երկրի, հատկապես Պետրոգրադի, բանվոր դասակարգը հեղափոխական մասսայական գործողությունների է անցնում պատերազմի և ցարիզմի դեմ։ Այդ ժամանակաշրջանի գործադուլները ունեին ցայտուն արտահայտված քաղաքական բնույթ։ 1916 թվականի հունիսին բոլշևիկների Պետրոգրադի կոմիտեն հատուկ թերթիկ լույս ընծայեց «Գործադուլային շարժումը և մոմենտի խնդիրները» վերնագրով։ Այդ թերթիկում մասսաներին կոչ էր արվում որքան հնարավոր է ավելի ուժգնորեն շարժել հեղափոխության ճոճանակը։

Կենտկոմի ռուսական բյուրոն, ձերբակալություններից հետո նորից վերականգնվելով, 1916 թվականի աշնանը թարմացած կազմով կրկին ակտիվ գործունեություն ծավալեց ամբողջ երկրով մեկ։ Նրա գործակալները, զինված Կենտկոմի դիրեկտիվներով, մեկնում էին Մոսկվա, Խարկով, Կիև, Դոնբաս, Դոնի Ռոստով, Բաքու, Նիժնի Նովգորոդ, Սամարա, Ուրալ և այլ վայրեր, որտեղ նրանք տեղական կուսակցական կազմակերպություններին օգնում էին կարգավորելու և ակտիվացնելու հեղափոխական աշխատանքը մասսաների մեջ։ Կենտկոմի ռուսական բյուրոն, ինչպես և բոլշևիկների Պետրոգրադի կոմիտեն, մշտապես կապ էին պահպանում Լենինի և Կենտկոմի արտասահմանյան մասի հետ, կանոնավոր կերպով ստանում էին կուսակցական գրականություն և դիրեկտիվներ, որոնցով ղեկավարվում էին իրենց ամենօրյա աշխատանքում։

Բանվոր դասակարգի հեղափոխական պայքարը առավելագույն չափով շիկացավ 1917 թվականի սկզբին։ Այդ պայքարի նախաձեռնողը Պետրոգրադի պրոլետարիատն էր։ «Արյունոտ կիրակիի տասներկուերորդ տարեդարձին միմիայն Պետրոգրադում գործադուլի ելավ 150 հազ. բանվոր։ 1917 թվականի հունվար-փետրվար ամիսներին երկրում գրանցվեց 1342 գործադուլ, որոնց մասնակցեցին ավելի քան 681 հազար բանվոր» [1]։ Ընդ որում պետք է նշել, որ 1917 թվականի սկզբի գործադուլների ճնշող մեծամասնությունը քաղաքական գործադուլներ էին։ Գործադուլների ընդհանուր թվից քաղաքական բնույթ ունեին հունվարին՝ 66,4, իսկ փետրվարին՝ 95,6 տոկոսը։ Ամենուրեք գործադուլները զուգորդվում էին բուռն միտինգներով ու ազդու ցույցերով, որոնք անց էին կացվում «Կորչի՛ պատերազմը», «Կորչի՛ ցարական միապետությունը» լոզունգներով։

Բուրժուազիայի սպասավորներ մենշևիկ-պաշտպանողականները, մասսաների հեղափոխական շարժման լայն թափից վախեցած, փորձեցին պրոլետարիատի պայքարը մղել լիբերալ-ռեֆորմիստական հունը։ Այդ նպատակով, նրանք Պետրոգրադում կամպանիա սկսեցին՝ կազմակերպելով ժողովրդական երթ դեպի Տավրիկյան պալատ, 1917 թվականի փետրվարի 14-ին՝ Պետական

[1] «Материалы по статистике труда», вып. 8. М., 1920 г., стр. 56, 61.

դումայի աշխատանքը վերսկսելու օրը։ Այդ գաղափարը մենշևիկները փոխ էին առել «պրոգրեսիվ բլոկի» լիդերներից։ Այդ կամպանիայի կազմակերպումն առանձնապես ոգևորում էր Կենտրոնական ռազմա-արդյունաբերական կոմիտեի մենշևիկյան «բանվորական խումբը», որը բանվորների մեջ թռուցիկներ էր տարածում՝ կոչ անելով ակտիվորեն մասնակցել նախատեսվող երթին և դրանով իսկ ցուցադրել իր համաձայնությունը Պետական Դումայի բուրժուական օպոզիցիայի ծրագրին։

ՌՍԴԲ(բ)Կ Ռուսական բյուրոն, ինչպես նաև բոլշևիկների Պետրոգրադի կոմիտեն վճռականապես հանդես եկան մենշևիկյան այդ մտադրությունների դեմ։ Նրանք աշխատավորներին պարզաբանում էին, որ փոխանակ դեպի պալատներ ուղևորություններ կատարելու, որպիսի հանգամանքը շատ թանկ է նստում ժողովրդին, անհրաժեշտ է ուժեղացնել պայքարը ցարիզմի դեմ, որը մահացու ճգնաժամ է ապրում։ Բոլշևիկները կոչ էին անում փետրվարի 14-ին կազմակերպել ընդհանուր գործադուլ և ցույց՝ հեղափոխական լոզունգներով։

Դեպի Տավրիկյան պալատ երթ կազմակերպելու մենշևիկյան կամպանիայի կապակցությամբ և այն կապակցությամբ, որ բոլշևիկները կոչ էին անում ընդհանուր գործադուլ անել, ամբողջ մայրաքաղաքով մեկ տեղի էին ունենում միտինգներ, որոնցում որոշվում էր այն հարցը, թե փետրվարի 14-ին ում հետևից կգնա պրոլետարիատը, ինչպես կզարգանան իրադարձությունները երկրում՝ հեղափոխական ուղիով, թե՞ ռեֆորմների ուղիով։ Արդեն փետրվարի 13-ին պարզ դարձավ, որ պիտերյան պրոլետարիատի ճնշող մեծամասնությունը մերժում է դեպի Դումա երթ կատարելու գաղափարը և տրամադրված է մարտականորեն։ Փետրվարի 14-ի առավոտյան գործարանների ու ֆաբրիկաների մեծ մասի բանվորները գործադուլ հայտարարեցին և կարմիր դրոշակներով դուրս եկան Պետրոգրադի փողոցները։ Նրանք ցուցադրեցին ցարիզմի դեմ մինչև հաղթական վախճանը պայքարելու իրենց վճռականությունը։ Այդ նույն ժամանակ Տավրիկյան պալատում կատարյալ լռություն էր տիրում. բանվորական մասսաները մենշևիկների հետևից չգնացին։ Դա նշանակում է, որ պրոլետարական մասսաների նկատմամբ բոլշևիկյան կուսակցության գաղափարական և հեղափոխական ազդեցությունը վիթխարի էր։ Բորբոքելով պրոլետարիատի մարտական ոգին, ինքնակալության դեմ նրան վճռական գոտեմարտի նախապատրաստելով, Պետրոգրադի բոլշևիկները փետրվարի 14-ից հետո բաց թողին նոր թռուցիկ, որի մեջ գրում էին. «Այլևս հնարավոր չէ սպասել և լռել։ Բանվոր դասակարգը և գորշ գրատ ու կապույտ վերնաշապիկ հագած գյուղացին, ձեռք-ձեռքի տալով պետք է պայքար մղեն ցարական կլիկի դեմ, որպեսզի մեկընդմիշտ վերջ տան Ռուսաստանի վրա ծանրացած խայտառակությանը» [1]։

Պրոլետարիատի գործադուլային պայքարը օրեցօր աճում ու ընդարձակվում էր՝ բանվորների նորանոր ջոկատներ ընդգրկելով։ Փետրվարի 25-ին Պետրոգրադում գործադուլը դարձավ ընդհանուր։ Այդ գործադուլին ավելի քան 250 հազար մարդ էին մասնակցում։ Քաղաքի մի շարք շրջաններում գործադուլա-

---

[1] Партия большевиков в годы мировой империалистической войны. Вторая революция в России. (1914 год—февраль 1917 года). Документы и материалы. Москва, 1963 г., стр. 220.



վորները զինաթափում էին ոստիկաններին, սպանում ժանդարմական սպաներին։

Փետրվարի 26-ին գործադուլը վերաճեց զինված ապստամբության։ Հեղափոխական հրդեհի գլխավոր օջախը մայրաքաղաքի պրոլետարական շրջանն էր՝ Վիբորգյան կողմը։ Բոցավառ հեղափոխության բնորոշ գիծը այն էր, որ պրոլետարիատը իր կողմը նվաճեց Պետրոգրադի կայազորի զորքերին։ Պրոլետարիատի մասսայական ելույթի ազդեցությունը բանակի վրա այնքան ուժեղ էր, որ տատանվեցին նույնիսկ որոշ կազակական զորամասեր, որոնք համարվում էին ինքնակալական ռեժիմի առավել հուսալի պաշտպանները։ Բանակին հեղափոխականացնող պրոցեսն ընթանում էր ապշեցուցիչ արագությամբ։ Այսպես, փետրվարի 27-ին հեղափոխական պրոլետարիատի կողմն անցան Պետրոգրադի կայազորի 60 հազ. զինվոր։ Հաջորդ օրը այդ թիվն ավելացավ, հասնելով մինչև 120 հազարի, իսկ մարտի 1-ին հեղափոխության կողմն էին արդեն 170 հազար զինվոր ու նավաստի։ Այդ հանգամանքը արմատապես փոփոխեց մարտնչող ուժերի հարաբերակցությունը, որի շնորհիվ արդեն փետրվարի վերջին համարյա ամբողջ մայրաքաղաքը գտնվում էր ապստամբած բանվորների ու զինվորների ձեռքին։

Զինված պայքարի պահին բոլշևիկների Կենտկոմի Ռուսական բյուրոն լույս ընծայեց բացառիկ հեղափոխական կարևորության մի փաստաթուղթ՝ «Ռուսաստանի բոլոր քաղաքացիներին» մանիֆեստը։ Այդ փաստաթղթում սահմանվում էին հեղափոխական պրոլետարիատի անհետաձգելի խնդիրները՝ ցարիզմը վերջնականապես տապալելու և հեղափոխությունը հաղթական վախճանին հասցնելու համար։ Բոլշևիկները ապստամբած բանվորներին ու զինվորներին առաջարկում էին անհապաղ կազմել ժամանակավոր հեղափոխական կառավարություն, որը «պետք է գլխավորեր ստեղծվող նոր հանրապետական կարգերը»։ Ժամանակավոր կառավարությունն իր հերթին պետք է կենսագործեր այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք ժողովրդի իրավունքները պաշտպանող օրենքների հրատարակումն էր, կալվածատիրական, եկեղեցական, պալատական, բաժնեկալվածքային հողերի գրավումն ու հանձնումը ժողովրդին, 8-ժամյա աշխատանքային օրվա սահմանումը և Սահմանադիր ժողովի հրավիրումը։ Դրա հետ միասին հեղափոխական կառավարությունը պետք է հարաբերությունների մեջ մտներ պատերազմող երկրների պրոլետարիատի հետ՝ իմպերիալիստական պատերազմն անհապաղ դադարեցնելու համար։

Կենտկոմի բյուրոյի մանիֆեստի հետ միաժամանակ կուսակցության Պետրոգրադի կոմիտեն լույս ընծայեց մի թերթիկ, որով կոչ էր արվում կազմակերպել բանվորների դեպուտատների սովետ։

Հետաքրքրական է նշել, որ հեղափոխական ժողովրդի կողմից ցարիզմի դեմ մղվող պայքարի այդ խիստ լարված պահին հատուկ թերթիկով հանդես եկավ նաև մենշևիկյան կուսակցության ղեկավար կենտրոնը, այսպես կոչված՝ Կազմակերպական կոմիտեն։ Սակայն, մենշևիկյան թերթիկը միանգամայն շրջանցում էր հեղափոխության առաջ կանգնած գլխավոր խնդիրները և խիստ մշուշապատ արտահայտություններով խոսում հասարակությունը դեմոկրատորեն վերակառուցելու անհրաժեշտության մասին։ Մենշևիկները մասսաներին «խոհեմության» կոչ էին անում և ամեն կերպ զսպում էին ժողովրդի հեղափոխական պոռթկումը։ Բայց միապետության ճակատագիրն արդեն վճռված էր։

Փետրվարյան հեղափոխությունը իր բովանդակությամբ և բնույթով բուրժուա-դեմոկրատական էր։ Բայց նա էականորեն տարբերվում էր Արևմտ-

յան Եվրոպայի այն բոլոր բուրժուական հեղափոխություններից, որոնք տեղի էին ունեցել մինչև իմպերիալիզմի դարաշրջանը։ Փետրվարյան հեղափոխությունը առաջ անցավ սովորական բուրժուական հեղափոխություններից և, լրիվին ոչնչացնելով ցարական միապետությունը, ստեղծեց պրոլետարիատի և գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրա, որի մարմնացումը հեղափոխության բոցերում ստեղծված բանվորների և զինվորների դեպուտատների սովետներն էին։

«Հեղափոխությունը կատարեց պրոլետարիատը, նա հերոսություն ցուցաբերեց, նա արյուն թափեց,—գրել է Վ. Ի. Լենինը «Նամակներ հեռվից» աշխատությունում,— նա իր հետևից տարավ աշխատավոր և ամենաչքավոր բնակչության ամենալայն մասսաներին, նա հաց, խաղաղություն և ազատություն է պահանջում, նա հանրապետություն է պահանջում, նա համակրում է սոցիալիզմին»[1]։

Չնայած այն բանին, որ սկզբնական շրջանում հեղափոխության պտուղներից օգտվեց բուրժուազիան, որը կարողացավ, առանց ցարական միապետության դեմ որևէ կրակոցի, մենշևիկա-էսեռական համաձայնողականների օգնությամբ հասնել իշխանության, այնուամենայնիվ փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը կտրուկ շրջադարձ էր Ռուսաստանի պատմության մեջ։ Նա էական փոփոխություններ մտցրեց երկրի դասակարգային ուժերի հարաբերակցության մեջ և դրանով իսկ անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի համար։

---

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, էջ 414։

---



ԽԱՇԽԱՅԱՆ Խ. Ե.

# ԿԱՌԱՎԱՐՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

Կառավարչական աշխատանքը մարդկային գործունեության կարևոր բնագավառներից մեկն է։ Աշխարհի բոլոր երկրներում միլիոնավոր մարդիկ յուրաքանչյուր օր պետական, տնտեսական, վարչական, կուլտուր-լուսավորական հիմնարկներում աշխատանք են ծավալում, որպեսզի դրանով իսկ նպաստեն նյութական բարիքների արտադրությանը։ Նրանց աշխատանքով է շարժման մեջ դրվում արդի բարդ կառավարչական ապարատը։

Կապիտալիստական հասարակության մեջ կառավարչական ապարատը բուրժուազիայի մոնոպոլիստական միավորումների համար ապահովում է հսկայական շահույթներ, հանդիսանում է աշխատավոր մասսաների շահագործման ու կեղեքման գործիք։ Իր ամբողջ կարողությամբ նա դիմակայում է ժողովրդին, ճնշում ու խեղդում է ամեն մի ազատ միտք, դեմոկրատիայի, սոցիալիզմի, իրենց տնտեսական դրությունը բարելավելու համար մղվող պայքարի ամեն մի փորձ։ Կապիտալիստական երկրներում ժողովուրդն ատում է պետական չինովնիկներին։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որի 50-ամյակը տոնեց ամբողջ առաջավոր մարդկությունը, Ռուսաստանում ջախջախեց բուրժուական պետական մեքենան ու ստեղծեց սովետական իշխանության և կառավարման նոր ժողովրդական ապարատ։ Վ. Ի. Լենինն ասում էր, որ բուրժուական դեմոկրատիան և պառլամենտարիզմը կազմակերպված են այնպես, որ աշխատավորական զանգվածները հեռու պահվեն կառավարման ապարատից։ Սովետական իշխանությունը, ընդհակառակը, կառուցված է այնպես, որ աշխատավորական զանգվածները մոտենան կառավարման ապարատին։

Սովետական իշխանության տարիներին սովետական պետական ապարատը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կարևոր դեր է խաղացել ժողովրդական տնտեսության և սովետական հասարակության սոցիալիստական վերափոխման գործում։ Հայրենական պատերազմի դժվար տարիներին սովետական ապարատի աշխատողները գործում էին անխոնջ, որպեսզի ապահովեն արտադրության կառավարումը, օրինակելի կարգ պահպանեն երկրում։

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր ժողովուրդը պայքարում է ՍՍՀՄ-ում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուց-

ման համար։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մշտապես հոգ են տանում էլ ավելի բարձր մակարդակի վրա դնելու ժողովրդի աճող պահանջմունքների բավարարումը։ Սովետական ապարատը կուսակցության և պետության ձեռքին կարևոր լծակ է այդ վեհ նպատակներին հասնելու համար։

Արդի բարդ պայմաններում արտադրության կազմակերպումը հնարավոր չէ առանց կանոնավորապես գործող ապարատի, մի ապարատ, որը կառավարում է արտադրության պրոցեսները, զբաղվում պլանավորմամբ, մատակարարմամբ, հաշվառմամբ, վարում է ֆինանսական փոխադարձ հաշիվները, կազմակերպում գործավարությունը։

Գիտության ու տեխնիկայի զարգացումը արդի կառավարչական ապարատից պահանջում է արագ տեմպեր և բարձր արտադրողականություն։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի թեզիսներում ասված է. «էկոնոմիկայի աճի և բարձրացման, գիտա-տեխնիկական վերափոխությունների զարգացման, հասարակական հարաբերությունների կատարելագործման և կուլտուրայի վերելքի կապակցությամբ կառավարման խնդիրները ավելի բարդ ու բազմակողմանի են դառնում»։ Եվ այնուհետև՝ «Կենտրոնացված պլանային ղեկավարության բոլոր ամենայնի կատարելագործումն ու կառավարման դեմոկրատական հիմունքների զարգացումը, աշխատավորական լայն մասսաների ներգրավումը կառավարման գործում, հաշվառման ու վերահսկողության սիստեմի բարելավումը, աշխատանքի գիտական կազմակերպման մշակումն ու ներդրումը ամենուրեք, արդի գիտատեխնիկական միջոցների արմատավորումը կառավարման սիստեմի զարգացման հիմնական ուղիներն են»։ ՍՄԿԿ Կենտկոմի այդ սկզբունքային ցուցումները գործողության ուղեցույց են սովետական հիմնարկների կուսակցական կազմակերպությունների համար։

Ներկայումս կարևոր նշանակություն են ստանում կառավարչական ապարատի աշխատանքի կատարելագործումը, աշխատանքի գիտական կազմակերպման և նոր գիտա-տեխնիկական միջոցների արմատավորումը։

Կառավարչական կադրերի որակավորումից, կառավարչական ապարատի գործողությունների արագությունից ու հստակությունից է կախված տեսական ու գիտա-տեխնիկական կարևոր պրոբլեմների և ժողովրդական տնտեսության ղեկավարման գործնական հարցերի ժամանակին ու ճիշտ լուծումը։ Սովետական կառավարչական ապարատը պետք է համապատասխանի ժամանակակից աճող պահանջմունքներին, կարողանա վերամշակել գիտա-տեխնիկական, քաղաքական, սոցիալական մեծածավալ ինֆորմացիա, ժամանակին բոլոր կատարողներին հաղորդի վերադաս մարմինների որոշումներն ու կարգադրությունները, լավ կազմակերպի գործավարության դրվածքը։ Դրա հետ միասին սովետական կառավարչական ապարատը պետք է էժան լինի։ Այդ խնդիրը կարելի է լուծել կառավարչական աշխատանքը գիտականորեն կազմակերպելու և մեքենայացնելու հիման վրա։

Ներկայումս կառավարչական գործունեության ոլորտում վարչա-կառավարչական անձնակազմի մի մեծ բանակ է զբաղված։ Կյանքը ցույց է տալիս, որ աշխարհի բոլոր երկրներում և մեր երկրում կառավարչական աշխատանքում զբաղված անձանց թիվը անշեղորեն աճում է։ Ուստի, անհրաժեշտ է կառավարչական աշխատանքի կազմակերպման հարցերին շատ ավելի մեծ ուշադրություն նվիրել, քան դա արվում էր մինչև վերջին ժամանակներս։



Նյութական արտադրության մեջ աշխատանքի կազմակերպումը նույնպես հիմնական հարցերից մեկն է։ Այստեղ գոյություն ունեն գիտականորեն մշակված տեխնոլոգիական պրոցեսներ, որոնք աշխատողներից պահանջում են որոշակի որակավորում։ Սովետական ապարատի աշխատանքի կազմակերպման հարցերը, կառավարչական աշխատանքի գիտական դրվածքը նույնպես կարևոր են և լուրջ ու մտածված մոտեցում են պահանջում։

Բայց չի կարելի ասել, թե կառավարչական աշխատանքի կազմակերպմանը նույնպիսի ուշադրություն է նվիրվում, ինչպիսին նկատում ենք նյութական արտադրության մեջ աշխատանքի կազմակերպման բնագավառում։ Միայն վերջին տարիներին է կառավարչական աշխատանքը դարձել գիտական հետազոտությունների առարկա։ Կառավարչական աշխատանքի մեքենայացումը դեռևս բավականին ցածր մակարդակի վրա է գտնվում։

Որոշ հետազոտողներ, օրինակ, գտնում են, որ վերջին հարյուրամյակի ընթացքում արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը աճել է 15, մինչդեռ կառավարման ոլորտում այն աճել է ընդամենը 2 անգամ։ Այդ հաշվարկումները, իհարկե, մոտավոր են, բայց դրանք քիչ թե շատ ճիշտ են արտահայտում կառավարչական աշխատանքի կազմակերպման վիճակը և մակարդակը։ Կառավարչական անձնակազմի աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու հարցը հասարակայնությանը լրջորեն անհանգստացնում է այն պատճառով, որ կառավարման աճող խնդիրներն առաջացրել են կառավարչական աշխատանքով զբաղված մարդկանց թվի արագ աճ և խիստ ավելացրել են ապարատի պահպանման ծախսերը։

Հայկական ՍՍՀ-ի վերաբերյալ տվյալները ցույց են տալիս, թե որքան մեծ տեղ է գրավում կառավարչական աշխատանքը հանրապետության ամբողջ գործունեության մեջ։ Այսպես, Հայկական ՍՍՀ վարչա-կառավարչական ապարատում աշխատում են մոտ 74 հազար մարդ։ Դա կազմում է աշխատողների ամբողջ թվի 9,6 տոկոսը։ Այլ կերպ ասած, յուրաքանչյուր տասներորդ աշխատող զբաղված է կառավարչական աշխատանքով։ Հասկանալի է, որ անհրաժեշտ է լուրջ ուշադրություն նվիրել սովետական ծառայողների այդ պատկառելի բանակի աշխատանքի կազմակերպման հարցերին, ծառայողներ, որոնցից մեծ չափով կախված են արտադրական աշխատանքը և բնակչության սպասարկումը։

Հանրապետությունում անց են կացվում շատ միջոցառումներ, որոնք ուղղված են սովետական ապարատի աշխատանքի բարելավմանը, վարչա-կառավարչական ծախսերի կրճատմանը։ Ձեռք առնված միջոցների շնորհիվ վարչա-կառավարչական անձնակազմի տեսակարար կշիռը աշխատողների ընդհանուր թվի մեջ նվազում է։ Հայկական ՍՍՀ-ում աշխատողների ընդհանուր թվի մեջ վարչա-կառավարչական անձնակազմը կազմում էր՝ 1958 թվականին՝ 11,2, իսկ 1966 թվականին՝ 9,6 տոկոս։ Ընդ որում հարկավոր է նշել, որ, չնայած վարչա-կառավարչական անձնակազմի տեսակարար կշռի նվազմանը, կառավարչական աշխատանքում զբաղված անձանց բացարձակ թիվը աճում է։

Կառավարչական աշխատանքի ճիշտ կազմակերպումը ամենից առաջ ենթադրում է յուրաքանչյուր ստորաբաժանման և նրա առանձին աշխատողների ֆունկցիաների հստակ ձևակերպում, ելնելով այն խնդիրներից, որ ծառացած են այս կամ այն հիմնարկի առաջ։ Առանց այդ տարրական պայմանի, դժվար է պատկերացնել ապարատի բեղմնավոր աշխատանքը։ Սակայն

մեր հիմնարկներում ամենուր չէ, որ ֆունկցիաները սահմանագծված են
աշխատակիցների, բաժինների և այլ ստորաբաժանումների միջև: Դա հասցը-
նում է այն բանին, որ միևնույն աշխատանքը զուգահեռաբար կատարում են
տարբեր բաժիններ, իսկ հետո պարզվում է, որ նրանցից ինչ-որ մեկը իզուր
չարչարվել և շատ ժամանակ է ծախսել:

Հիմնարկների առանձին ստորաբաժանումների ֆունկցիաները հստակորեն
չորոշելը խառնաշփոթություն է առաջացնում հիմնարկների կառուցվածքի ու
հաստիքները սահմանելու գործում: Պետք է ասել, որ դժբախտաբար այդ
կարևոր գործում դեռևս գիտական մոտեցում չկա: Այդ ամենը երբեմն մեզ մոտ
կատարվում է էմպիրիկ ձևով, ելնելով հիմնարկների ղեկավարների փորձից:
Վարչա-կառավարչական ապարատի հաստիքները հաճախ որոշվում են ոչ թե
իրական պահանջմունքներից ելնելով, այլ ուղղակի հիմնարկի ղեկավարի
«փորձնական ընդունակության» համապատասխան: Այդ գործում սուբյեկտի-
վիզմը հասցնում է նրան, որ որոշ հիմնարկներում կառավարչական անձնա-
կազմի կարիք է զգացվում, իսկ որոշ հիմնարկներում աշխատակիցները լիո-
վին ծանրաբեռնված չեն: Այսպես. Լենինական քաղաքում կան սննդի կոմ-
բինատ և հրուշակեղենի ֆաբրիկա: Ճիշտ է, կատարվող աշխատանքի
ծավալով և բնույթով նրանք հազիվ թե տարբերվում են միմյանցից: Սակայն
հրուշակեղենի ֆաբրիկայում վարչա-կառավարչական անձնակազմ նախա-
տեսված է 24 մարդ, իսկ սննդի կոմբինատում՝ 11 մարդ: Կամ, Գորիսի հացի
գործարանում վարչա-կառավարչական ապարատը կազմում է աշխատողների
ընդհանուր թվի 13,4 տոկոսը, իսկ Դիլիջանի հացի գործարանում՝ 22,8 տո-
կոսը:

Կառավարումը կազմակերպելու հարցերի հայտնի մասնագետ Տերեշչեն-
կոն հաճախ է օրինակներ բերում ամերիկյան հիմնարկների աշխատանքի
փորձից, երբ հիմնարկի աշխատանքի կազմակերպման մեջ ամենահասարակ
թերությունը լուրջ բարդությունների պատճառ է դարձել ձեռնարկատիրոջ գոր-
ծունեության համար: Մեզ մոտ ևս կարելի է հանդիպել այնպիսի փաստերի,
երբ հիմնարկներում բոլոր աշխատակիցներն գործում են լրիվ ծանրաբեռն-
վածությամբ, գիշեր ու ցերեկ չհարցնելով, բայց հիմնարկը վատ է աշխա-
տում: Դա հաճախ բացատրվում է նրանով, որ աշխատողները չեն զբաղվում
նրանով, ինչը պետք է, չգիտեն իրենց ֆունկցիան ու պարտականությունները:

Տնտեսական հիմնարկների, պետական և այլ օրգանների գործունեու-
թյան խոր ուսումնասիրությունը և դրա հիման վրա նրանց աշխատանքների
արդյունքների գիտական ընդհանրացումը, հիմնարկների կառուցվածքի, նրանց
ստորաբաժանումների ու առանձին աշխատողների ֆունկցիաների ճիշտ սահ-
մանումը թույլ կտային բարելավելու արտադրության ղեկավարումը, կրճատե-
լու կառավարչական ապարատի պահպանման ծախսերը: Բայց այդ բանը
դեռևս համարյա թե չի կատարվում:

Կառավարչական աշխատանքի ճիշտ կազմակերպումը ենթադրում է աշ-
խատողների նպատակահարմար օգտագործում՝ նրանց որակավորմանը հա-
մապատասխան: Ինչպես ամեն մի այլ բնագավառում, այնպես էլ կառավար-
չական գործունեության մեջ կան աշխատանքներ, որոնք տարբեր որակավո-
րում ունեցող կատարողներ են պահանջում: Դա նշանակում է, որ որակյալ
մասնագետը աշխատաժամանակը պետք է օգտագործի այնպես, որ առավել
մեծ արդյունք տա:

Կարելի է առանց չափազանցնելու ասել, որ այդպիսի թերություններ մեր



հիմնարկներում շատ կան: Մեզ մոտ, չգիտես թե ինչու, հակառակ պատկե-
րացում կա այդ հարցում: Եթե, ասենք, որ գործարանում խառատներն իրենք
պետք է նյութերը մոտեցնեն և պատրաստի դետալները պահեստ տանեն, բո-
լորը կասեն, թե դա անթույլատրելի է որակյալ բանվորներին օգտագործելու
ասպարեզում: Բայց երբ որակյալ ինժեները, բաժնի վարիչը ինքն է իր ձեռա-
գրերը տանում մեքենագրական բյուրո, ինքն է գնում այնտեղից վերցնելու,
այնուհետև շտկում ուղղագրական սխալները և նորից տանում ուղղելու և մե-
քենագրելու, ապա դա կարծես թե այդպես էլ պետք է լինի: Իր մի ելույթում
Տերեշչենկոն ասել է, թե իր զեկուցումներից հետո հաճախ այսպիսի հարցեր
են տալիս. «Դուք, ընկ. Տերեշչենկո, պրոպագանդում եք, թե ավելի շատ մե-
քենագրուհիներ են պետք, բայց չեք մտածում, թե շատ ավելի խելացի կլիներ
չավելացնել նրանց թիվը, այլ ընդհակառակը, պակասեցնել և դրա փոխարեն
պարտադրել ինժեներներին սովորել մեքենագրություն, և այն ժամանակ մե-
քենագրուհիներ պետք չեն լինի»: Ինժեները, իհարկե, կարող է մեքենագրել
սովորել: Բայց ինժեների համար պետք է պայմաններ ստեղծել, որպեսզի նա
թանկագին ժամանակը չծախսի գրագրության և մեքենագրության վրա: Այդ
բանը մեծ հաջողությամբ կարող են անել ուրիշ որակավորում ունեցող մարդիկ:
Ինժեները պետք է տա մտքեր, գաղափարներ, կոնստրուկցիաներ, լուծի բարդ
տեխնիկական պրոբլեմներ, այսինքն՝ անի այն, ինչը չեն կարող անել ուրիշ
որակավորում ունեցող մարդիկ:

Մեզ մոտ շատ պրիմիտիվ պատկերացում կա կառավարչական ապարա-
տում աշխատանքի կազմակերպման մասին: Խոսքը մեքենագրուհիների,
սղագրուհիների, քարտուղարների թիվը մեխանիկորեն ավելացնելու մասին
չէ, այլ այն մասին, որ ճիշտ հարաբերակցություն պահպանվի տարբեր որա-
կավորման աշխատողների միջև: Համապատասխան որակավորման աշխա-
տողների ճիշտ հարաբերակցության ապահովումը կառավարչական աշխատան-
քի կազմակերպման էական հարցն է: Կառավարչական աշխատանքի որակյալ
աշխատողների հնարավորությունների ճիշտ օգտագործումից շատ չափով
կախված են հիմնարկության աշխատանքի արդյունավետությունը և ապարատի
պահպանման էժանացումը: Այս հարցը մանրազնին ուսումնասիրություն և
գիտական մոտեցում է պահանջում: Յուրաքանչյուր առանձին դեպքում տար-
բեր մասնագիտություններ ունեցող աշխատողների ճիշտ հարաբերակցու-
թյան հարցը հարկավոր է լուծել, ելնելով տվյալ հիմնարկության առաջ դրված
կոնկրետ խնդիրներից և որակյալ կադրերի հնարավորություններն առավե-
լագույն չափով օգտագործելու սկզբունքից:

Ժողովրդական տնտեսության, հասարակական և քաղաքական կյանքի
ղեկավարումը գլխավորապես ընթանում է գրավոր կարգադրություններով, որո-
շումներով, հրամաններով, հրահանգներով և այլ փաստաթղթերով: Այդ բո-
լոր գործարար թղթերը վարելու սիստեմը կրում է գործավարություն անունը:
Կառավարչական աշխատանքում գործավարությունը մեծ և կարևոր տեղ է
գրավում: Գործավարությունը կառավարման միջոց է և քիչ դեր չի խաղում
ձեռնարկությունների, հասարակական ու քաղաքական կյանքի ղեկավարու-
թյունը բարելավելու, կառավարչական ծախսերը կրճատելու գործում: Սա-
կայն մենք դեռ չենք հաղթահարել գործավարությունը թերագնահատելու
երևույթները: Մինչև այժմ էլ դեռ պատահում են մարդիկ, ովքեր «գրասեն-
յակ» բառին վերաբերում են արհամարհանքով, այդ բառը գործ են ածում
որպես բյուրոկրատիզմի հոմանիշ: Դա խորապես սխալ է. ընդհակառակը ,

հստակորեն աշխատող գրասենյակը, լավ հիմքերի վրա դրված գործավարու-
թյունը կարևոր միջոց են բյուրոկրատիզմն ու քաշքշուկը վերացնելու համար:
Փաստերը ցույց են տալիս, որ ով արհամարհանքով է վերաբերվում գործա-
վարության դրվածքին, գրասենյակի հստակ աշխատանքի կազմակերպմանը,
նա չարաչար հատուցում է դրա համար: Ապշեցուցիչ փաստեր կան, երբ ամեն
տեսակ հանցագործներ, օգտվելով գործավարության հանդեպ հիմնարկների
ղեկավարների արհամարհական վերաբերմունքից, խոշոր չարաշահումներ են
կատարել:

Փաստաթուղթը գործավարության հիմքն է, նրա օբյեկտը: Մասնագետնե-
րի հաշվարկումներով մեր երկրում տարեկան 30 միլիարդ թերթ ծավալի
տարբեր փաստաթղթեր են կազմվում: Փաստաթղթերի այդ վիթխարի քանա-
կությունը կազմվում է, տպագրվում, բազմացվում, առաքվում: Ընդ որում
դրանց մի մասը վերամշակվում է երկարատև պահպանության համար: Հար-
կավո՞ր է արդյոք թղթերի այդպիսի առատություն: Արդյոք չի՞ կարելի կա-
ռավարել զգալիորեն պակաս թղթաքանակով: Այդ հարցը հուզում է բոլորին:
Բոլորը համաձայն են այն բանում, թե կարելի է և հարկավոր է կրճատել
թղթի տարերային հոսքը: Այդ հարցերն ուսումնասիրվում են, կառավարչա-
կան աշխատանքի արմատական հարցերը շոշափող խոշոր միջոցառումներ են
մշակվում: Արդեն նախագիծ կա երկրում գործավարության միասնական սիս-
տեմ մտցնելու մասին: Այդ միջոցառումների կենսագործումը անպայման
զգալիորեն կկրճատի թղթային տարերքը:

Որքան էլ որ կրճատվի թղթի հոսքը, ակներև է, որ այսուհետև էլ փաս-
տաթղթերը կարևոր դեր են խաղալու կառավարչական գործունեության մեջ:
Խնդիրն այն է, որ ռացիոնալ դարձվի փաստաթղթերի հետ տարվող աշխա-
տանքը, բարձրացվի գրասենյակային ծառայողների աշխատանքի արտադրո-
ղականությունը: Դա, իհարկե, չի նշանակում, թե հարկավոր չէ պայքար մղել
«թղթաբարության» դեմ: Ընդհակառակը, ոչ ոքի պետք չեկող այսպես կոչ-
ված ղեկուցագրեր, ծավալուն հաշվետվություններ կազմելը, որոնց մեջ
դրանց հեղինակները ջանում են «ընդգրկել անընդգրկելին», ինչպես նաև
բազմաստիճան վիճակագրական հաղորդագրությունների տեղեկանքներ կազ-
մելը մնում են որպես մեր ապարատի կառավարչական գործունեության լուրջ
թերությունը: Ավելորդ թղթերի առաջացման լուրջ պատճառ է անհարկի
գրագրությունը գերատեսչությունների, ձեռնարկությունների, նույնիսկ հիմ-
նարկության ներսում բաժինների միջև: Թղթային տարերքի դեմ հարկավոր է
պայքար մղել նախ և առաջ կառավարչական աշխատողների որակավորումն
ու գրագիտությունը բարձրացնելու միջոցով: Անհրաժեշտ է ամենալուրջ կեր-
պով ուշադրություն դարձնել հարկավոր փաստաթուղթը կազմելու վրա:

Անհրաժեշտ է փաստաթղթերի հետևում մշտապես տեսնել կենդանի
ստեղծագործությունը և այն մարդկանց, ովքեր կենսագործում են փաստա-
թղթով արված կարգադրությունները: Այն կարգադրությունները, որոշումնե-
րը, հրահանգները և փաստաթղթերը, որ կազմվում են կառավարչական
ապարատում, նպատակ ունեն բազմաթիվ կատարողներին հասցնել վերա-
դաս մարմինների դիրեկտիվներն ու ցուցումները: Փաստաթղթերի որակից ու
ընթացքի արագությունից է մեծ չափով կախված պետական կարևոր հարցե-
րի ժամանակին լուծումը: Այդ պատճառով էլ փաստաթղթի որակին պետք է
լուրջ ուշադրություն նվիրել: Դրանք կազմելու և հրատարակելու գործով պետք
է զբաղվեն համապատասխան պատրաստականություն և կոչում ունեցող ան-



ձինք: Այո՛, հատկապես կոչում ունեցող անձինք: Հաճախ է պատահում, երբ
լավ մասնագետին արտադրությունից փոխադրում են կառավարչական ապա-
րատ, իսկ նրա գործերը վատ են ընթանում, փաստաթղթեր կազմելը նրան
նեղում է: Ավելի լավ է այդպիսի մասնագետին օգտագործել արտադրությու-
նում, իսկ ապարատում ընդունել այնպիսի մարդկանց, ովքեր փաստաթղթերի
հետ գործ ունենալու հմտություն ունեն և սիրում են այդ աշխատանքը:

Թղթերի քանակության կրճատմանը կնպաստեն նաև լավ հիմքերի վրա
դրված գործավարությունը և այդ պրոֆեսիային տիրապետող կադրերը: Գոր-
ծավարությունը կառավարչական աշխատանքի բավականաչափ բարդ ճյու-
ղերից մեկն է: Այստեղ պահանջվում է մշակված և հստակորեն կենսագործ-
վող սիստեմ: Հիմնարկներում փաստաթղթերի պահպանումը պետք է այնպիսի
հիմքերի վրա դրվի, որ յուրաքանչյուր պահ հնարավոր լինի գտնել ամեն
մի փաստաթղթի տեղը: Գործավարությունը կազմակերպելու և վարելու հա-
մար անհրաժեշտ է պատրաստել ռեֆերենտների, գործավարների, քարտու-
ղարների և մյուս պրոֆեսիաների աշխատողների համապատասխան կադրեր:
Սակայն այդպիսի պրոֆեսիաների պատրաստմամբ հանրապետությունում ոչ
ոք չի զբաղվում: Որպես կանոն, այդպիսի աշխատողներ ընտրվում են միջ-
նակարգ կրթություն ունեցողներից, որոնք պրակտիկայում յուրացնում են
տվյալ հիմնարկում ստեղծված տրադիցիաները: Կառավարչական աշխա-
տանքը վատ գիտեն նաև բարձրագույն տեխնիկական ուսումնական հաստա-
տությունների շրջանավարտները: Երիտասարդ ինժեներները, արտադրու-
թյուն գալով, դժվարանում են ո՛չ թե տեխնիկայի հարցերում, այլ ամենից
շատ հաշվապահության, գործավարության, կառավարչական աշխատանքի
կազմակերպման ասպարեզներում: Որոշ երկրներում համալսարաններում ա-
վանդում են հատուկ առարկա՝ կառավարման կազմակերպումը: Մեր բուհերի
ծրագրերում այդպիսի առարկա չկա: Ուստի, հարկավոր է որոշ դասախոսու-
թյուններում ուշադրություն դարձնել կառավարչական աշխատանքի կազմա-
կերպման հարցերին, իսկ տեխնիկական բուհերում՝ ֆակուլտատիվ դասախո-
սություններ կարդալ դրանց մասին:

Գործավարության ոլորտի մեջ են մտնում պատմական արժեք ներկայաց-
նող և մարդկանց աշխատանքային գործունեությանը վերաբերող փաստա-
թղթերի պատրաստումը և պետական արխիվին հանձնումը: Դա շատ պատաս-
խանատու աշխատանք է: Կառավարչական ապարատում կազմվող բոլոր թղ-
թերը չէ, որ արխիվ են հանձնվում: Այլապես հարկավոր կլինեին վիթխարի
շենքեր և մեր արխիվները կլցվեին արժեք չներկայացնող թղթերով: Ուստի
արխիվ հանձնելու համար պետք է ջոկել հիմնարկի աշխատանքին վերաբերող,
առավել կարևոր փաստաթղթերը: Արխիվների անմխիթարական վիճակի հե-
տևանքով հաճախ է պատահում, երբ աշխատավորները չեն կարողանում
փաստաթղթերով հաստատել իրենց աշխատանքային ստաժը՝ կենսաթոշակ
ստանալու համար: Հարկավոր է այդ ասպարեզում ուժեղացնել պահանջը մեր
հիմնարկների և պետական արխիվի նկատմամբ:

Ունիֆիկացիան, փաստաթղթերի գիտական դասակարգումը, դրանց հաշ-
վառման ու խմբավորման գիտականորեն հիմնավորված սիստեմի մշակումը
հանդիսանում են գործավարության և կառավարչական աշխատանքի կազմա-
կերպման այնպիսի պրոբլեմներ, որոնք պահանջում են գիտական լուրջ հե-
տազոտություն և հետագա կատարելագործում:

Մինչև վերջին ժամանակներս բավականաչափ ուշադրություն չէր նվիրվում

կառավարչական աշխատանքի մեքենայացմանը, գործավարության պրոցեսների ռացիոնալացմանը։ Մինչև այժմ էլ գրեթե ամբողջ գործավարությունը տարվում է ձեռքի աշխատանքով։ Շատ ժամանակ է ծախսվում փաստաթղթերը բազմացնելու, էջերից գրքեր կազմելու, կարելու, համարակալելու, փաստաթղթերը ծրարների մեջ դնելու, դրանք փակելու վրա։ Ծիծաղելի է «արագակար» թղթապանակը, որը դեռևս օգտագործվում է մեր գրասենյակներում։

Կառավարող մեքենաների ու սիստեմների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Կուրսկի ֆիլիալը մշակել է մի շարք նոր մեքենաներ, որոնք հնարավորություն են տալիս մեքենայացնելու գրասենյակային աշխատանքը։ Կարելի է հուսալ, որ շուտով կկարգավորվի այդ մեքենաների մասսայական արտադրությունը։ Շատ բան կարելի է անել արդեն հիմա՝ ներկայումս թողարկվող գրասենյակային պիտույքների ու կահույքի որակը բարելավելու միջոցով։ Չի կարելի հաշտվել մեր արդյունաբերության թողարկած գրասենյակային պիտույքների ցածր որակի հետ։ Ժամանակն է դադարեցնել այն գլանատիպերի թողարկումը, որոնք չեն տպում, այն թղթակարների թողարկումը, որոնք չեն կարում, այն ամրակների թողարկումը, որոնք չեն ամրացնում, այն «արագակարների» թողարկումը, որոնք թղթերը «կարում են» երկաթե շերտիկով։

Խոսելով կառավարչական աշխատանքի կազմակերպման մասին, չի կարելի թեկուզ և հակիրճ չանդրադառնալ կառավարչական աշխատողների աշխատանքի պայմաններին և տեղին։ Սխալ չի լինի, եթե ասենք, որ այդ տեսակետից վիճակը բարվոք չէ։ Հազվագյուտ է պատահում, որ մեքենագրական բյուրոյի աշխատատեղը պատշաճ սարքավորված լինի։ Սեղանները, որոնց վրա դրված են գրամեքենաները, դեռևս վատ են հարմարեցված մեքենագրական աշխատանքին, շենքի լուսավորությունը հաճախ անբավարար է լինում։ Ավելի լավ վիճակում չեն գտնվում հաշվապահների սենյակները։ Արհմիությունները համարյա թե երբեք չեն պահանջում, որ այդ շենքերի պատերն ու հատակը մեկուսացված լինեն ձայնակլանիչ նյութերով, սենյակներում օդափոխիչ հարմարանքներ լինեն։ Հանրապետության պետպլանը պետք է ուսումնասիրի գրասենյակային կահույքի արտադրության հարցերը, հանձնարարի ժամանակին մշակել դրա նոմենկլատուրան և կոնստրուկցիան, որպեսզի հանրապետությունում արտադրվի հարմարավետ գրասենյակային կահույք։ Աշխատանքի պաշտպանության և պրոֆհիգիենայի հանրապետական գիտահետազոտական ինստիտուտը համարյա ուշադրություն չի դարձնում առանձին պրոֆեսիաների կառավարչական աշխատողների աշխատանքի պաշտպանության հարցերին։ Կառավարչական այնպիսի մասսայական պրոֆեսիայի աշխատողները, ինչպես մեքենագրուհիներն են, հաճախ աշխատում են միջանցիկ սենյակներում, կողմնակի աղմուկի տակ, անբավարար լուսավորության պայմաններում։ Հրամայական անհրաժեշտություն է, որ արհմիություններն ու բժշկական գիտահետազոտական հիմնարկները զբաղվեն կառավարչական աշխատողների աշխատանքի պաշտպանության և պրոֆեսիոնալ հիվանդությունների հարցերով, պահանջկոտություն դրսևորեն այդ գործում։

Սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ստեղծվեցին կառավարչական աշխատանքի գիտական կազմակերպման պրոբլեմներով զբաղվող հիմնարկներ։ Այդ գիտական հիմնարկների աշխատանքը կոորդինացնում էր բանվորագյուղացիական տեսչության ժողկոմատը։ Ներկայումս կառավարչական աշխատանքի կազմակերպման



հարցերով համարյա ոչ ոք լրջորեն չի զբաղվում։ Հայկական ՍՍՀ-ում կան գիտա-հետազոտական տնտեսագիտական երեք ինստիտուտներ։ Բայց դրանցից և ոչ մեկում ուշադրություն չի դարձվում կառավարչական ապարատի աշխատանքի գիտական կազմակերպմանը։ Հայկական ՍՍՀ պետպլանին առընթեր տնտեսագիտական ինստիտուտը ամենից ավելի է շահագրգռված կառավարչական աշխատանքի գիտական կազմակերպման հարցերով, սակայն այստեղ ևս այդ հարցերին անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում։

Ներկայումս, երբ սովետական ժողովուրդը և կոմունիստական կուսակցությունը, կատարելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, լուծում են ժողովրդական տնտեսության կառավարումը գիտականորեն կազմակերպելու խնդիրները, հատուկ նշանակություն է ստանում կառավարչական աշխատանքի գիտական կազմակերպումը։ Կուսակցությունը և պետությունը մեծ ուշադրություն են նվիրում կառավարչական կազմակերպման հարցերին, գործավարության ռացիոնալացմանն ու մեքենայացմանը։ Սովետական հիմնարկների կուսակցական կազմակերպությունները պետք է գլխավորեն այդ աշխատանքը, կազմակերպեն գործավարության նոր առաջավոր մեթոդների ուսումնասիրությունն ու արմատավորումը, կառավարչական բնագավառի աշխատողներին մշտապես դաստիարակեն բարձր գիտակցականության և պատասխանատվության ոգով։

Սովետական հիմնարկների աշխատողները մեր ժողովրդի անբաժանելի մասն են, նրանք բոլոր աշխատավորների հետ միասին իրենց ավանդն են մուծում մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում։ Կառավարչական ապարատի աշխատանքի կազմակերպման հարցերը պետական կարևորություն ունեն, որոնց վրա պետք է լուրջ ուշադրություն դարձնել։

---

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԱՍՈՒՆՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱԴՐՈՒՄԸ

Հանրապետությունում ավարտվեցին կուսակցական ղեկավար օրգանների հաշվետվությունները ու ընտրությունները։ Դրանք անցան քաղաքական և աշխատանքային համաժողովրդական վերելքի պայմաններում, ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների և սովետական պետության կեսդարյա հոբելյանի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման համար կոմունիստների, մեր բոլոր աշխատավորների ուժերը մոբիլիզացնելու նշանաբանով։ Հաշվետու-ընտրական ժողովների համար բնորոշ էին կոմունիստների բարձր ակտիվությունը, թերությունների համարձակ բացահայտումը, աշխատանքի ոճի ու մեթոդների հետագա կատարելագործման միջոցառումների մշակումը, կոլեկտիվի կյանքում սկզբնական կուսկազմակերպությունների ազդեցության ուժեղացումը։

Հաշվետու-ընտրական ժողովներ անցկացվեցին 4247 սկզբնական կազմակերպություններում։ Հաշվառքում եղած 117053 կուսանդամից ու անդամության թեկնածուից ժողովներին մասնակցեցին 106716 հոգի կամ 90,4 տոկոսը, հաշվետու զեկուցումների առթիվ ելույթ ունեցան 27905 մարդ։ Սկզբնական կուսակցական կազմակերպության 4247 քարտուղարներից 1211-ը կամ 28,7 տոկոսը ընտրվեցին առաջին անգամ։ Ժողովներում առանձնահատուկ ուշադրություն նվիրվեց քարտուղարների որակական կազմի բարելավմանը, կին կադրերի առաջքաշմանը։ Կուսկազմակերպության քարտուղար են ընտրվել 1023 կին—1966 թվականի համեմատությամբ 56 հոգով ավելի։ Նորընտիր քարտուղարներից 2201-ը ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն (112 հոգով ավելի, քան 1966 թվականի ընտրություններին)։ Դրանք քաղաքականապես հասուն բանվորներ են, կոլտնտեսականներ, որոնք ունակ են աշխատավորներին մոբիլիզացնելու կոլեկտիվների առջև դրված խնդիրները լուծելու համար։

Կուսակցական կազմակերպությունների ղեկավար օրգանների հաշվետվությունների և ընտրությունների արդյունքներն ակնառու վկայությունն են նրանց բարձր մարտունակության, իրենց և ամբողջ կուսակցության գործունեության համար կոմունիստների պատասխանատվության բարձրացման։ Հաշվետու-ընտրական ժողովների մեծ մասում կարծիքների ազատ փոխանակությունը, քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտը կոմունիստներին հնարավորություն ընձեռեցին գործարար վերլուծության ենթարկելու գործերի վիճակը, կոնկրետ առաջարկություններ մտցնելու կուսկազմակերպության աշխատանքների հետագա բարելավման համար, նոր պահանջներ ներկայացնելու կազմակերպությունների ղեկավարներին և յուրաքանչյուր անդամի։

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները հանգամանորեն քննարկեցին արտադրության տնտեսական արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման, տեխնիկական առաջադիմության արագացման, արտադրանքի որակի բարելավման և ինքնարժեքի իջեցման, ներքին ռեզերվների լիովին օգտագործման կարևոր հարցերը։ Նրանց ուշադրության կենտրոնում էին գտնվում մարդկանց աշխատանքի, կենցաղի և ազատ ժամանակի կազմակերպման բարելավման, կազմակերպվածության և կարգապահության ամրապնդման հարցերը։

Քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների մրցությունում հոբելյանական տարում (3 եռամսյակ անընդմեջ) հաղթող դուրս եկավ Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատը և Հոկտեմբերի 50-ամյակին արժանացավ հանրապետական հուշադրոշի։ Կոմբինատի կուսկոնֆերանսում բերված թվերն ու փաստերը ցուցադրեցին ձեռնարկության հաջողությունները. ապրանքային արտադրության թողարկման 10 ամսվա պլանը կատարվել է 110,5 տոկոսով։ Այս ձեռնարկությունում չկան ետ մնացող արտադրամաս, բաժին, տեղամաս։ Կոմբինատի կոլեկտիվը, մրցություն ծավալելով արտադրանքի ավելացման, ծախքերի կրճատման, էլեկտրաէներգիայի, հումքի և նյութերի խնայողության համար, կարողացավ ապահովել ձեռնարկության շահութաբեր աշխատանքը։ Սակայն կոմբինատում դեռևս լուրջ թերություններ էլ կան։ Հաշվետու ժամանակամիջոցում նկատվել են աշխատանքային և արտադրական կարգապահության խախտման շատ դեպքեր։ Արտադրամասերը բանվորական ուժի խիստ կարիք ունեն, շարունակվում է կադրերի մեծ հոսունությունը։ Այդ ամենը հետևանք է այն բանի, որ կուսակցական կազմակերպությունն անբավարար է զբաղվում աշխատանքային պայմանների բարելավմամբ, երբեմն հմտորեն չեն օգտագործվում բարոյական և նյութական ազդակները, ինչպես հարկն է չի կազմակերպվում մարդկանց կուլտուրական հանգիստը։

Աշխատանքի բարելավման նոր ուղիների որոնման մթնոլորտում անցավ Երևանի ալմաստի և ալմաստե գործիքների գործարանի կուսկազմակերպության ժողովը։ Ծավալված մտքերի գործարար փոխանակությունը վկայեց, որ կոմունիստները նորանոր հաջողությունների են ձգտում։ Ժողովում շատ խոսվեց կոլեկտիվում տարվող դաստիարակչական աշխատանքի մասին, և դա պատահական չէր։ Գործարանում կյանքի և արտադրական փորձ չունեցող շատ երիտասարդներ, պատանիներ ու աղջիկներ կան։ Այստեղ վատ չի կազմակերպված քաղաքական ուսուցումը, երիտասարդությունը ակտիվ մասնակցում է հասարակական կյանքին, արտադրական ուսուցմանը։ Իր բարի գործերով աչքի է ընկնում գործիքային արտադրամասի պետ, կոմունիստ Պ. Սարգսյանը։ Ժողովում տրվեցին նաև ուրիշ կոմունիստ բանվորների և ինժեներների անուններ, որոնց աշխատանքային օրինակելի փորձը անհրաժեշտ է մասսայականացնել։

Կազմակերպված, ստեղծագործական մթնոլորտում անցան Վ. Ի. Լենինի

անվան հայէլեկտրագործարանի, Ս. Մ. Կիրովի անվան քիմիական, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատների, Երևանի էլեկտրալամպերի և շատ այլ գործարանների հաշվետու-ընտրական կուսժողովներն ու կոնֆերանսները։

Հոբելյանական տարում մեծ հաջողություններ ձեռք բերեցին նաև հանրապետության գյուղատնտեսության աշխատողները։ Շատ շրջաններ մեծ Հոկտեմբերի 50 ամյակի նախօրեին զեկուցեցին պետությանը մսի, կաթի, բրդի, պտղի և այլ մթերքների վաճառքի առաջադրանքները կատարելու մասին։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1967) պլենումի որոշումները աշխատանքային մեծ վերելք առաջացրին գյուղում։ Ի պատասխան ժողովրդի բարեկեցության բարձրացման նկատմամբ կուսակցության ու կառավարության ցուցաբերած հոգատարության, կոլտնտեսությունների ու սովխոզների կոմունիստներն իրենց ժողովներում պատշաճ ուշադրություն նվիրեցին գյուղատնտեսական տարին արժանավայել փակելուն, նոր տարվա բարձր բերքի և անասնապահության հետագա վերելքի համար ամուր հիմքի ստեղծմանը։

Գյուղական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները նրանց մարտունակության հետագա բարձրացման ապացույցն են։ Կոլտնտեսությունների ու սովխոզների կոմունիստները սկսել են ավելի լուրջ զբաղվել ուժերի ճիշտ տեղաբաշխման, կուսանդամների ավանգարդային դերի բարձրացման հարցերով։ Նրանք մեծ ուշադրություն են նվիրում գյուղատնտեսական արտադրության ինտենսիվ զարգացմանը, տնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդման համար կուսակցության մշակած միջոցառումների հետևողական իրականացմանը։

Բնորոշ էր Կալինինի շրջանի Կալինին սովխոզի կուսակցական կազմակերպության ժողովը։ 1967 թվականին Կալինինի սովխոզը, շրջանի առաջավոր տնտեսությունների հետ, պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։ Կուսբյուրոյի քարտուղար Մ. Բեշետովն իր զեկուցման մեջ նշեց այն կոմունիստների անունները, որոնք աշխատանքի նկատմամբ իրենց օրինակելի վերաբերմունքով, հասարակական ակտիվ գործունեությամբ նպաստել են ընդհանուր հաջողությանը։ Կուսբյուրոն իր ուշադրությունը կենտրոնացրել է ստանձնած պարտավորությունների կատարման սիստեմատիկ ստուգման, մրցության ներգործության բարձրացման, խրախուսման ձևերի զարգացման վրա։ Զեկուցողը և ելույթ ունեցողները խոսեցին կուսանդամի բարձր կոչման մասին և հարց դրին ուժեղացնել պահանջկոտությունը նրանց նկատմամբ, ովքեր դեռևս լիովին չեն արդարացնում իրենց ավանգարդային դերը։

Հաշվետու ընտրական կուսժողովներում մեծ տեղ հատկացվեց հանրապետության կուսկազմակերպությունների գաղափարական աշխատանքի հարցերին։ Ինչպես ցույց տվեցին ժողովները, գաղափարական-դաստիարակչական գործունեության հիմքում է դրված ՍՄԿԿ Կենտկոմի՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 տարին, թեզիսների լայն պրոպագանդումը։ Ժողովներում հանգամանորեն քննարկվեց աշխատավորների գաղափարական դաստիարակության դրվածքը։ Պատշաճ ուշադրություն նվիրվեց կոմունիստների մարքս-լենինյան ուսուցման, մասսայական պրոպագանդայի կազմակերպման, քաղաքական ինֆորմացիայի որակի և օպերատիվության բարձրացման, կյանքի հետ պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքի կապի ամրապնդման հարցերին։ Կոմունիստները վեր հանեցին



մասսաների կոմունիստական դաստիարակության գործում եղած թերությունները, առաջարկեցին դաստիարակչական աշխատանքում լայնորեն օգտագործել բազմապիսի և գործարար ձևեր, լուրջ ուշադրություն նվիրել կոմունիստների ուսուցման քաղաքական ու գաղափարական մակարդակի բարձրացմանը։

Հաշվետու ժամանակամիջոցում իրենց աշխատանքը զգալի չափով աշխուժացրել են գաղափարական հիմնարկությունների կուսակցական կազմակերպությունները։ Բարձրագույն ուսումնական հաստատությունների, դպրոցների, գիտահետազոտական հիմնարկությունների, ստեղծագործական կազմակերպությունների կոմունիստներն ընդգծեցին գաղափարական հիմնարկությունների աշխատողների դերը աշխատավորներին, հատկապես երիտասարդներին սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, բուրժուական գաղափարախոսության հանդեպ անհաշտ վերաբերմունքի ոգով դաստիարակելու գործում։

Հայաստանի գրողների միության կուսկազմակերպության՝ ստեղծագործական մթնոլորտում անցած հաշվետու-ընտրական ժողովը նշեց, թե հանրապետության գրողներն ինչպիսի հաջողությունների են հասել Հոկտեմբերյան հեղափոխության մեծ նշանակությունն արտացոլող երկերի ստեղծման, իրենց ստեղծագործություններով աշխատավորների կոմունիստական դաստիարակությանն աջակցելու գործում։

Ժողովներում հանգամանորեն քննարկվեցին ներկուսակցական կյանքի հարցերը։ Հաշվետու ժամանակաշրջանը բնութագրվում է կուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացմամբ, կազմակերպական աշխատանքի ուժեղացմամբ, կոմունիստների ակտիվության աճով։ Զգալիորեն բարելավվել է կուսանդամ-թեկնածուների ընդունելության գործը։ Այսպես. եթե 1966 թ. հունվար-սեպտեմբեր ամիսների ընթացքում հանրապետությունում ՍՄԿԿ շարքերն են ընդունվել 2771 հոգի, որոնց 49,6 տոկոսը բանվորներ և կոլտնտեսականներ, ապա 1967 թ. համապատասխան 9 ամսվա ժամանակամիջոցում ընդունվել են 3666 հոգի, որոնցից բանվորներն ու կոլտնտեսականները կազմել են 61,9 տոկոս։

Պետք է հիշել, որ կուսակցության մեջ մտնելը մարդու կյանքում, համոզված առաջամարտիկ դառնալու միայն սկիզբն է։ Ուստի, շատ կարևոր է, որ երիտասարդ կոմունիստն ունենա կուսակցական հանձնարարություն, մասնակցի ժողովների նախապատրաստմանն ու անցկացմանը։ Սակայն մի շարք կուսկազմակերպություններում այդ բանը մոռացության է մատնվել և դրա համար էլ կոմունիստները նորընտիր բյուրոներից, կոմիտեներից և քարտուղարներից պահանջեցին հասնել այն բանին, որ ամեն մի կոմունիստ անշեղորեն կատարի ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջները, ակտիվորեն մասնակցի կուսակցական կյանքին, օրինակելի լինի արտադրության մեջ, հասարակական կյանքում ու կենցաղում։

Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները իրավացիորեն քննադատական խոսք են ասել հանրապետական օրգանների, մինիստրությունների, գերատեսչությունների գործունեության թերությունների մասին։ Շատ կուսկազմակերպությունների ժողովներում քննադատեցին արդյունաբերական և գյուղատնտեսական շինարարության մինիստրությանը ու նրա տրեստներին՝ շինարարական աշխատանքների գրաֆիկները խախտելու, կառույցներին մե-

*քենաներ, շինանյութեր վատ մատակարարելու, շինմոնտաժային աշխատանքների որակը անտեսելու համար։*

*Տնտեսություններին անբավարար օգնություն ցույց տալու, տեխնիկայով, պահեստամասերով չապահովելու համար քննադատական խոսքեր ասվեցին նաև գյուղատնտեսության մինիստրության ու «Հայգյուղտեխնիկայի» հանրապետական միավորման հասցեին։*

*Քաղաքային տրանսպորտի աշխատանքներն անբավարար կազմակերպելու համար լուրջ քննադատվեց Երևանի քաղսովետը։*

*Հանրապետությունում տեղի ունեցած քաղաքային ու շրջանային կուսակցական կոնֆերանսներն, ի մի բերելով անցյալի կուտակած փորձը, հիմնովին քննարկեցին մեր առջև ծառացած հանգուցային հարցերը։ Բոլոր կոնֆերանսների նյութերում կարմիր թելով անցնում է կոմունիստների ցուցաբերած հոգացողությունը՝ սիստեմատիկաբար և հետևողականորեն իրագործելու տնտեսական ռեֆորմի կենսական պրոբլեմները, հնարավորին չափ արագ վերացնելու տնտեսական ճյուղերի ու ձեռնարկությունների միջև դեռևս առկա խոշոր անհամամասնությունները, խստորեն կարգավորելու ձեռնարկությունների ու հաստատությունների պլանային մատակարարման գործը, ապահովելու քաղաքային տրանսպորտի անխափան գործունեությունը։*

*Հանրապետության գյուղական շրջանների կուսակցական կոնֆերանսները հաստատակամորեն որոշել են առաջիկա տարում ավելի ու ավելի ինտենսիֆիկացնել, մասնագիտացնել ու մեքենայացնել գյուղատնտեսության հիմնական մարզերի արտադրական պրոցեսները, կապիտալ ներդրումները կատարելիս առաջնորդվել շահութաբերության սկզբունքով, լիակատար կարողությամբ օգտագործել մեքենայական պարկը, մեծագույն խնայողությամբ ծախսել ջրի ռեսուրսները և զգալիորեն իջեցնել արտադրանքի ինքնարժեքն ու բարձրացնել գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածությունը։*

*Անցած հաշվետու-ընտրական ժողովները ու կոնֆերանսները փայլուն կերպով ցուցադրեցին հանրապետության կուսկազմակերպությունների բարձր մարտունակությունը, նրանց հասունությունը, տնտեսական և կուլտուրական խնդիրները արդի պահանջների մակարդակով լուծելու ունակությունը։*

## ԿՈԼԵԿՏԻՎԸ ԵՎ ԱՆՀԱՏԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒՄԸ

*Անհատի դաստիարակության, նրա բարոյական կերպարի ձևավորման վրա վճռական ազդեցություն են գործում արտադրահարաբերությունները, մարդկանց աշխատանքային գործունեությունը։ Սոցիալիստական արտադրաեղանակը, որը վճռական դեր է խաղում նոր աշխարհայացքի ձևավորման գործում և մարդկանց հարաբերություններում ծնում է ընկերական համագործակցություն և փոխօգնություն, բարենպաստ պայմաններ է ստեղծում անհատի բարոյական դաստիարակության, նրա մոտ իսկական կոմունիստական վարվելակերպի գծեր մշակելու համար։*

*Նոր մարդու ձևավորման պրոցեսում մեծ է նաև սուբյեկտիվ գործոնի՝ կուսակցության և կառավարության ղեկավար դերը, կուսակցական կազմակերպությունների քաղաքական-կազմակերպական վիթխարի աշխատանքը,*



*որն իրականացվում է աշխատավորական կոլեկտիվներին ամենօրյա ղեկավարություն ցույց տալու միջոցով։*

*Սոցիալիստական հասարակարգում նոր մարդու ձևավորումը մեծապես պայմանավորված է գաղափարական ներգործության մեթոդների ու միջոցների հետագա զարգացմամբ և կատարելագործմամբ։ Այդ միտքն ամբողջ սրությամբ ընդգծեց ՍՄԿԿ XXIII համագումարը։ Կուսակցությունը դատապարտում է ֆորմալիզմն ու սխեմատիզմը դաստիարակչական աշխատանքում։ Դաստիարակչական աշխատանքն առավել նպատակասլաց դարձնելու համար կուսակցությունը պահանջում է խստորեն հաշվի առնել մարդկանց կրթական և գիտական մակարդակը, ազգային և տարիքային առանձնահատկությունները։*

*Ելնելով դրանից, Երևանի ժամացույցի գործարանի կուսակցական կազմակերպությունը, դիրեկցիան, պրոպագանդիստները, ագիտատորները, գաղափարական բնագավառի բոլոր աշխատողներն իրենց պրակտիկ գործունեության մեջ կարևոր տեղ են տալիս նոր մարդու դաստիարակության, նրա աշխարհայացքի ձևավորման, կոմունիստական փոխհարաբերությունների զարգացման հարցերին։ Կուսբյուրոյի նիստերի, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական ժողովների, արտադրական խորհրդակցությունների, զանազան դասախոսությունների և զրույցների անցկացումը հետապնդում է մի նպատակ. հաջողությամբ լուծել ձեռնարկության առջև ծառացած խնդիրները և այդպիսով նյութական հիմքեր ստեղծել երջանիկ կյանքի համար։*

*Այդ վսեմ նպատակի հաջող կատարման գործում առաջնակարգ դեր է պատկանում աշխատանքային կոլեկտիվին։ Մեզ մոտ կոմունիստական աշխատանքի առաջին կոլեկտիվը ստեղծվել է դեռևս 1958 թվականին։ Մեխանիկական արտադրամասում Ալիսա Այվազյանի ղեկավարած բրիգադը մշակել և իրականացրել էր այնպիսի պարտավորություններ, որոնք բնորոշում էին կոմունիստաբար աշխատող և ապրող մարդկանց նոր հարաբերությունները, աշխատանքի ու կենցաղի հարցերին նրանց կոմունիստական վերաբերմունքը։ Այդ բրիգադն իր գոյության առաջին իսկ օրվանից ոչ միայն կատարում ու գերակատարում էստանձնած պարտավորությունները, այլև իր անդամներին սովորեցնում է տիրապետել մի քանի մասնագիտությունների։ Բրիգադի անդամները սովորեցին ու ավարտեցին միջնակարգ դպրոցը կամ ստացան միջնակարգ-մասնագիտական ու բարձրագույն կրթություն։*

*Այդ բրիգադի օրինակը եզակի չէ։ Ներկայումս կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչմանը արժանացած արտադրամասերի ու տեղամասերի թիվը գործարանում հասել է 9-ի։ Այդ բարձր կոչումը պատվով կրում են տասնյակ բրիգադներ, հարյուրավոր անհատներ։ Միայն 1967 թվականին կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչում է շնորհվել 348 հոգու։ Գործարանի ամբողջ կոլեկտիվն այժմ պայքարում է, որպեսզի ձեռնարկության հիմնադրման 25-ամյա հոբելյանը, որը լրանում է 1968 թ. նոյեմբերին, դիմավորի կոմունիստականի կոչմանը արժանացած։*

*Գործարանի մարդիկ ակնածանքով, հպարտությամբ են խոսում կոմունիստական աշխատանքի շարժման առաջնեկների, արտադրության վետերանների և այն երիտասարդ բանվորների մասին, ովքեր գործարանը համա-*

*րում են իրենց հարազատ տունը, իսկ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի բախտը՝ իրենց սեփականը։*

*Կուսկազմակերպությունը մարդկանց հետ տարվող դաստիարակչական աշխատանքում լուրջ տեղ է հատկացնում գործարանի ավանդությունների պրոպագանդմանը։ Երևանի ժամացույցի գործարանի կոլեկտիվի համբավը վաղուց է դուրս եկել մեր հանրապետության և Սովետական Միության սահմաններից։ Այժմ երևանյան զարթուցիչները լավ անուն են վաստակել աշխարհի տարբեր հորիզոնականների ավելի քան 50 երկրներում, արժանացել դիպլոմների և զանազան պարգևների։ Գործարանի ամբողջ արտադրանքի 25 տոկոսը ներկայումս առաքվում է արտասահման, իսկ դա և՛ մեծ պատիվ ու հպարտություն է, և՛ պատասխանատվություն։*

*Մարդկանց դաստիարակման կարևոր միջոց են դասախոսական պրոպագանդան, քաղաքական թեմաներով զեկուցումներն ու զրույցները։ «Գիտելիք» ընկերության գործարանային դասախոսական խմբի անդամները և քաղաքի լավագույն դասախոսներն ամեն ամիս ձեռնարկության արտադրամասերում հանդես են գալիս զեկուցումներով ու զրույցներով։ Դրանք հաճախ լսվում են մեծ հետաքրքրությամբ, քանի որ սերտորեն կապվում են գործարանի կյանքի հետ, հագեցած են կոնկրետ փաստերով և կենդանի օրինակներով։ Այսպես, անցած մեկ տարում գործարանում կարդացվել է 120 դասախոսություն, որոնցից 60-ը գործարանի կուսկազմակերպության պրոպագանդիստների ուժերով։ Հատկապես մեծ ուշադրություն է նվիրվել ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների պրոպագանդմանը և մեծ Հոկտեմբերի 50-ամյակին նվիրված թեմաներին։ Դասախոսություններ են կարդացվել միջազգային դրության և ռազմա-հայրենասիրական թեմաների, սովետական երիտասարդի բարոյական կերպարի, սիրո և ընտանիքի, կրոնի հետադիմական էության, աշխատանքի լենինյան ոճի, գրականության և արվեստի տարբեր հարցերի, ինչպես նաև գործարանի առջև ծառացած նոր խնդիրների շուրջ։ Դասախոսությունների թեմատիկան կազմելիս միշտ հաշվի են առնվում արտադրամասերի կոլեկտիվների ցանկությունները։ Առանձնապես բարեխիղճ են աշխատում գործարանի դասախոսական խմբի անդամներ՝ Բ. Վարդանյանը, Ռ. Արազյանը, Գ. Բաբայանը և ուրիշներ։*

*Ներգործուն և նպատակասլաց է դառնում նաև քաղաքական ագիտացիան։ Կուսբյուրոյին կից գործում է 71 հոգուց բաղկացած ագիտկոլեկտիվ։ Բացի դրանից, մի քանի ամիս առաջ ստեղծվել է քաղաքական ինֆորմատորների կոլեկտիվ, որի մեջ մտնում են 15 մարդ։ Գործարանի լավագույն ագիտատորներից են՝ Ռ. Բադալյանը, Հ. Հովհաննիսյանը, Ժ. Մկրտչյանը, Պ. Պողոսյանը և շատ ուրիշներ, որոնք ունեն անհրաժեշտ կենսափորձ ու հարուստ գիտելիքներ, կարողանում են իրենց ջերմ խոսքով և անձնական օրինակով դրականորեն ներգործել մարդկանց վրա։*

*Ոչ միայն կուսկազմակերպության, այլև ամբողջ կոլեկտիվի գաղափարական կյանքում նշանակալից դեր են խաղում կուսակցական և կոմերիտական քաղուսուցման խմբակները, սեմինարները, որոնց թիվը գործարանում հասնում է 25-ի։ Քաղուսուցման ամբողջ ցանցում ընդգրկված են շուրջ 500 կոմունիստներ, կոմերիտականներ և անկուսակցականներ։*

*Այս ուսումնական տարում մեզ մոտ նորն այն էր, որ ստեղծեցինք երիտասարդ կոմունիստի ուսուցման դպրոց։ Երիտասարդ կոմունիստներն ու կոմերիտականները այդ դպրոցում ուսումնասիրում են ոչ միայն ՍՍՀՄ ներ-*



*քին և միջազգային դրության, այլև կուսակցական շինարարության հարցերը, ձեռք բերում տնտեսական գիտելիքներ և այլն։ Երիտասարդ կոմունիստի ուսուցման դպրոցի ստեղծումը լավ արձագանք գտավ ոչ միայն մեզ մոտ, այլև գործարանից դուրս։*

*Կոլեկտիվի, առանձնապես երիտասարդության (որը մեծ տոկոս է կազմում գործարանում) դաստիարակության գործում կարևոր դեր են խաղում պարբերաբար կազմակերպվող երիտասարդական երեկոները, հանդիպումները արտադրության վետերանների և ենթաշեֆ զորամասի մարտիկների հետ, գեղարվեստական ինքնագործունեության խմբակների ելույթները և այլն։ Այդ միջոցառումների ընթացքում առավել լավ են դրսևորվում մարդկանց ունակությունները, բնավորությունը, հակումները, տրամադրությունները, նրանք ավելի են բարեկամանում, համախմբվում և միաձուլվում կոլեկտիվում։*

*Հետաքրքրական էր, օրինակ, ամռանը կազմակերպված* Աշխատի՛ր, ստեղծագործի՛ր, լենինյան երիտասարդություն *թեմատիկ երեկոն։ Նրա մասնակիցները պատմեցին իրենց աշխատանքի, ցանկությունների մասին։ Այդ երեկոյում հանդես եկան նաև աշխատանքի վետերանները։ Գործարանի դիրեկտոր Ա. Կարապետյանը պատմեց ձեռնարկության առջև կանգնած հեռանկարային խնդիրների մասին։ Կոմերիտականները պարտավորվեցին՝ ի պատիվ մեծ Հոկտեմբերի 50-ամյակի, հասարակական կարգով հավաքել 2000 զարթուցիչ։ Նրանք պատվով կատարեցին իրենց խոստումը, նախատոնական ամիսներին թողարկելով զգալի քանակությամբ հոբելյանական հուշանվեր-ժամացույցներ։*

*Երիտասարդությանը ռազմա-հայրենասիրական ոգով դաստիարակելու գործում խոշոր դեր են խաղում զորակոչիկներին հանդիսավորությամբ սովետական բանակ ճանապարհելը, գործարանից բանակ մեկնածների հետ նամակագրական կապերի պահպանումը, ենթաշեֆ զորամասի մարտիկների հետ հանդիպումները, որոնք անցնում են ջերմ մթնոլորտում և ուժեղացնում կոլեկտիվի կապը սովետական զինված ուժերի ռազմիկների հետ։*

*Երիտասարդության գեղարվեստական և սպորտային հակումներին բավարարելը, նրանց գեղարվեստական ճաշակի զարգացումը նույնպես կուսկազմակերպության հոգատարության առարկան է։ Այդ նպատակով նրանց տրամադրված են գործարանի ակումբը, նորակառույց սպորտային հրապարակը, իսկ երբեմն էլ նրանց տրվում են տրանսպորտի և նյութական միջոցներ։ Մեր ինքնագործ պարի անսամբլը 1967 թվականին հյուրախաղերով հանդես եկավ Բուլղարիայի քաղաքներում ու գյուղերում, իսկ սպորտային սեկցիաներն ու մարզիկները բազմիցս մասնակցել և արժանի տեղեր են գրավել շրջանային ու քաղաքային մրցումներում։*

*Բանվորների և բանվորուհիների կուլտուրական հանգստի, նրանց բազմակողմանի զարգացման ավելի լայն պայմաններ են ստեղծվել հնգօրյա աշխատանքային շաբաթին անցնելու կապակցությամբ։ Ներկայումս մենք խորհում, կոնկրետ միջոցառումներ ենք մշակում, որպեսզի տարվա բոլոր եղանակներին կոլեկտիվի անդամներն արդյունավետ անցկացնեն իրենց ազատ ժամանակը։*

*Կոլեկտիվի գաղափարական դաստիարակության, նրա ուժերը մոբիլիզացնելու, մարդկանց մոտ թերությունների նկատմամբ անհանդուրժողականություն դաստիարակելու գործում կարևոր դեր է խաղում գործարանային*

բազմատիրաժ «Ժամագործ» թերթը։ Նրա էջերում աշխատանքի առաջավոր մեթոդների, նորարարների, մրցության մեջ հաղթող լավագույն արտադրամասերի և տեղամասերի կոլեկտիվների, ինչպես նաև արտադրության առանձին առաջավորների փորձը լուսաբանելու հետ մեկտեղ, բացահայտվում և քննադատության են ենթարկվում թերությունները։ Նույն նպատակին են ծառայում նաև արտադրամասային պատի թերթերը, Կոմերիտական լուսարձակը։

Այս ամենը ցույց են տալիս, որ զգալիորեն բարելավվել է բանվոր-ծառայողների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքը։ Սակայն պետք է խոստովանել, որ դեռևս լիովին չեն վերացված աշխատանքային կարգապահության խախտման, ավելին, առանձին մարդկանց կողմից խուլիգանական արարքների դրսևորման դեպքերը։ Այժմ հարկավոր է ուժեղացնել ոչ միայն անհատական աշխատանքը երիտասարդության, առանձնապես աշխատանքի նոր ընդունվածների շրջանում, այլև նրանց ներգրավել հասարակական ակտիվ գործունեության ոլորտը։

Կուսկազմակերպության խորհրդով արտադրության վետերանները, տարեց կոմունիստները ստանձնել են իրենց տեղամասի երիտասարդների, մասնավորապես նորեկների շեֆությունը, իսկ գործարանի ԼԿԵՄ կոմիտեում ստեղծվել է նորեկների շրջանում տարվող աշխատանքի հանձնաժողով։ Այժմ մենք ձգտում ենք, որպեսզի յուրաքանչյուր երիտասարդ անպայման ունենա իր հասարակական հանձնարարությունը։ Փորձը ցույց է տալիս, որ դա նրանց մոտ զարգացնում է հասարակական պարտքի գիտակցում, բարձրացնում պատասխանատվության զգացումը կոլեկտիվի հանդեպ, դաստիարակում է նույնիսկ նրանց, ովքեր առաջին հայացքից թվում են «անուղղելի»։

Այո, մեզ մոտ էլ պատահում են դեպքեր, երբ այս կամ այն անկարգապահ մարդուն համարում են անհուսալի, ձեռքերը թափահարում և մի կողմ քաշվում։ Բայց ահա աշխատիր այդպիսի մարդկանց հետ, թափանցիր նրանց հոգու խորքը, գտիր սրտի բանալին, և հաջողությունը ձեռք է բերվում։ Այսպես կոչված կարգազանցները, չենթարկվողները, կոլեկտիվի կարծիքի հետ հաշվի չնստողները ի վերջո կվերափոխվեն, եթե կոլեկտիվը նրանց շրջապատի հոգատարությամբ, ուշադրությամբ։

ՄԻՆԱՍՅԱՆ Է. Թ.
**Ժամացույցի գործարանի կուսբյուրոյի**
քարտուղար
ՄԱԹՈՍՅԱՆ Ջ. Վ.
«Ժամագործ» թերթի խմբագիր

## ԿՈՒՍԱՆԴԱՄԱՎՃԱՐՆԵՐԻ ԳԱՆՁՄԱՆ ՆՈՐ ԿԱՐԳԸ

ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների անդամավճարների մասին նոր հրահանգի համաձայն, կուսակցության յուրաքանչյուր անդամթեկնածու ամեն ամիս անձամբ պետք է կուսակցական անդամավճար մուծի այն կազմակերպությունում, որտեղ ինքը հաշվառման մեջ է գտնվում։ Աշխատավարձի ամսական կայուն դրույքներ ունեցող կոմունիստները, որպես կանոն, պետք է անդամավճար մուծեն նույն ամսում կամ հաջորդ ամսվա սկզբին։ Իսկ այն կոմունիստները, որոնց աշխատավարձը հաշվարկվում է աշխատանքի



վարձատրության գործարքային կամ պրեմիալ պրոգրեսիվ վարձատրումով, անդամավճար մուծում են, երբ հայտնի է դառնում նրանց ամսական վաստակի վերջնական գումարը, այսինքն՝ միայն հաջորդ ամսվա սկզբին։ Չի թույլատրվում այս կամ այն ամսվա համար կուսանդամավճար գանձել անցած ամիսների ունեցած վաստակի չափի հաշվով։ Անդամավճարների պարտքը սահմանվում է ընթացիկ ամսում՝ անցած ամսվա համար։

Անդամավճարների ընդունումը կատարում է անձամբ սկզբնական կուսակցական կազմակերպության քարտուղարը կամ նրա տեղակալը, իսկ 50-ից ավելի կոմունիստներ ունեցող կուսկազմակերպություններում քաղկոմ-շրջկոմների թույլտվությամբ կուսանդամավճարներ կարող են ընդունել նաև արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարները։ Ընդ որում կուսակցական կազմակերպություններից ժամանակավորապես մեկնած կոմունիստները անդամավճար են մուծում այն սկզբնական կուսկազմակերպությունում, որտեղ իրենք ժամանակավոր հաշվառման մեջ են։

Կուսակցական կազմակերպության քարտուղարներն իրավունք չունեն անդամավճար ընդունելու այն կոմունիստներից, որոնք տվյալ կուսկազմակերպությունում մշտական կամ ժամանակավոր հաշվառման մեջ չեն գտնվում։

Անդամավճարների մուծման տեղեկագիրը բացվում է յուրաքանչյուր ամսվա առաջին օրը և փակվում է ամսվա վերջին օրը։ Հաշվետու ամիսն սկսվելուց առաջ անդամավճարների մուծման տեղեկագրում այբբենական կարգով գրանցվում են տվյալ կուսկազմակերպությունում հաշվառման մեջ գտնվող ՍՄԿԿ բոլոր անդամներն ու անդամության թեկնածուները, համապատասխան սյունակում նշելով վերջին այն ամիսը, որի համար նրանցից յուրաքանչյուրը անդամավճար է մուծել, իսկ հաջորդ սյունյակները լրացվում են անդամավճարները մուծելիս։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վերջերս որոշ փոփոխություններ է մտցրել կուսանդամավճարների գանձման արդեն գործող հրահանգի մեջ։ Համաձայն այդ փոփոխությունների, այսուհետև կուսանդամավճարներն ընդունելիս պետք է հաշվի առնել ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների ինչպես հիմնական աշխատավարձը, այնպես էլ նրանց բոլոր տեսակի լրացուցիչ վաստակները, ինչպես, օրինակ, համատեղության կարգով աշխատանքը, արտաժամյա և գործավարձային աշխատանքը, գրական, գեղանկարչության, քանդակագործության արտադրանքի հոնորարները, դասախոսական և մանկավարժական աշխատանքները։

Անդամավճարները պետք է գանձել նաև այն դրամական գումարներից, որոնք կուսակցության անդամը կամ թեկնածուն ստացել է որպես հոնորար՝ թերթում և ամսագրում հրապարակված հոդվածների, ռադիոյով, հեռուստատեսությամբ ունեցած ելույթների համար։ Անդամավճարներ ընդունելիս պետք է հաշվի առնել աշխատավարձի ամեն տեսակի հավելումները՝ երկարամյա ծառայության համար, զինվորական կոչման, գիտական աստիճանի, արտասահմանյան լեզուներ իմանալու և այլ վարձատրումների համար։

Անդամավճարներ ընդունելիս միաժամանակ պետք է հաշվի առնել ՍՄԿԿ անդամ թեկնածուների կողմից ստացած բոլոր պարգևատրումները և մյուս դրամական վարձատրությունները նրանց աշխատանքային գործունեության, գիտական հայտնագործությունների, գյուտարարության, ռացիոնալիզատորական առաջարկների համար, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ստեղծման ու արմատավորման համար, ինչպես նաև մյուս բոլոր պարգևատրումները և

վարձատրությունները, որոնք տրվում են կառավարության որոշումների կամ առանձին գերատեսչական հրահանգների ու դրույթների հիման վրա, անկախ նրանից, թե ինչ միջոցներից, ֆոնդերից և աղբյուրներից են դրանք վճարվում։

Ստացված աշխատավարձի հավելումների գումարը, լրացուցիչ վաստակները, պարգևատրումները և դրամական վարձատրումների մյուս տեսակները պետք է ավելացնել կոմունիստների հիմնական աշխատավարձին և ամբողջությամբ հաշվի առնել կուսակցական անդամավճարներն ընդունելիս, այն էլ այն ամսում, որում փաստացի այդ գումարները ստացված են։

Կուսակցական անդամավճարներ ընդունելիս չպետք է հաշվարկել չօգտագործված արձակուրդի համար ստացած դրամական փոխհատուցումը, գործուղման և օրապահիկի գումարները, գործուղադրամի փոխարեն աշխատավարձին ավելացվող հավելումները։ Անդամավճարներ չպետք է գանձել այն դրամական գումարներից, որ կոմունիստները ստանում են որպես միանվագ պարգևատրումներ կոնկուրսներին, սպորտային միջոցառումներին մասնակցելու համար։ Կոմունիստների կողմից անդամավճարներ մուծելիս չպետք է հաշվի առնել նաև այն միանվագ պարգևատրումներն ու վարձատրումները, որոնք բանվորներին ու ինժեներա-տեխնիկական աշխատողներին տրվում են հեղափոխության տոնակատարության օրերին և հոբելյանական տարեթվերի կապակցությամբ։ Անդամավճարը չպետք է գանձել նաև միանվագ նպաստներից, աշխատանքից ազատելիս արձակման նպաստից, աշխատողներին տեղափոխելիս տեղափոխության դրամից, մյուս դրամական փոխհատուցումներից, որոնք տրվել են բնամթերային վճարումների և ծառայությունների փոխարեն, պետական փոխառությունների և վիճակախաղի շահումներից։

Անդամավճարներ ընդունելիս չպետք է հաշվի առնել անչափահաս երեխաների և կերակրողին կորցնելու դեպքի համար տրվող կենսաթոշակները, բազմազավակ մայրերին վճարվելիք նպաստները, ինչպես և բանվոր-ծառայողներին պատճառած վնասի հատուցման համար վճարվող նպաստները։

Ժամանակավորապես անաշխատունակ կոմունիստները, որոնք սոցիալական կամ կոոպերատիվ ապահովության նպաստներ են ստանում, հիվանդության օրերի համար անդամավճար մուծում են այն գումարից, որ նրանք ստացել են հիվանդության թերթիկով։

Թոշակառու և սովորող կոմունիստները անդամավճար են մուծում ստացած թոշակից, իսկ այն թոշակառուները, որոնք այլ լրացուցիչ վաստակ ունեն, անդամավճարներ են մուծում թոշակի, աշխատավարձի և այլ լրացուցիչ վաստակների ընդհանուր գումարից։ Թոշակ չստացող սովորողները և տնային տնտեսուհիները անդամավճար են մուծում ամսական 2 կոպեկի չափով։

Աշխատանքի երաշխավորված վարձատրման կարգ սահմանելու հետ միասին կոլտնտեսություններում վերանում է գյուղատնտեսական արտելների կոմունիստներից գանձվող անդամավճարների գումարի բարդ հաշվարկում կատարելու անհրաժեշտությունը։

Այս կապակցությամբ էլ համապատասխան փոփոխություններ են մտցրվել գործող հրահանգի 3-րդ պարագրաֆում, որոնց հիման վրա էլ կոլտնտեսական կոմունիստները անդամավճարներ պետք է մուծեն ընթացիկ ամսվա փաստացի աշխատավարձից, այսինքն ըստ էության սահմանվում է այն նույն կարգը, որ գոյություն ունի արդյունաբերության մեջ աշխատող կոմունիստների համար, ըստ որում շարքային կոլտնտեսական կոմունիստները կուսակցական անդամավճարներ են մուծում ընթացիկ ամսում փաստացի ստացած (դրամական և բնամթերային) վաստակի գումարից, իսկ ղեկավար աշխատողները, մասնագետները, կոլտնտեսության վարչության և սպասարկող անձնակազմն անդամավճարը մուծում են իրենց պաշտոնական դրույքների համաձայն։

Կոլտնտեսություններում աշխատող կոմունիստներից անդամավճար ընդունելիս պետք է հաշվի առնել ինչպես լրացուցիչ վարձատրությունը, այնպես էլ դրամային և բնամթերային վճարումները։

Լրացուցիչ վարձատրության և պարգևատրության գումարը պետք է ավելացնել կոլտնտեսական կոմունիստների ամսական վաստակին կամ կոլտնտեսության մյուս աշխատողների պաշտոնական դրույքներին և անդամավճարներ մուծելիս հաշվի առնել այն ամսում, որում նրանք ստացվել են։

Ամսական վաստակին պետք է ավելացնել նաև այն լրացուցիչ վարձատրությունները, որոնք վճարվում են գյուղատնտեսական տարին ամփոփելիս, կոլտնտեսականների հետ դրամային և բնամթերային վերջնական հաշվարկներ կատարելիս, ըստ որում, բոլոր բնամթերային վարձատրումների տեսակները վեր են ածվում դրամի՝ պետական գնման գներով։

Կուսկազմակերպության քարտուղարներն անդամավճար գանձելիս պետք է ընդունած գումարը գրանցեն կոմունիստի կուսակցական տոմսում կամ թեկնածուական քարտում, ինչպես նաև տեղեկագրում (ձև № 1)։ Անդամավճարների մուծման տեղեկագրում պարտք է նշվում այն կոմունիստների անվան դիմաց, որոնք ընթացիկ հաշվետու ամսում անդամավճար չեն մուծել անցած ամիսների համար, օրինակ հունիսին՝ մայիսի համար մեկ ամիս, ապրիլի և մայիսի համար երկու ամիս և այլն։

Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները մուտք եղած անդամավճարները պետք է լրիվ հանձնեն խնայդրամարկղը, անցած հաշվետու ամսվա ընթացքում ստացված անդամավճարների մասին կազմեն ընդհանուր հաշվետվություն և այն ներկայացնեն կուսակցական շրջկոմին, քաղկոմին ոչ ուշ քան հաջորդ ամսվա 10-ը, իսկ վերջիններս եռամսյակը մեկ անգամ հաշվետվություն պետք է ներկայացնեն կենտրոնական կոմիտե՝ հաշվետու եռամսյակին հաջորդող ամսվա 15-ից ոչ ուշ։

Պահանջվում է, որպեսզի անդամավճարների ստացման արդյունքները սիստեմատիկաբար քննարկվեն և հաստատվեն սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, նրանց կուսկոմների և բյուրոյի նիստերում, ինչպես նաև կուսակցության շրջկոմների և քաղկոմների բյուրոյի նիստերում։

Կուսակցության քաղկոմների և շրջկոմների, նրանց վերստուգիչ հանձնաժողովների անդամները, ապարատի աշխատողները լինելով տեղերում պետք է օգնություն ցույց տան սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին, որպեսզի նրանք է՛լ ավելի խոր իմանան հրահանգի նոր դրույթները կուսակցական անդամավճարների ընդունման հաշվառման կարգի և հաշվետվություն կազմելու վերաբերյալ։

ԶԱԼԻՆՅԱՆ Ա. Գ.



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ.

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության գիտական մշակման հարցը վաղուց է զբաղեցրել հայ հասարակական մտքի հետազոտողներին՝ պատմաբաններին, փիլիսոփաներին, տնտեսագետներին և հայ հասարակական-քաղաքական գործիչներին։ Արդեն 1920-ական թվականներին փորձ է արվում Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության մշակման ուղղությամբ, այն դիտվում է որպես սովետահայ պատմագրության անբաժան, բայց և ինքնուրույն մասը։

1922 թվականի հունվարին, Հայաստանի կոմկուսի I համագումարի նախօրյակին, Ալ. Մյասնիկյանը (Ալ. Մարտունի) և Ս. Սրապիոնյանը (Ս. Լուկաշին) հոդվածներ են հրապարակում Հայաստանի հեղափոխական շարժումների և կոմունիստական կազմակերպությունների պատմության, մասնավորապես Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների 1920 թվականի հունվարյան կոնֆերանսի մասին։

Հայաստանի կոմունիստական կուսակցության նշանակությունը հոդվածում Ալ. Մյասնիկյանը բարձր գնահատելով 1920 թվականի հունվարյան կոնֆերանսը, գրել է, որ 1920 թվականի մայիսյան ապստամբությունը և նույն թվականի նոյեմբերին Հայաստանում սովետական իշխանության հաստատումը նախանշվել էր կոնֆերանսի որոշումներում [1]։

Մյասնիկյանը, տալով հունվարյան կոնֆերանսի քաղաքական գնահատականը, միաժամանակ ցույց է տվել, որ Հայաստանում սովետական իշխանության հաղթանակից հետո կոմունիստական կուսակցությունը գլխավորել է աշխատավոր զանգվածների պայքարը, նրանց հաղթանակների տարբեր քաղաքացիական կռիվների միջով և բոլոր պայմանները ստեղծել երկրի սոցիալիստական վերածննդի համար։

Մեր կուսակցության առաջին համագումարի նարցի շուրջը խորագրով հոդվածում Ս. Լուկաշինը, համառոտ ակնարկ ձգելով անցած ուղու վրա, մերկացնում է դաշնակցության ավանտյուրիստական քաղաքականությունը, պարզաբանում Անդրկովկասի աշխատավոր զանգվածների ինտերնացիոնալ համախմբվածության անհրաժեշտությունը։ Նա գտնում է, որ բանվորների և գյուղացիների (մասնավորապես Անդրկովկասի սովետական հանրապետություններում) ինտերնացիոնալ համերաշխությունը սովետական իշխանության ամրապնդման, սոցիալիզմի կառուցման գործում նորանոր հաղթանակների նվաճման գրավականն է [2]։

Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների և հեղափոխական շարժումների պատմության հարցերը պատշաճ քննարկման արժանացան ՀԿ(բ)Կ II և հետագա համագումարներում։ 1923 թվականի փետրվարին ՀԿ(բ)Կ II համագումարում լսվեց Մռավյանի զեկուցումը ՌԿ(բ)Կ պատմության մասին, որոշվեց հետազոտել Հայաստանի կոմկուսի պատմությունը և առանձին գրքով հրատարակել [3]։ Համագումարում որոշվեց նաև ստեղծել ՀԿ(բ)Կ Կենտկոմին կից կուսակցության պատմության ինստիտուտ (կուսպատ), որը պետք է հավաքեր Հայաստանի հեղափոխական շարժումների և կոմունիստական կազմակերպությունների պատմության վերաբերյալ վավերագրերը, մշակեր Հայաստանի կոմկուսի պատմությունը։

Շարունակելով նախահեղափոխական բոլշևիկյան հայ պարբերական մամուլի և մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների հրատարակության ասպարեզում մինչ այդ ստեղծված լավագույն տրադիցիաները, ՀԿ(բ)Կ Կենտկոմին կից կուսպատմության ինստիտուտում թարգմանվում և հրատարակվում են Մարքսի, Էնգելսի, Լենինի և կոմունիստական կուսակցության ու սովետական պետության ականավոր գործիչների շատ աշխատություններ։ Շոշափելի աշխատանք է կատարվում պատմա-հեղափոխական փաստաթղթերի, բոլշևիկյան պարբերականների հավաքման, Հայաստանի հեղափոխական շարժումների և բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի հետազոտման համար, հիմք է դրվում լավագույն լենինյաններից մեկի՝ Սուրեն Սպանդարյանի գրական ժառանգության հավաքման և այն հայ աշխատավորական հոծ զանգվածներին ծանոթացնելու շնորհակալ գործին։

1923 թվականի մարտին ՌԿ(բ)Կ Անդրկովկասյան երկրային կոմիտեն հրատարակում է Սոցիալիզմի համար պայքարի 25 տարին կուսակցության պատմության քրեստոմատիան, որտեղ բազմաթիվ այլ նյութերի հետ միասին զետեղված է Ս. Խանոյանի Կոմունիստները Հայաստանում: Էջեր մեր գործունեության պատմությունից ուշագրավ հոդվածը [4]։ Այստեղ հեղինակը գերազանցապես շոշափում է 1919—1920 թվականներին Հայաստանում, մասնավորապես, Ալեքսանդրապոլում (Լենինական) կոմունիստական կազմակերպությունների ծավալած աշխատանքը, դրվատում մայիսյան ապստամբության առանձին ակտիվ մասնակիցների ծառայությունները։ Նույն թվականին «Խոր-

---

[1] Տե՛ս Ալ. Մյասնիկյան, Հայաստանի կոմունիստական կուսակցության նշանակությունը, Известия ЦК КП Армении (большевиков), № 1, 25 января, 1922, Эривань. Նույնը տե՛ս Ալեքսանդր Մյասնիկյան, Ընտիր երկեր, Երևան, 1957, էջ 417—420։

[2] Տե՛ս Лукашин. К вопросу съезда нашей партии. Известия ЦК КП Армении (большевиков), № 1, 25 января, 1922, Эривань.

[3] Տե՛ս ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, գ. 1ա, 1923 թ.։

[4] Տե՛ս С. Ханоян, Коммунисты в Армении. (Страницы из истории нашей деятельности). «25 лет борьбы за социализм. Хрестоматия по истории РКП(б)», Тифлис, 1923.

Մի շարք հեղինակների աշխատություններում լուսաբանվում են Վ. Ի. Լենինի գործունեությունը, առանձնապես Իսկրի աշխատանքը երկրամասի կուսակցական կազմակերպությունների ստեղծման ու ամրապնդման, հայ ժողովրդի ազատագրման, Հայաստանում սովետական կարգերի հաստատման և սոցիալիզմի հիմքերի կառուցման գործում[17]: Ա. Ն. Մնացականյանն իր Վ. Ի. Լենինը և հայ ժողովրդի ազատագրական պայքարը, Կոմունիստական պարտիան հայ ժողովրդի ազատարարն է և այլ արժեքավոր հետազոտություններում հանգամանորեն լուսաբանել է կոմունիստական կուսակցության ստեղծող և առաջնորդ Վ. Ի. Լենինի դերը հայ ժողովրդի պատմական բախտի, նրա ազատագրական պայքարի կազմակերպման և գլխավորման գործում:

Վերջին տասնամյակում հրապարակված վավերագրերի և նյութերի ժողովածուները գիտական լայն շրջանառության մեջ դրեցին բանվորական հեղափոխական ու ագրարային շարժումների և կոմունիստական կազմակերպությունների պատմությունը վեր հանող նոր, արժեքավոր շատ փաստաթղթեր: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 40-ամյակի առթիվ Հայկական ՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի, ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի և հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին կից արխիվային վարչության հրապարակած փաստաթղթերի և նյութերի ժողովածուները, չնայած նրանցում տեղ գտած որոշ վրիպումներին, աղբյուրագիտական հարուստ նյութ են պարունակում պատմա-հեղափոխական գրականության համար[18]: 1960 թվականին ՄԼԻ-ի հայկական ֆիլիալը առանձին ժողովածուով լույս ընծայեց ՌՍԴԲԿ Կովկասյան միության, ՌՍԴԲԿ Թիֆլիսի, Բաքվի, Բաթումիի, Ալեքսանդրապոլի, Երևանի, Բորչալուի, Կարսի, Սարիղամիշի, Ելիզավետպոլի և այլ կոմիտեների, ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի, Հայաստանի տերիտորիայի վրա իր ժամանակին եղած կայազորների բոլշևիկյան կոմիտեների 1902—1921 թվականներին հրատարակած հեղափոխական կոչերն ու թռուցիկները[19]:

Հայաստանի կոմկուսի պատմության շատ հարցեր իրենց հստակ ձևակերպումը ստացան Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 40-ամյակին նվիրված թեզիսներում[20]:

17 Հ. Խասհակյան, Լենինյան «Իսկրան» և ռևոլյուցիոն շարժման վերելքը Անդրկովկասում, Երևան, 1963 թ., К. Мамиконян, В. И. Ленин и большевистские организации Закавказья. Ереван, 1961. Վ. Պարսամյան, Վ. Ի. Լենինը և անդրկովկասյան ֆեդերացիան, Երևան, 1962, Գ. Ղարիբջանյան, Վ. Ի. Լենինը և Անդրկովկասի ժողովուրդների ազատագրումը, 1960, Խ. Բարսեղյան, Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների պատմությունից, Երևան, 1960, Նույնի Վ. Ի. Լենինը և Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ձևավորումը, Երևան, 1963, Բ. Լալաբեկյան, Վ. Ի. Լենինը և սովետական կարգերի հաստատումն ու ամրապնդումը Անդրկովկասում, Երևան, 1961, Ա. Ն. Մնացականյան, Վ. Ի. Լենինը և հայ ժողովրդի ազատագրական պայքարը, Երևան, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, 1963, Նույնի Կոմունիստական պարտիան հայ ժողովրդի ազատարարն է, Երևան, 1964:

18 Великая Октябрьская социалистическая революция и победа Советской власти в Армении. Сборник документов, Айпетрат, 1957, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում, փաստաթղթերի ժողովածու, Երևան, 1960:

19 Ռևոլյուցիոն կոչեր և թռուցիկներ, 1902—1921, Երևան, 1960:

20 Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակը (1920—1960) թեզիսներ, Երևան, 1960:



Հայաստանում կոմունիստական շարժման զարգացման պատմության ուսումնասիրության և գիտական մշակման գործում նշանավոր իրադարձություն էր «Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծերի» հրատարակությունը, մի գիրք, որը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի որոշմամբ ստեղծել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմին կից կուսպատմության ինստիտուտը՝ ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը, հեղինակային կոլեկտիվի հետ միասին:

Դեռևս 1958 թվականի փետրվարին հրատարակված «Հայաստանի կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ում առաջին անգամ սիստեմատիկ ձևով շարադրված էր Հայաստանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների առաջացման պատմությունը XIX դարի վերջերից սկսած, այնուհետև՝ բոլշևիկյան կազմակերպությունների պատմությունը նրանց ստեղծումից մինչև 1920 թվականը և ապա Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմությունը՝ 1920 թվականից՝ նրա ձևավորումից, մինչև 1957 թվականի վերջերը[21]: «Ուրվագծեր»-ում Հայաստանի կոմկուսի պատմությունը շարադրված էր ՍՄԿԿ պատմության հետ սերտորեն շաղկապված, ցույց էր տրված Հայաստանի կուսակցական կազմակերպությունների գործունեության անխզելի կապը սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և սոցիալիզմի կառուցման համար ՍՄԿԿ-ի մղած ընդհանուր պայքարի հետ: Ինքնին հասկանալի է, որ Ուրվագծերի ստեղծումը նոր քայլ էր Հայաստանի կոմկուսի պատմության մշակման ճանապարհին: ՀԿԿ Կենտկոմը, հաշվի առնելով Ուրվագծերի շուրջը ծավալված քննադատությունը[22], ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի առջև խնդիր դրեց՝ շարունակել աշխատանքը Հայաստանի կոմկուսի գիտական պատմության մշակման ուղղությամբ: Բարձրորակ գիտական աշխատողների ներգրավմամբ մեծացվեց հեղինակային կոլեկտիվը, շարունակվեց աշխատանքը արխիվներում՝ նոր նյութեր հայտնաբերելու համար, գիտական քննարկման դրվեցին անցյալում մոռացված կամ սխալ լուսաբանված շատ պրոբլեմներ: Առանձին հարցերի լուսաբանության ընթացքում եղած տարաձայնությունները, իրարամերժ կարծիքները վերացնելու նպատակով համագործակցված աշխատանք կատարվեց Անդրկովկասի մյուս հանրապետությունների պատմաբանների հետ: Այս ամենը հնարավոր դարձրին Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության նոր Ուրվագծերի հրապարակումը[23]: Նոր Ուրվագծերում պատմության շարադրանքը սկսվում է 1880-

21 Հայաստանի կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր, Երևան, 1958, 686 էջ: Ուրվագծերը տպագրության է պատրաստել ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը — ՀԿԿ ԿԿ-ին կից կուսակցության պատմության ինստիտուտը: Այն գրել են՝ Վ. Ա. Ավետիսյանը, Գ. Մ. Մնեյանը, Գ. Բ. Ղարիբջանյանը, Ա. Մ. Հակոբյանը և Ա. Ն. Մնացականյանը: «Ուրվագծեր»-ը խմբագրել են Հր. Խ. Մարգարյանը, Ա. Ն. Մնացականյանը, Խ. Հ. Բարսեղյանը:

22 Ուրվագծերի վերլուծությունը տե՛ս «Լենինյան ուղիով» № 3, 1959, էջ 20—25, № 4, էջ 70—73, № 7, էջ 28—42, Հայկական ՍՍՀ ԳԱ, «Պատմա-բանասիրական հանդես», № 4, 1960, էջ 328, 336 և այլն:

23 Հայաստանի կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր, Երևան, 1963, 758 էջ, 1967, 822 էջ: Նույնը ռուսերեն, 1967, 639 էջ: Ուրվագծերը պատրաստել է հեղինակային կոլեկտիվը հետևյալ կազմով՝ Ծ. Պ. Աղայան (ղեկավար), Մ. Հ. Ադոնց, Վ. Ա. Ավետիսյան, Մ. Վ. Արզումանյան, Ս. Ա. Բադալյան, Ա. Մ. Բաղմանյան, Խ. Հ. Բարսեղյան, Հ. Հ. Գար-

վետական իշխանության համար մղած պայքարի ժամանակաշրջանում 1917—1920 թթ.) մենագրության մեջ։

Պատմաբանների ուշադրության կենտրոնում է գտնվում սոցիալիզմի կառուցման համար կոմկուսի ղեկավարությամբ աշխատավորության մղած պայքարի լուսաբանումը։ Վ. Ներկարարյանի հետազոտությունները նվիրված են ՀԿՊ II, III և IV համագումարներին, ժողովրդական տնտեսության վերականգնման ժամանակաշրջանում Հայաստանի կոմկուսի ծավալած գործունեությանը [27]։ Երկրի սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման համար Հայաստանի կոմկուսի տարած պայքարի հետազոտմանն են նվիրված Փ. Ենգոյանի, Մ. Սաֆարյանի, Բ. Օհանջանյանի, Ա. Եսայանի, Հովհ. Վարդանյանի և այլոց ուսումնասիրությունները [28]։ Առանձին աշխատություններ են գրվել սոցիալիզմի կառուցման գործում Հայաստանի կոմկուսի տարած պայքարի, սովետական հայրենասիրության, սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության, սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափությունների, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և այլ պրոբլեմների վերաբերյալ [29]։

Երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության բնորոշ և ուսանելի կողմերից մեկին է նվիրված Ղ. Դալլաքյանի Անդրկովկասի աշխատավորության ինտերնացիոնալ համախմբման համար գիրքը [30]։

Հայաստանի լենինյան կոմերիտմիության ձևավորման պատմությունը առաջին անգամ գիտականորեն հետազոտել է Հ. Կարապետյանը։ Նա ճիշտ է գնահատել երկրամասի հեղափոխական շարժումներին երիտասարդության ցուցաբերած մասնակցությունը, ցույց տվել Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների աշխատանքը երիտասարդության շրջանում 1917—1921 թվականներին։

Անդրկովկասի կոմերիտմիությունը սովետական կարգերի հաղթանակի և ամրապնդման համար մղված պայքարում (1917—1921) [31] մենագրության մեջ Հ. Ավետիսյանը լուսաբանել է ՀամԼԿԵՄ հնագույն ջոկատներից մեկի՝ Անդրկովկասի կոմերիտմիության ձևավորման պրոցեսը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ երկրամասի երիտասարդության մղած պայքարը սովետական իշխանության հաղթանակի և ամրապնդման համար։

Սոցիալիստական Երևանի պատմությանը նվիրված իր արժեքավոր մենագրության մեջ Ա. Սիմոնյանը լուսաբանել է մայրաքաղաքի կուսակցական կազմակերպությունների հեղափոխական, պանծալի ավանդները, հանրապետության կուսակցական կազմակերպությունների ամրապնդման, աշխատավորության դաստիարակության, Սովետական Հայաստանի սոցիալիստական վերափոխությունների գործում նրա կատարած դերը։ Նրան աշխատությունը գիտահետազոտական արժեքավոր ուսումնասիրություն է։

Բոլշևիկյան հայ պարբերական մամուլին և պատմագիտությանը նվիրված հետազոտությունները մեծապես նպաստում են հեղափոխական շարժումների և բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության պատմության խոր և համակողմանի լուսաբանությանը։

Հայաստանի հեղափոխական շարժումների և կոմկուսի պատմությունը լուսաբանելու գործում զգալի արժեք է ներկայացնում մեմուարային գրականությունը, հին բոլշևիկների, հեղափոխության վետերանների հիշողությունները։

Երևանի, Ալեքսանդրապոլի, Կարսի, Սարիղամիշի, Լոռու, Զանգեզուրի և այլ վայրերի կոմունիստական շարժումների առանձին իրադարձություններ և էպիզոդներ պատշաճ լուսաբանություն ստացան երկրամասի հեղափոխական շարժման ակտիվ գործիչների հուշերում։ Հին բոլշևիկների հիշողություններ [32] ժողովածուները, անշուշտ, իրենց ուրույն տեղն ունեն պատմա-հեղափոխական գրականության մեջ։ Ուշագրավ են Ա. Կախոյանի, Շ. Ամիրխանյանի, Ա. Բերբերյանի փաստալից հուշերի գրքույկները։

Այնուհանդերձ պետք է նշել, որ Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության մի շարք պրոբլեմներ տակավին պատշաճ լուսաբանություն չեն ստացել։ Հարկավոր է ուժեղացնել գիտահետազոտական աշխատանքը կոմունիստական շինարարության ներկա էտապում կուսակցական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական աշխատանքը վեր հանելու, աշխատավորությանը մեծ Հոկտեմբերի գաղափարներով համակելու, ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու ասպարեզում կուտակած փորձը ընդհանրացնելու, լենինյան կուսակցության և նրա տեղական ջոկատներից մեկի՝ Հայաստանի կոմկուսի գործունեությունը համակողմանի լուսաբանելու ուղղությամբ։



---

27 Վ. Ներկարարյան, Հայաստանի կոմունիստական պարտիան ժողովրդական տնտեսության վերականգնման ժամանակաշրջանում (1921—1925), Երևան, 1956, նույնի Հայաստանի կոմունիստական պարտիայի երկրորդ համագումարը, Երևան, 1957, նույնի Հայաստանի կոմունիստական պարտիայի երրորդ համագումարը, Երևան, 1958, նույնի Հայաստանի կոմունիստական պարտիայի չորրորդ համագումարը, Երևան, 1956։

28 Փ. Ենգոյան, Հայաստանի կոմպարտիայի պայքարը ռեսպուբլիկայի ինդուստրացման համար, Երևան, 1965. Մ. Սաֆարյան, Հայաստանի կոմպարտիայի պայքարը ռեսպուբլիկայում սոցիալիզմի զարգացման ու ամրապնդման համար (1937—1941 թթ.), Երևան, 1966. Բ. Օհանջանյան, Հայաստանի կոմունիստական պարտիան գյուղատնտեսության կոլեկտիվացման տարիներին (1930—1934), Երևան, 1955. Ա. Եսայան, Հայաստանի կոմունիստական պարտիայի պայքարը սոցիալիզմի կառուցման համար առաջին հնգամյակի տարիներին, Երևան, 1958։

29 Ա. Բաղմանյան, Սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափությունների մասին, Երևան, 1959. Խ. Հովակիմյան, Սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, Երևան. 1961, Հ. Ութմազյան, Ինչ է նշանակում աստիճանական անցում սոցիալիզմից կոմունիզմին, Երևան, 1961։

30 Ղ. Դալլաքյան, Անդրկովկասի աշխատավորության ինտերնացիոնալ համախմբման համար (1914—1917), Երևան, Հայպետհրատ, 1964։

31 Г. А. Аветисян. Комсомол Закавказья в борьбе за победу и упрочение Советской власти (1917—1921), изд. АН Арм. ССР, Ереван, 1964.

32 Հին բոլշևիկների հիշողություններ, գիրք առաջին, Հայպետհրատ, 1957, գիրք երկրորդ, Հայպետհրատ, 1961։

# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ՀԱՐՑԱԴՐՈՒՄԸ ՏԵՂԻՆ Է, ԼՈՒԾՈՒՄԸ ԹԵՐԻ

ՄԱՐԴՈՅԱՆ Ա. Գ.

Երբ մամուլում խոսակցություն է բացվում կոլտնտեսականների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման մասին, շատերն իրավացիորեն ասում են, որ դա վերաբերում է նաև սովխոզների բանվոր-ծառայողներին, որոնց աշխատանքային պայմանները գրեթե նույնն են, ինչ կոլտնտեսություններում։ Հայտնի է, որ անցյալ տարվանից կոլտնտեսականների ու սովխոզների աշխատողների վաստակի տարբերությունները մեծ չեն։

Մեր հոդվածում ուզում ենք անդրադառնալ Լենինյան ուղիով ամսագրի 1967 թվականի № 8-ում զետեղված Ս. Ղարիբյանի Սովխոզներում նյութական շահագրգռվածության բարձրացման հարցի շուրջը և № 9-ում զետեղված Ժ. Սարգսյանի Եկեք քննարկենք հոդվածներին, որոնց հեղինակներն անում են արժեքավոր առաջարկություններ ու դիտողություններ, որոնք կօգնեն ընդհանուր գործի բարելավմանը։

Ճիշտ է վարվում ընկ. Ս. Ղարիբյանը, երբ սովխոզների բանվորների նյութական շահագրգռվածության բարձրացումը կապում է նրանց հիմնական և լրացուցիչ վարձատրության հետ։ Վարձատրության այդ երկու ձևերի կատարելագործումը, ինչ խոսք, կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, ինչպես բանվորների, այնպես և սովխոզների եկամուտների ավելացմանը։

Բայց ինչպե՞ս, ինչպիսի՞ ձևերով ու մեթոդներով կատարելագործել վարձատրությունը։ Այս հարցին պետք է պարզ, հիմնավորված ու համոզիչ պատասխան տալ, որպիսին չենք տեսնում ընկ. Ղարիբյանի հոդվածում։ Նրա մոտ հարցադրումը տեղին է, լուծումը՝ թերի։ Ավելին, կարևոր հարցի քննարկման գործում ցուցաբերելով անհարկի շտապողականություն, ընկ. Ղարիբյանը զանց է առնում մի շարք հանգամանքներ և բանն այնպես է ներկայացնում, որ սովխոզներում վարձատրության ներկա կարգը քիչ է նպաստում գյուղատնտեսության շեշտակի զարգացմանը։ Որ աշխատանքի վարձատրության ասպարեզում սովխոզներում էական թերություններ կան, դա փաստ է, բայց որ վիճակն այնպիսին չէ, ինչպես ընկ. Ղարիբյանն է նկարագրում, դա անհերքելի է։

Նշելով, որ տարիֆային դրույքներով և գործավարձային սիստեմով գործող վարձատրության կարգերը քիչ են խթանում գյուղատնտեսական



մթերքների արտադրության ավելացմանը, նա գրում է. «Սեզոնի ընթացքում, գործավարձային աշխատանքներ կատարելիս, բանվորները գլխավորապես մտածում են միայն տվյալ օրվա, շաբաթվա կամ ամսվա վաստակի մասին, ուշադրություն չդարձնելով որակի վրա։ Որոշ աշխատանքներ, որոնց նորմաները ցածր են, բանվորները կատարում են կրկնակի, հաճախ էլ եռակի չափով, ի վնաս որակի (էջ 80)։ Գործին անտեղյակ մարդը, կարդալով այս տողերը, կկարծի, թե սովխոզներում առհասարակ որակի վրա ուշադրություն դարձնող չկա, բանվորը կարող է դրա հաշվին նորման եռակի չափով կատարել, շատ աշխատավարձ ստանալ, չմտահոգվելով ինչպիսի արդյունք կստացվի իր աշխատանքից։ Իրականում այդպես չէ։ Սովխոզներում կան համապատասխան աշխատողներ, որոնք հսկում են որակի վրա և խոտանաբարին պատասխանատվության կանչում օրենքի և տնտեսության ներքին կարգ ու կանոնի համաձայն։ Չնայած սրան, իհարկե, անորակ արտադրանքի դեպքեր լինում են և առանձին սովխոզներում դրանք քիչ չեն։ Բայց այն չի կարելի ընդհանրացնել և բոլոր տեղերում միայն վատը տեսնել։

Պաշտպանելով որոշ տնտեսագետների առաջարկությունը, ընկ. Ս. Ղարիբյանը գտնում է, որ աշխատանքի վարձատրության միասնական տարիֆային վեցկարգյա սիստեմը պետք է փոխել. այն «...չի արտացոլում ներկայումս կատարվող տարբեր որակի, տարբեր բարդության ու մասնագիտության աշխատանքների էությունը»։ Նրա դիտողությունը ճիշտ է ու տեղին։ Իրոք, վարձատրության տարիֆային վեցկարգյա սիստեմը կատարելագործման կարիք է զգում, որի առթիվ մամուլում արտահայտվել են մի քանի ընկերներ։

Խորանալով արծարծվող հարցի լուծման մեջ, Ս. Ղարիբյանը գտնում է, որ «Ինչպես ձեռքի, այնպես էլ տրակտորային բոլոր աշխատանքները նպատակահարմար է դիֆերենցել 2-3 կարգերում, ընդ որում մեկ կարգի գնահատումը մյուսի համեմատ պետք է տատանվի միայն 10 տոկոսի չափով» (էջ 81)։ Կարծում ենք, որ հարցի նման լուծումը ճիշտ չէ և դժվար թե քննություն բռնի։ Նախ, սովխոզներում կան մի քանի աշխատանքներ (կոմբայնով բերքահավաք, տրակտորով վար, փոցխ, կուլտիվացիա, ցել, ձեռքով հունձ, քաղհան, փոցխ, բուկլից, այգեբաց, այգեփոր և այլն), որոնք իրենց բնույթով, բարդությամբ, ինտենսիվությամբ ու դժվարությամբ տարբերվում են միմյանցից և նպատակահարմար չէ դրանք դիֆերենցել 2 կամ 3 կարգում։ Այդպիսիք, մեր կարծիքով, հնարավոր է դիֆերենցել առնվազն 4 կարգում, ընդ որում մեկ կարգի գնահատումը մյուսի համեմատ պետք է տատանվի ոչ թե միայն 10 տոկոսի չափով, ինչպես Ղարիբյանն է առաջարկում, այլ մինչև 35—45 տոկոսի չափով։ Դա միանգամայն օրինաչափ է, ասենք, կոմբայնավարի ու հնձված տարածություններում փոցխ կատարող տրակտորիստի աշխատանքի գնահատման գործում և այլն։

Տարվա կամ սեզոնի վերջում, նախատեսված չափով գյուղատնտեսական մթերքներ ստանալու համար սովխոզներում դաշտավարության բնագավառում աշխատող բանվորներին լրացուցիչ վճարվում է ստացած աշխատավարձի 25, իսկ անասնապահության ասպարեզի բանվորներին՝ 15 տոկոսի չափով։ Այդ գումարները համարվում են հիմնական վարձատրության մի մասը և մտցվում աշխատավարձի ֆոնդի մեջ։ Նման վարձատրության նպատակն այն է՝ բանվորներին շահագրգռել մինչև վերջ մասնակցելու արտադրական պրոցեսին։ Ճիշտ է նկատում ընկ. Ղարիբյանը, որ վարձատրության այս մասի հաշվարկման ու վճարման կարգը շատ անորոշ է ու բարդ։

«Այն,— գրում է նա,—...բնավ չի օգնում արտադրության արագ զարգացմանը: Այսպես, իմանալով, որ աշխատավարձի չափը կախված է պլանային առաջադրանքներից և տեխնոլոգիական քարտերով նախատեսված գումարի ու փաստացի ծախսվածի տարբերությունից, որոշ սովխոզների ղեկավարներ ձգտում են ցածր պլաններ ընդունել, տեխնոլոգիական քարտերում աշխատավարձի ֆոնդը ուռճեցնել և արհեստական կերպով աշխատանքի վարձաչափերը մեծացնել» (էջ 81—82):

Այս և տեղին մի քանի դիտողություններ անելուց հետո Ղարիբյանը պլանները կատարելու համար առաջարկում է՝ «...բանվորներին վճարել ոչ թե ստացած աշխատավարձի 15—25, այլ իր արտադրած մթերքների 5—10 տոկոսի չափով, դրամով կամ բնամթերքով՝ բանվորի ցանկությամբ: Պրակտիկայում արդարացված վարձատրության այս ձևը ավելի պարզ է, մատչելի ու շահագրգռող» (էջ 83):

Եթե խնդրին մոտենանք հիմնական վարձատրության այդ մասի հաշվարկի, հաշվառման, բաշխման ու դրանով իսկ բանվորների՝ արտադրության հանդեպ ցուցաբերած շահագրգռվածություն հարուցելու տեսակետից, ապա ընկ. Ղարիբյանն իրավացի է: Ներկայումս գործող վարձատրության այդ ձևը փաստորեն հնացել է և վերանայման խիստ կարիք է զգում:

Մյուս կողմից հարց է առաջանում. երբ սովխոզներում, գործող տարիֆային դրույքների համաձայն, բանվորները յուրաքանչյուր ամիս հիմնական վարձատրություն են ստանում, էլ ինչո՞ւ տարեվերջին, այն էլ բարդ ու բազմապիսի հաշվարկումներից հետո, մեկ ուրիշ անվան տակ 25 և 15 տոկոսի չափով նորից հիմնական վարձատրություն տալ: Արդյոք լավ չի՞ լինի, որ դա սկզբից միացվի հիմնական վարձատրությանը և վերջ տրվի հաշվառման, հաշվարկման ու բաշխման ավելորդ աշխատանքներին, որոնք երբեմն տեղիք են տալիս խառնաշփոթության, իսկ առանձին տեղերում՝ չարաշահումների: Կարծում ենք, որ հիմնական վարձատրության չափը (ըստ համապատասխան մասնագիտությունների) ընդհանուր պետք է լինի և բնավ էլ կարիք չկա այդ հոդվածով նախատեսված գումարի մի մասն առանձնացնել, բարդ հաշվարկումներ կատարել և հետո վճարել արտադրողին:

Առանձին ընկերներ գուցե առարկեն, ասելով, որ դա արվում է բանվորների շահագրգռվածությունը բարձրացնելու համար, այն բանի համար, որպեսզի նրանք մինչև վերջ մասնակցեն արտադրական պրոցեսին: Կարծում ենք, որ դրա համար կա հիմնական վարձատրություն և եթե նրա վրա սկզբից գումարվի տարեվերջին բաշխվող լրացուցիչ մասը (25 և 15 տոկոսը, որը տրվում է միայն արտադրական պլանները կատարելու դեպքում), դա ավելի կշահագրգռի բանվորներին, որովհետև դրանով ավելանում է նրանց կայուն աշխատավարձը:

Այդ հարցը կարելի է լուծել նաև տնտեսական հաշվարկին անցնելով: Տնտհաշվարկի ժամանակ սովխոզների բանվորների հիմնական աշխատավարձը սահմանվում է նրանց տված արտադրանքի չափով: Ով շատ, որակյալ և էժան արտադրանք տա, բարձր աշխատավարձ կստանա և՝ հակառակը: Գլխավորը բանվորի հիմնական աշխատավարձն է և դրանից է կախված արտադրությանը մասնակցություն ունենալու հարցի բարեհաջող լուծումը: Այս գործում պետք է պարզություն լինի և բանվորը լավ իմանա, թե իր տված արտադրանքի համար որքան վարձատրություն է ստանալու:

Ամփոփելով սովխոզներում աշխատանքի վարձատրության՝ իր կողմից



արված առաջարկությունները, ընկ. Ս. Ղարիբյանը գրում է, որ «...բանվորների աշխատանքի վարձատրությունը հիմնականում բաղկացած կլինի երկու մասից:

Առաջին մասը վերակառուցված, 2—3 կարգյա տարիֆներով ու ճշտված արտադրական նորմաներով հաշվարկված գործավարձային աշխատավարձն է, որը բանվորներն ստանալու են ամեն ամիս ընթացիկ աշխատանքներ կատարելու համար: Այս աշխատավարձն իր մեջ հիմնականում ամփոփում է բանվորի կատարած աշխատանքի քանակական, մասամբ և որակական կողմը: Վարձատրության այս մասն արտադրության վերելքի գործում կամ գերպլանային արտադրանք ստեղծելու հարցում համեմատաբար պասսիվ դեր է կատարում» (էջ 87):

Այսպիսի մոտեցումը, թող թույլ տրվի ասել, չի բխում իրականությունից և գիտական չէ: Ինչպե՞ս կարող է հիմնական աշխատավարձն արտադրանքի ավելացման գործում համեմատաբար պասսիվ դեր կատարել, քան լրացուցիչ աշխատավարձը, որը Ղարիբյանը համարում է աշխատանքի վարձատրության ակտիվ մաս: Նախ, ինչպես բոլոր գործերում, այնպես էլ աշխատավարձի սիստեմում, հիմնականը չի կարող պասսիվ լինել, իսկ լրացուցիչը, երկրորդականը՝ ակտիվ: Չէ՞ որ բանվորի հիմնական աշխատավարձը սահմանված է որոշակի քանակությամբ արտադրանք տալու, նախատեսված արտադրական պլանը կատարելու դեպքում, որը տվյալ ձեռնարկության գործունեության գլխավոր կողմն է: Չի կարելի բանն այնպես պատկերացնել, թե սովխոզներում բանվորներին տրվող ամենամսյա վարձատրությունը այդպիսի նպատակ չի հետապնդում և արտադրանքի վերելքի գործում պասսիվ դեր է կատարում:

Գլխավոր տեղը հատկացնելով լրացուցիչ վարձատրությանը, ընկ. Ղարիբյանը գրում է. Նպատակահարմար է պլանային առաջադրանքների կատարման համար արտադրանքի 5—10 տոկոսը, իսկ գերակատարման համար՝ գերակատարվածի 60—80 տոկոսը տալ արտադրողներին՝ որպես լրացուցիչ վարձատրություն, դուրս գալով այդ մասի արտադրության վրա կատարված ուղղակի ծախսումները: Դա (ըստ նրա) աշխատանքի վարձատրության այն ակտիվ մասն է, որից կախված է արտադրության վերելքի ապահովման հարցը: Այս ամենի հետ միասին ընկ. Ղարիբյանն առաջարկում է պարզեցնել լրացուցիչ վարձատրության կարգը և այն հասկանալի դարձնել բոլոր բանվորների համար:

Համաձայն ենք, որ սովխոզների բանվորներին տրվող լրացուցիչ վարձատրության կարգը պետք է պարզեցնել և վերջնական արդյունքի ավելացման գործում բարձրացնել նրանց նյութական շահագրգռվածությունը: Լրացուցիչ վարձատրությունն, անշուշտ պետք է տրվի, հաշվի առնելով յուրաքանչյուրի կատարած աշխատանքի քանակն ու որակը:

Ընկ. Ղարիբյանն իր առաջարկությունը հաստատելու նպատակով մի քանի օրինակներ է բերում: Նա մի սովխոզի օրինակով ցույց է տալիս, թե ինչպես կարտոֆիլի ցանքատարածությունն ամրացված է առանձին բանվորների, որոնք հեկտարից 100 ցենտներ բերք տալիս են սովխոզին, իսկ դրանից ավելի ստացած բերքի 60 տոկոսը մնում է իրենց որպես լրացուցիչ վարձատրություն: Վարձատրության նման կարգի շնորհիվ,— եզրակացնում է ընկ. Ղարիբյանը,— սովխոզում կարտոֆիլի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 200—250 ցենտներ բերք, անցյալում

ստացված 50—60 ցենտների դիմաց: Այսպիսով, ասենք, 1 հեկտարից հավաքված 250 ցենտներ բերքից 90 ցենտները կամ պլանից ավելի արտադրրված բերքի 60 տոկոսը, որպես լրացուցիչ վարձատրություն տրվում է բանվորներին: Բացի այդ, պլանային առաջադրանքը կատարելու համար նրանց տրվում է ամբողջ բերքի 5—10 տոկոսը, ինչպես նաև տվյալ հեկտարի մշակման ու բերքահավաքի հետ կապված հիմնական վարձատրությունը: Ի՞նչ է ստացվում: Այն, որ համաժողովրդական սեփականություն հանդիսացող հիմնական ու շրջանառու արտադրամիջոցների հաշվին ստացված վերջնական արդյունքի մեծ մասը տրվում է որպես աշխատավարձ:

Սովխոզների բանվորներին տրվող լրացուցիչ վարձատրությունը, մեր կարծիքով, պետք է կազմի գերպլանային արտադրանքի ոչ թե 60—80, այլ 50—55 տոկոսը: Սա ավելի ռեալ է ու բխում է ինչպես պետական, այնպես էլ բանվորների անձնական շահից: Չպետք է մոռանալ, որ գերպլանային արտադրանքի համար պետության հաշվին ծախսվում են հիմնական ու շրջանառու միջոցներ, որոնք պետք է հատուցվեն: Պետք է հատուցվեն նաև գերպլանային արտադրանքի հետ կապված պետական այլ ծախսերը, որպեսզի ապահովվի տնտեսության ֆինանսական նորմալ գործունեությունը:

Սովխոզներում և պետական գյուղատնտեսական մյուս ձեռնարկություններում աշխատանքի վարձատրությունը կատարելագործելու, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում աշխատողների նյութական շահագրգռվածությունը հավասարապես բարձրացնելու և բանվորական ուժի հոսունությունը տնտեսության տարբեր ճյուղերի միջև կանխելու նպատակով, մեր կարծիքով, անհրաժեշտ է տարիֆային դրույքները բոլոր ճյուղերում էլ բարձրացնել 25 տոկոսով: Բացի այդ, աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի բարձրացման միջև ճիշտ համամասնություն ապահովելու համար, տեխնոլոգիական քարտերը կազմելիս, պետք է հիմք ընդունել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության փաստացի մակարդակը: Ընդ որում միավոր արտադրանքի համար վարձաչափ չպետք է սահմանել և բանվորներին պետք է վարձատրել տարիֆային դրույքներով: Իսկ տարվա վերջում, համախառն արտադրանքի պլանը 50—60 տոկոսով կատարելու դեպքում որպես լրացուցիչ վարձատրություն տալ տարվա ընթացքում տարիֆային դրույքներով վաստակած աշխատավարձի 13 տոկոսը, 80,1—99 տոկոսով կատարելու դեպքում՝ 22, 100,1—105 տոկոսով կատարելու դեպքում 27, 110,1—115 տոկոսով կատարելու դեպքում՝ 31, իսկ 115,1-ից բարձր կատարելու դեպքում՝ 32 տոկոսը:

Աշխատանքի վարձատրության գործող կարգի համաձայն արտապլանային արտադրանքի մինչև 20 տոկոսը որպես պարգև-հավելում տրվում է բանվորներին, անկախ այն բանից, թե տնտեսության որ ճյուղում ինչ չափով է ստացվել արտապլանային արտադրանքը: Մեր կարծիքով, գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանները գերակատարելու գործում բանվորներին առավել շահագրգռելու համար պետք է պարգև-հավելումներ տալ հետևյալ չափերով. համախառն արտադրության պլանը 100,1—105 տոկոսով կատարելու դեպքում՝ արտապլանային արտադրանքի արժեքի 40 տոկոսը, 105,1—110 տոկոսով կատարելու դեպքում՝ 45, 110—115 տոկոսով կատարելու դեպքում՝ 50, 115 տոկոսից բարձր կատարելու դեպքում՝ 55 տոկոսը: Ընդ որում, եթե իրենց մեղքով թույլ է տրվել աշխատավարձի ֆոնդի գերածախս,



ապա տարեվերջում այն անպայման պետք է վերականգնվի լրացուցիչ վարձատրության գումարից:

Գյուղատնտեսական կարևոր աշխատանքները որակական բարձր ցուցանիշներով և ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում կատարելու նպատակով բանվորներին նյութապես խրախուսելու համար անհրաժեշտ է սովխոզներում ստեղծել խրախուսման հատուկ գումար՝ աշխատավարձի ֆոնդի 5 տոկոսի չափով:

Մյուս կողմից անհրաժեշտ է հասնել այն բանին, որ արտադրական պլանները ռեալ դառնան և աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով ավելացվի բանվորների հիմնական վարձատրությունը: Այս ճանապարհով բանվորների ստացած ռեալ եկամուտը պետք է մի քանի անգամ ավելի շատ լինի, քան տարբեր ձևերով տրվող լրացուցիչ վարձատրությունը:

Հարկ ենք համարում միաժամանակ նշել, որ բազմաթիվ առաջավոր կոլտնտեսություններ ու բրիգադներ, գերպլանային արտադրանքի 25—30 տոկոսը տալով որպես լրացուցիչ վարձատրություն, հեկտարից ստացել են ոչ թե 200—250 ցենտներ կարտոֆիլ, այլ 250—300 ցենտներ: Օրինակ, Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղի կոլտնտեսությունը կարտոֆիլի ամբողջ ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 180, իսկ սոցիալիստական աշխատանքի հերոս Վ. Գասպարյանի բրիգադը՝ 300 ցենտներ բերք: Այստեղ բարձր բերքի ստացման լուրջ խթան է ոչ թե լրացուցիչ, այլ հիմնական վարձատրությունը, որը մյուս տնտեսությունների համեմատությամբ մոտ 2 անգամ ավելի է:

Սովխոզներում արտադրության բարձրացման հետ կապված հետաքրքրական շատ հարցեր են բարձրացված նաև ընկ. Ժ. Սարգսյանի **Եկեք քննարկենք** հոդվածում: Հեղինակն ամենայն շիտակությամբ հարցնում է. ինչո՞ւ «Գյուղատնտեսությունն իր զարգացման թափով ետ է մնում ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներից» և դա այն դեպքում, «երբ սովխոզներն ու կոլտնտեսություններն ունեն թե՛ ժամանակակից տեխնիկա և թե՛ այն տիրապետող ու գործադրող բարձրորակ մասնագետներ: Տնտեսությունների մեծ մասը ղեկավարում են իրենց գործն իմացող, բազմամյա փորձ ունեցող արտադրության հմուտ կազմակերպիչներ: Գյուղատնտեսական արտադրության ոլորտում աշխատում է բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների մի բազմահազարանոց բանակ» (Լենինյան ուղիով № 9, 1967 թ., էջ 89—90):

Գյուղատնտեսության ետ մնալու պատճառը Ժ. Սարգսյանը համարում է «Նրա կառավարման սիստեմում եղած թերությունները, որոնք արգելակում են տնտեսության այդ ճյուղի առաջընթացը»: Նա բացատրում է, որ գյուղատնտեսության հանրապետական բազմաթիվ հիմնարկություններում ու գերատեսչություններում եղած մասնագետներից և կազմակերպիչներից շատերը հաճախ, առանց իրար հետ համաձայնեցնելու, համանման որոշումներ են ընդունում, կարգադրություններ անում, ստուգումներ անցկացնում, որոնք երբեմն ցանկալի արդյունք չեն տալիս, կաշկանդում են տեղական աշխատողների նախաձեռնությունը:

Ցավոք, այդպիսի երևույթներ կան, որոնք, հարկավ, չեն նպաստում արտադրության զարգացմանը: Խնդրի այդ կողմը ճիշտ նշելով հանդերձ, ընկ. Սարգսյանը մոռանում է մյուս կողմը, այսինքն՝ որ լուրջ թերություններ կան

նաև տեղերում, բազմաթիվ տնտեսություններում ու նրանց տարբեր ճյուղե-
րում։ Գաղտնիք չէ, որ մի շարք սովխոզների դիրեկտորներ ու բազմաթիվ
բաժանմունքների, բրիգադների ու ֆերմաների վարիչներ վատ են օգտա-
գործում ներքին ռեզերվները, չեն ապահովում արտադրական պլանների
կատարումը և տնտեսական տարին փակում են վնասով։ Այս առումով հարկ
ենք համարում նշել, որ տնտեսությունների միջին ղեկավար կադրերի նշանակ-
ման ու ազատման իրավունքը կարելի է թողնել տնտեսությունների ղեկավար-
ներին և սկզբնական կուսկազմակերպություններին, որոնք մոտիկից ճանաչում
են տեղական բոլոր կադրերին։

«Զարգացման արդի էտապում,— գրում է Սարգսյանը,— անհրաժեշտու-
թյուն է դարձել մեկ միասնական կազմակերպության մեջ միավորել գյու-
ղատնտեսությամբ զբաղվող բազմաթիվ օրգաններ, որը պետք է զբաղվի ո՛չ
միայն տնտեսությունների ղեկավարման, այլև նրանց մատակարարման,
արտադրության մեջ առաջավոր փորձի ու տեխնիկայի արմատավորման, նոր
սորտերի և անասունների ցեղերի բարելավման, տնտեսությունների աշխա-
տանքի կոորդինացման, ջրամատակարարման և այլ հարցերով» (էջ 93)։

Մեր հանրապետության պայմաններում (տնտեսությունների թիվը և
նրանց մշակած հողատարածությունների չափը նկատի ունենալով) այդ առա-
ջարկությունը կարելի է ընդունել, երբ, ասենք, առաջներում գյուղատնտեսու-
թյան մինիստրությունը հենց այդպիսին էր։ Այստեղ պետք է անել մի բա-
ցառություն. խոսքը ջրային տնտեսության մինիստրության մասին է, մեր
կարծիքով այն անպայման պետք է մնա որպես առանձին գործող կազմա-
կերպություն, որի գործունեության ասպարեզը լայն է, խոշոր ու բարդ։ Այդ
մինիստրությունն իր գոյության ընթացքում շատ գործ է կատարել և ավե-
լին ունի կատարելու հետագայում։

Որ գյուղատնտեսության ղեկավարության բարելավումն ու կատարելա-
գործումն էական նշանակություն ունեն արտադրության զարգացման համար,
բոլորին է պարզ, բայց որ ամեն ինչ միայն դրանով պայմանավորված չէ,
նույնպես պարզ է։ Գյուղատնտեսության հետագա զարգացման համար խոշոր
և արմատական նշանակություն ունեն նրա նյութա-տեխնիկական բազայի ըն-
դարձակումն ու ամրապնդումը, որոնց մեր կուսակցությունը և կառավա-
րությունն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում։ Ցավոք, այդ կարևոր
հարցը ընկ. Սարգսյանի տեսադաշտից կարծես դուրս է մնում, և նա ըստ էու-
թյան դրան չի անդրադառնում, կարծելով, թե այդ հարցը վերջնականապես
լուծված է։ Ահա թե ինչ է գրում նա.

«Ձնայած մեր երկրում լուծված են գյուղատնտեսությունը մեքենայաց-
նելու, հանքային պարարտանյութերի և քիմիկատների արտադրությունը շեշ-
տակիորեն ավելացնելու, մասնագետներով ու կազմակերպչական կադրերով
ապահովելու հարցերը, սակայն անձնական շահագրգռվածության, տնտեսու-
թյունների ղեկավարների սեփական նախաձեռնության և իրավունքների սահ-
մանափակումների հետևանքով գյուղատնտեսությունը մեզ մոտ դանդաղ է
զարգանում» (էջ 94)։ Վերոհիշյալ հարցերը մեզ մոտ ոչ թե լուծված են, այլ
լուծվում են։ Հենց նոր հնգամյա պլանը մի խոշոր առաջընթաց քայլ է
այդ ճանապարհին, որի ընթացքում երկրի գյուղատնտեսությունը կստանա
ավելի շատ մեքենաներ, հանքային պարարտանյութեր, քիմիկատներ ու կադ-
րեր, քան ստացել է անցյալում։

Իրոք, գյուղատնտեսության մեքենայացման ուղղությամբ վիթխարի



գործ է կատարված և կոլտնտեսություններն ու սովխոզները դարձել են մե-
քենայացված խոշոր տնտեսություններ։ Բայց պահանջվող քանակությամբ
գյուղատնտեսական մթերքների թողարկման և առկա նյութատեխնիկական
բազայի միջև դեռևս լրիվ համապատասխանություն չկա։ Գյուղատնտեսու-
թյունը կարիք ունի կատարելագործված, տեղական պայմաններին հարմա-
րեցված բազմաթիվ մեքենաների ու սարքավորումների, ինչպես նաև հանքա-
յին պարարտանյութերի, քիմիկատների և այլն։ Զուր չէ, որ պետությունը
հսկայական կապիտալ ներդրումներ է կատարում գյուղատնտեսության մեջ,
նպատակ ունենալով էլ ավելի ամրապնդելու և զարգացնելու նրա նյութա-
տեխնիկական բազան, որն ընդլայնված վերարտադրության հիմքն է, մեր
առաջընթացի կարևոր պայմանը։

Մոռանալով այդ կարևոր հանգամանքը, ընկ. Սարգսյանը գյուղատնտե-
սության դանդաղ զարգացումը բացատրում է անձնական շահագրգռվածու-
թյան, տնտեսությունների ղեկավարների սեփական նախաձեռնության ու
իրավունքների սահմանափակվածությամբ։ Սա հարցին միակողմանի մոտե-
ցում է, մանավանդ ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի որոշու-
մից հետո, երբ խոշոր միջոցառումներ իրագործվեցին կոլտնտեսականների
ու սովխոզների աշխատողների անձնական նյութական շահագրգռվածությու-
նը, տնտեսությունների ղեկավարների իրավունքները բարձրացնելու, նրանց
սեփական նախաձեռնությունը զարգացնելու ուղղությամբ և այլն։ Այդ գոր-
ծում, իհարկե, դեռ ամեն ինչ արված չէ, կան լուրջ թերություններ և վրիպում-
ներ, որոնց վերացման համար անհրաժեշտ է հետևողական աշխատանք ծա-
վալել։ Իսկ եթե կան սահմանափակումներ, ապա պարզ պետք է ցույց տալ,
թե դրանք ինչում են արտահայտվում և ինչպես պետք է վերացվեն։

Ընկեր Սարգսյանն իր հոդվածում խոսելով մի շարք էական խնդիրների
մասին, իհարկե, բերում է այնպիսի օրինակներ, որոնցից պետք է համա-
պատասխան հետևություն անել և սովխոզներում գյուղատնտեսության
մթերքների արտադրության պլանավորումն ու իրացումն այնպես կազմա-
կերպել, որ անպայման ապահովվի տնտեսության շահութաբերությունը։ Այդ
առնչությամբ նա շոշափում է գործարաններին ու առևտրական կազմակեր-
պություններին բանջարեղեն հանձնելու հարցը և նշում, թե ինչպես հումքը
ժամանակին չընդունելու, գործարանում մեծ կորուստներ տալու, մթերքների
գներն արհեստականորեն իջեցնելու պատճառով 1965 թվականին Մրգաշատի
սովխոզը կրել է 73.000, իսկ առևտրական կազմակերպությունների կողմից
բանջարեղենի ընդունումը ձգձգելու հետևանքով՝ 50.000 ռուբլու վնաս։

Այս և մյուս փաստերը նկատի ունենալով, ընկ. Սարգսյանը գրում է.
«Ժամանակն է, որ խոշոր տնտեսություններին իրավունք տրվի ո՛չ միայն
արտադրելու, այլև վերամշակելու և վաճառելու իրենց մթերքները, երբ մյուս
օրգանները դրան ի վիճակի չեն» (էջ 91)։ Մեզ թվում է, որ արտադրված
մթերքների վերամշակման գործը սովխոզներին թողնելը (մանավանդ Արա-
րատյան դաշտավայրի սովխոզներին, որոնց շրջակայքում գտնվում են վե-
րամշակման պետական խոշոր ձեռնարկություններ՝ ժամանակակից տեխնի-
կայով զինված) նպատակահարմար չէ։ Սակայն խոշոր սովխոզներում ո՛չ թե
հիմնական մթերքների վերամշակման, այլ տեղական հումքի և արտադրան-
քի մնացորդների վերամշակման համար իրոք անհրաժեշտ է ստեղծել օժան-
դակ սեզոնային ձեռնարկություններ, որոնք պետք է մշակեն գյուղատնտե-
սական մթերքների մնացորդները և ավելցուկները, տեղական հումքից ար-

տադրեն լայն սպառման ապրանքներ։ Այդ կարգի ձեռնարկությունների ստեղծումով լուծվում է նաև մեկ ուրիշ կարևոր հարց։ Ինչպես հայտնի է, գյուղատնտեսական աշխատանքների ավարտումից հետո 4—5 ամիս սովխոզների բանվորների զգալի մասը մնում է առանց աշխատանքի։ Այդպիսի ձեռնարկությունների առկայության դեպքում բանվորները կապահովվեն աշխատանքով, որը պայմաններ կստեղծի նրանց սովխոզների հետ կապելու, հոսունությունը վերացնելու և կարգապահությունը ամրապնդելու համար։ Ինչ խոսք, այդ ամենը դրականորեն կանդրադառնան արտադրության արդյունավետության բարձրացման և գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման վրա։

Սովխոզներին կից օժանդակ և արհեստագործական ձեռնարկությունների կազմակերպումը նրանց ուշադրությունը չպետք է շեղի հիմնականից՝ մթերքների արտադրությունից։ Մթերքների վերամշակման գործը հիմնականում պետք է կատարեն գործարանները, որոնցում պետք է ստեղծվի կարգ ու կանոն, մթերքները սովխոզներից ընդունվեն առանց ձգձգումների, տեղիք չտրվի փչացումների և կորուստների։ Այստեղ գործը միայն բարի ցանկություններով գլուխ չի գա։ Գյուղատնտեսական հումքի հանձնումն ու ընդունումը պետք է կատարվեն օրենքի ուժ ունեցող պայմանագրերով ու գրաֆիկով. դրանք խախտողը անպայմանորեն պետք է կրի իր մեղքով առաջացած նյութական ամբողջ վնասը։ Իսկ ինչ վերաբերում է վաճառքին, ապա, մեր կարծիքով կարելի է սովխոզներին իրավունք տալ իրենց արտադրած մթերքների որոշ մասը շուկա դուրս բերել, երբ առևտրական կազմակերպությունները ժամանակին այդ անել չեն կարող։

Լիովին համամիտ ենք Ժ. Սարգսյանի՝ Հայաստանի սովխոզների ու կոլտնտեսությունների մեծ մասի պայմաններում գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման վերաբերյալ առաջարկության հետ։ Այդ միջոցով կապահովվի տեխնիկայի լրիվ կարողությամբ և ռացիոնալ օգտագործումը, մյուս կողմից՝ փոքր տնտեսություններին հնարավորություն կտա բարձրացնելու ֆոնդահատույցի տոկոսը։

Գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման գործում էական նշանակություն ունի աշխատուժի ռացիոնալ օգտագործումը։ Ճիշտ է վարվում ընկ. Սարգսյանը, երբ սրությամբ դնելով այդ հարցը, պահանջում է պատասխանատվության ենթարկել այն մարդկանց, որոնք օգտվելով սովխոզի բանվորի կամ կոլտնտեսականի արտոնություններից, կոլտնտեսային ու սովխոզային արտադրության մեջ չեն աշխատում և գլխավորապես զբաղվում են իրենց անձնական օժանդակ տնտեսությունով։ Ցավոք, նմանների վերաբերյալ հետևողականորեն չի կիրառվում գոյություն ունեցող օրենքը, այսինքն, նրանք չեն զրկվում կոլտնտեսականի կամ սովխոզի բանվորի արտոնություններից։ «Հարմարվե՞լ ստեղծված վիճակի հետ,— հարցնում է Սարգսյանը և ապա պատասխանում.— կարծում եմ, ո՛չ։ Միակ ճիշտ ուղին՝ տնտեսությունների ղեկավարների իրավունքների ընդլայնումն է։ Նրանց պետք է իրավունք վերապահվի արտոնություններից զրկելու բոլոր նրանց, ովքեր ձևականորեն համարվելով սովխոզի բանվոր կամ կոլտնտեսության անդամ, փաստորեն չեն աշխատում տնտեսություններում (էջ 94)։

Որ կոլտնտեսություններում ու սովխոզներում չաշխատողներին արտոնություններից պետք է զրկել, երկու կարծիք լինել չի կարող։ Բայց այդ իրավունքը վերապահել միայն տնտեսությունների ղեկավարներին, ճիշտ չէ։ Դեռևս



բոլոր տնտեսությունների ղեկավարները չեն, որ նման կարևոր և մարդկանց
կյանքի համար ճակատագրական նշանակություն ունեցող հարցում ցուցա-
բերում են օբյեկտիվ մոտեցում։ Ահա թե ինչու անհրաժեշտ է, որ կոլտնտե-
սականին կոլտնտեսությունից հեռացնելու և սովխոզի բանվորին իր արտո-
նություններից զրկելու հարցը որոշի կոլեկտիվը՝ տնտեսության ղեկավարի
առաջարկությամբ։ Մյուս կողմից պետք է առաջ քաշել այն տնտեսություն-
ների ղեկավարների հարցը, որոնք գործնականում չեն կիրառում անբարե-
խիղճ, հանրօգուտ աշխատանքից խուսափող մարդկանց պատասխանատվու-
թյան ենթարկելու մասին վերադաս օրգանների որոշումները, հրահանգները
և գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրությունը։

Ընկ. Ժ. Սարգսյանն իր հոդվածում արծարծել է նաև ուրիշ կարևոր
հարցեր, որոնց տվյալ հոդվածի սահմաններում անդրադառնալ հնարավոր չէ։
Ցանկալի է, որ դրանց առթիվ հանդես գան ուրիշները, առանձնապես, գիտա-
հետազոտական հաստատությունների աշխատակիցներն ու ղեկավարները,
որոնց գործունեության մասին քննադատական խոսք է ասված։

Սովխոզներում արտադրության կազմակերպման, նրա արդյունավետու-
թյան բարձրացման և վարձատրության կարգի բարելավման առթիվ մամու-
լում հանդես եկած որոշ ընկերներ, չգիտես թե ինչու, իրենց տեսադաշտից
դուրս են թողնում ամենակարևոր հարցերից մեկը՝ տնտհաշվարկին անցնե-
լը։ Մինչդեռ կուսակցության և կառավարության որոշման համաձայն բոլոր
սովխոզները պետք է փոխադրվեն լրիվ տնտեսական հաշվարկի։ Դա այն
կարևոր միջոցն է, որը հնարավորություն կընձեռի պատշաճ կարգ ու կանոն
հաստատելու հիմնական արտադրամիջոցների օգտագործման բնագավառում
և լուծելու մի շարք հարցեր, որոնք կապված են արտադրության արդյունա-
վետության բարձրացման, շահութաբերության, ֆոնդահատույցի, տնտեսու-
թյան ղեկավարների ինքնուրույնության, սեփական նախաձեռնության զար-
գացման, պլանավորման և վարձատրության կատարելագործման հետ։ Այդ
բոլորն, անշուշտ, կօգնեն սովխոզային տնտեսության զարգացմանն ու ամրա-
պնդմանը, կապահովեն բոլոր տնտեսությունների շահութաբերությունը։

# ՀՍՍՀ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

ՆԱԶԱՐՅԱՆ Վ. Ռ

ա) Հայաստանի Հեղափոխական Կոմիտեի՝ որպես ՀՍՍՀ պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմնի, հարցի շուրջ:

*Հայաստանում Սովետական իշխանության հռչակումով կյանքի վերածվեց իր անկախության և պետականության համար պայքարող հայ ժողովրդի բազմադարյան երազանքը: Բազում հարյուրամյակների պատմության մեջ առաջին անգամ Հայաստանի աշխատավորների սուվերեն իրավունքները պետաիրավական մարմնավորման հնարավորություն ստացան:*

*Հայաստանում Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրվանից աշխատավորների զինված ապստամբության ղեկավարման մարմինը՝ Հայաստանի հեղափոխական կոմիտեն, վերածվեց սուվերեն Սովետական Սոցիալիստական Հանրապետության պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմնի:*

*Հեղափոխական կոմիտեները, որպես պետական իշխանության մարմին, զուտ Անդրկովկասյան և, առավելապես, զուտ Հայաստանյան երևույթներ չեն: Դրանց, որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական մարմնի, մենք հանդիպում ենք նաև ՌՍՖՍՀ-ում և սովետական մյուս հանրապետություններում:*

*Հայհեղկոմի, ինչպես նաև Անդրկովկասի մյուս հանրապետությունների հեղկոմների (Վրացհեղկոմի, Ադրբեջանական ՍՍՀ Հեղկոմի)՝ որպես պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների, հարցը լայն քննարկման առարկա է դարձել պատմա-իրավաբանական գրականության մեջ:*

*Նշված հարցերի նախնական պարզաբանումը կարող է հիմքեր ստեղծել ՀՍՍՀ պետական մարմինների համակարգում Հայհեղկոմի գրաված տեղը ճիշտ բացահայտելու և նրա իրավասության ու գործունեության լուսաբանման համար:*

*Հայտնի է, որ հեղափոխական կոմիտեները պատմական իրականության մեջ առաջին անգամ հանդես են եկել որպես շահագործողական կարգերի դեմ ոտքի ելած աշխատավորների զինված ապստամբության կազմակերպման և ղեկավարման մարմիններ: Նրանք կյանքի են կոչվել «...այն ապստամբությունը կատարելու համար, առանց որի անզոր են լինելու թե՛ ամեն տեսակ սովետները և թե՛ մասսայի կողմից ամեն տեսակ ընտրյալները» (Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 11, էջ 142—143):*

*Հեղկոմների ստեղծման անհրաժեշտությունը առավել սրությամբ ծա-*



*գեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նախօրյակին: 1917 թ. հոկտեմբերի 11-ին Պետրոգրադի սովետի գործադիր կոմիտեի նիստում բոլշևիկների առաջարկով ստեղծվեց ռազմա-հեղափոխական կոմիտե: Այն կազմակերպվեց սովետին կից և համարվում էր նրա մարմինը:*

*Հոկտեմբերի 16-ին Բոլշևիկյան կուսակցության Կենտրոնական կոմի-*
*տեն, Վ. Ի. Լենինի առաջարկով, Պետերբուրգում և ողջ երկրում ապստամ-*
*բությունը գլխավորելու համար ստեղծեց կուսակցական կենտրոն: Այն մտավ*
*Ռազմա-հեղափոխական կոմիտեի կազմի մեջ և դարձավ նրա ղեկավար կո-*
*րիզը: Պետերբուրգի ռազմա-հեղափոխական կոմիտեն ամենաակտիվ մաս-*
*նակցությունն ունեցավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխու-*
*թյան իրականացմանը: Հեղափոխության հաղթանակից և սովետական կար-*
*գերի հռչակումից հետո այն առավել ընդլայնեց իր գործունեությունը:*

*Իր՝ 1917 թ. հոկտեմբերի 17-ի նիստում համառուսաստանյան ռազմա-*
*հեղափոխական կոմիտեն հետևյալ ձևով է սահմանում իր ֆունկցիաները*
*և իրավասությունը.*

*ա) Ռազմա-հեղափոխական կոմիտեն կատարում է Ժողովրդական Կո-*
*միսարների խորհրդի կողմից իրեն հանձնարարված գործերը.*

*բ) Նրա իրավասության տակ են գտնվում՝ 1. Հեղափոխական կարգի*
*պահպանումը, 2. պայքար սպեկուլյացիայի դեմ, 3. բանվորների և*
*զինվորների դեպուտատների սովետի և Ժողովրդական Կոմիսար-*
*ների խորհրդի պաշտպանությունը* (Б. М. Морозов, **Создание и укрепление Советского государственного аппарата** (ноябрь 1917—март 1918), М., 1957 г., стр. 32):

*Համառուսաստանյան ռազմա-հեղափոխական կոմիտեի հետհոկտեմ-*
*բերյան գործունեությունը լուսաբանող բազմաթիվ փաստաթղթերում արտա-*
*ցոլված է նրա՝ որպես պրոլետարիատի դիկտատուրայի նորաստեղծ պետու-*
*թյան օրգանի գործունեությունը: Սովետական պետական ապարատի ստեղծ-*
*ման ու ամրապնդման զուգընթաց վերացավ ռազմա-հեղափոխական կոմիտեի*
*անհրաժեշտությունը և 1917 թվականի դեկտեմբերի 5-ից այն դադարեցրեց*
*իր գործունեությունը:*

*Իրենց էությամբ և գործունեության բովանդակությամբ նմանօրինակ*
*ռազմա-հեղափոխական կոմիտեներ ստեղծվեցին նաև Մոսկվայում, Կենտ-*
*րոնական երկրամասում, Վիտեբսկի նահանգում, Արխանգելսկում, Ռյազա-*
*նում, Օրենբուրգում և բազմաթիվ այլ վայրերում: Նշված բոլոր ռազմա-հե-*
*ղափոխական կոմիտեների կազմավորման և գործունեության համար բնու-*
*թագրական է եղել հետևյալը՝*

*ա) նրանք ստեղծվում էին համապատասխան սովետների որոշմամբ և*
*հանդիսանում էին այդ նույն սովետի մարմինը.*

*բ) նրանց խնդիրն էր պահպանել հեղափոխական կարգը և աջակցել սո-*
*վետներին՝ իշխանության ամրապնդման գործում.*

*գ) իրենց առջև դրված խնդիրները կատարելուց հետո ռազմա-հեղափո-*
*խական կոմիտեները, որպես սոցիալիստական հեղափոխության և պրոլե-*
*տարիատի դիկտատուրայի ժամանակավոր արտակարգ մարմիններ, վերաց-*
*վում էին:*

*ՌՍՖՍՀ շատ վայրերում ռազմա-հեղափոխական կոմիտեները կրկին*
*անգամ կյանքի կոչվեցին օտարերկրյա ինտերվենցիայի և քաղաքացիական*
*պատերազմի տարիներին: Այս անգամ նրանք ծնունդ առան ոչ թե որպես*

*զինված ապստամբության կազմակերպման և ղեկավարման մարմիններ, այլ ստեղծվեցին ՌՍՖՍՀ պետական իշխանության բարձրագույն մարմնի կողմից ընդունված պետա-իրավական ակտի հիման վրա։*

*Այսպիսով, մինչև Հայաստանի Հեղափոխական կոմիտեի և Անդրկովկասյան մյուս հանրապետությունների հեղափոխական կոմիտեների՝ որպես պետական իշխանության բարձրագույն մարմինների հանդես գալը գործել են. ա) Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության իրականացման ժամանակաշրջանի և բ) օտարերկրյա ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանի ռազմա-հեղափոխական կոմիտեները։ Երկու դեպքում էլ, երբ խոսվում է այդ հեղկոմների պետաիրավական գործունեության մասին, նկատի ենք ունենում սովետական պետական իշխանության ժամանակավոր, արտակարգ և, որպես կանոն, տեղական մարմինները։ Նրանց պետա-իրավական ողջ գործունեության ընթացքում ՌՍՖՍՀ մասշտաբով, ինչպես նաև հաճախ, տվյալ վայրում, որպես պետական իշխանության լիիշխան մարմիններ հանդես էին գալիս բանվորների, գյուղացիների ու զինվորների պատգամավորների սովետները։ Հեղկոմը կամ սովետի մարմին էր, կամ էլ նրա գործկոմի ժամանակավոր փոխարինողը։*

*Այսպիսին է եղել կոնկրետ փաստացի իրադրությունը։ Հեղափոխության փոթորիկների միջից ծնված և դեռևս կազմավորման ու ամրապնդման պրոցեսում գտնվող նորաստեղծ սովետական պետությունն իր մարմինների գործունեությունը, ամեն քայլափոխի, համապատասխանեցնում էր ժամանակի կենսական պահանջներին։ Բնական է, որ հաշվի առնելով սովետական պետական իշխանության մարմինների և նրանց գործունեության ձևերի այդ բազմազանությունը և բարդությունը, պետք է արտակարգ զգուշություն հանդես բերել նրանց միջև համեմատություններ անցկացնելիս։ Ինչպես ցույց կտրվի ստորև, առանձին դեպքերում, սոսկ անվանումների նմանության վրա հիմնված եզրակացությունները կարող են ստվերի մեջ թողնել սոցիալիստական հեղափոխության շնորհիվ Անդրկովկասում և, մասնավորապես, Հայաստանում հաստատված Սովետական իշխանության սովերեն բնույթը։*

*Մի կողմից՝ Հայհեղկոմի և Անդրկովկասի մյուս հանրապետությունների հեղափոխական կոմիտեների և, մյուս կողմից՝ ՌՍՖՍՀ տարբեր ժամանակաշրջաններում գործած հեղկոմների միջև համեմատություններ անցկացնելիս, ամեն անգամ, պետք է ուշադրության կենտրոնում պահել առաջինների, որպես սուվերեն սոցիալիստական հանրապետությունների պետական իշխանության բարձրագույն մարմիններ, իսկ վերջինների՝ սովետական մեկ այլ հանրապետության պետական իշխանության տեղական մարմիններ լինելու փաստը։ Միայն այդ պայմանով կատարված համեմատությունները կարող են ճիշտ եզրակացությունների հանգեցնել։*

*Մինչդեռ, որոշ հեղինակների մոտ, որպես կանոն, ընդհանրապես անտեսվում է այդ կարևոր հանգամանքը։ Մյուս կողմից՝ ոչ դիֆերենցված մոտեցում է նկատվում հարցի նկատմամբ։ Այսպես, «Հայաստանի հեղկոմները» կամ «Վրաստանի հեղկոմները» ընդհանուր հասկացության տակ դատողություններ են արվում այդ հանրապետությունների պետական իշխանության մարմինների ողջ համակարգի մասին։ Այսպես, Ու. Բախտաձեն իր «Հեղկոմները Վրաստանում» (1921—22 թթ.) հոդվածում գտնում է, որ Անդրկովկասյան հանրապետությունների հեղկոմները ոչնչով բանով չեն տարբերվել ՌՍՖՍՀ հեղկոմներից (հեղինակը նկատի ունի ՌՍՖՍՀ բոլոր ժամանակաշրջանների*



*հեղկոմները)։ (Տե՛ս Ու. Բախտաձե,* «Հեղկոմները Վրաստանում» *(վրացերեն). 1960, էջ 72—74)։*

*Նշված հեղկոմների միջև որոշակի տարբերություններ տեսնելու փորձ է կատարում Պ. Տ. Պետրիկովը։ Նա իր* Հեղափոխական կոմիտեների կազմակերպումը և գործունեությունը Բելոռուսիայի տերիտորիայում 1920 թ. *աշխատության մեջ ցանկանում է տարբերություն մտցնել հոկտեմբերյան հեղափոխության ժամանակաշրջանի և օտարերկրյա ինտերվենցիայի ու քաղաքացիական պատերազմի շրջանի հեղկոմների միջև։ Սակայն, մեզ անհայտ պատճառներով, նախքան առաջադրված խնդրին անցնելը, նա առանց որևէ վերապահության, Անդրկովկասի սովետական սոցիալիստական հանրապետությունների հեղկոմները, այդ թվում նաև Հայհեղկոմը, դասում է ՌՍՖՍՀ Կենտգործկոմի վերը նշված կանոնադրության ուժով ստեղծված հեղկոմների շարքում և գտնում, որ Անդրկովկասի հեղկոմները հանդես են եկել որպես հոկտեմբերյան հեղափոխական նվաճումների* պաշտպանության *և այն վայրերում սովետների իշխանության* վերականգնման *մարմիններ, որտեղ այն (սովետական իշխանությունը՝ Վ. Ն.) ժամանակավորապես տապալվել էր հակահեղափոխականների և ինտերվենտների ուժերով* (П. Т. Петриков, **Организация и деятельность революционных комитетов на територии Белоруссии в 1920 г.**, Минск, 1962, էջ 3):

*Անդրկովկասում սովետական կարգերի հաղթանակը դիտելով որպես Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության և սովետական իշխանության հաղթական երթի արդյունք, միաժամանակ չի կարելի այդ հեղկոմները բնութագրել սոսկ որպես «Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումների վերականգնման մարմիններ»։ Առավել ևս Հայաստանի համար խոսք անգամ չի կարող լինել սովետների իշխանության* վերականգնման *մասին, քանի որ երկրում դեռ նոր էր հաստատվում այդ իշխանությունը։*

*Հեղինակը փորձում է նաև վերոհիշյալ հեղկոմների միջև տարբերություն մտցնել նրանց անվանումների օգնությամբ։ Նա գտնում է, որ մասնավորապես Անդրկովկասում հեղկոմները, ի տարբերություն հոկտեմբերյան հեղափոխության ժամանակաշրջանի նմանօրինակ մարմինների, կրել են ոչ թե «Ռազմա-հեղափոխական կոմիտե», այլ «Հեղափոխական կոմիտե» անունը (տե՛ս նշված աշխատության նույն տեղը)։ Հեղինակի նման պնդումը զուտ ձևական լինելով հանդերձ՝ գոնե Հայհեղկոմի կապակցությամբ պարզապես չի համապատասխանում իրականությանը։ Հայհեղկոմի կողմից ընդունված բազմաթիվ պետա-իրավական ակտերում հավասարապես օգտագործվում են հիշյալ երկու անվանումները (տե՛ս Հայհեղկոմի դեկրետները՝ «Պետական վերահսկողությունը ՀՍՍՀ բանվորա-գյուղացիական տեսչություն վերակազմելու մասին», «Ժողովրդական տնտեսության խորհուրդ կազմելու մասին», հրամանը՝ «Հակահեղափոխական իշխանության տապալման մասին» և այլն («ՀՍԽՀ դեկրետների և հրամանների ժողովածու», պ. 1, էջ 51—53, 84—85, պ. 2, էջ 3—4, 10—12 և այլն)։*

*Մի կողմից ՀՍՍՀ, մյուս կողմից՝ Ռուսաստանի տարբեր ժամանակաշրջանների ռազմա-հեղափոխական կոմիտեների միջև ոչ ճիշտ համեմատություններ է անցկացնում նաև Ա. Ս. Փարեմուզյանը։ Հեղինակի դատողություններից պարզ է դառնում, որ նրա համար կասկածից դուրս է, որ Հայաստանի հեղափոխական կոմիտեն և ՀՍՍՀ տեղական հեղկոմները ստեղծվել են ՌՍՖՍՀ Կենտգործկոմի վերոհիշյալ կանոնադրության ուժով և նրան սոսկ*

հետաքրքրում է այն հարցը, թե ինչու Հայաստանի հեղկոմների խնդիրների և ֆունկցիաների միջև չկային այնպիսի տարբերություններ, ինչպիսիք առկա էին ՌՍՖՍՀ քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանի տարբեր վայրերի հեղկոմների միջև։ Նա մեջբերումներ կատարելով նշված կանոնադրությունից և ցույց տալով, թե ռազմաճակատի գծից քանի կիլոմետր հեռավորության վրա պետք է գտնվեն ՌՍՖՍՀ տարբեր վայրերի հեղկոմները, գալիս է այն եզրակացության, որ Սովետական Հայաստանի հեղկոմների ֆունկցիաների և խնդիրների միջև չկային նման տարբերություններ, քանի որ «...Հայաստանի փոքրիկ տերիտորիան համարյա բոլոր կողմերից շրջապատված էր թշնամական ուժերով, որը ռևկոմների առջև դնում էր միատեսակ պահանջներ և խնդիրներ և չէր պահանջում նրանց կառուցվածքի և ֆունկցիաների շատ թե քիչ տարբերություն» (տե՛ս Ա. Ս. Փարեմուզյան — Բանվորների, գյուղացիների և զինվորների դեպուտատների սովետների կազմակերպումը Հայաստանում (1921—1922 թթ.), «Երևանի Խ. Աբովյանի անվան Հայկական պետական մանկավարժական ինստիտուտի գիտական աշխատությունների ժողովածու», № 7, 1959 թ., էջ 8)։

Մեր կարծիքով նշված հեղինակներին նման եզրակացության է հանգեցրել Անդրկովկասի և, մասնավորապես, Հայաստանի աշխատավորներին՝ սովետական իշխանության հաստատման գործում ՌՍՖՍՀ 11-րդ կարմիր բանակի կողմից ցույց տրված օգնությունը։ Սակայն, այդ հարցի լիակատար լուսաբանման համար բավական է բերել միայն ՌՍՖՍՀ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահ Վ. Ի. Լենինի 1921 թ. մարտի 10-ի հեռագիրը՝ ուղղված 11-րդ բանակի ռազմահեղափոխական խորհրդին, Կովկասյան ռազմաճակատի ռազմա-հեղափոխական խորհրդին, Վրաստանի հեղկոմին և Գ. Կ. Օրջոնիկիձեին։ Այդ հեռագրում կարդում ենք. «Նկատի ունենալով այն, որ 11-րդ բանակի զորամասերը գտնվում են Վրաստանի տերիտորիայում, առաջարկվում է Ձեզ լիակատար կոնտակտ հաստատել Վրաստանի ռևկոմի հետ և խստորեն հարմարվել ռևկոմի դիրեկտիվներին։ Առանց վրացական ռևկոմի հետ համաձայնեցնելու, չձեռնարկել ոչ մի միջոցառում... հատուկ հարգանքով վերաբերվեցեք Վրաստանի սուվերեն օրգաններին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 35, էջ 515)։

Ինչպես ցույց է տալիս պատմական կոնկրետ իրադրության ուսումնասիրությունը, 11-րդ կարմիր բանակը աջակցել է իրենց պետականության համար պայքարող Անդրկովկասի աշխատավորների և այդ թվում դաշնակցական կարգերի դեմ հեղափոխական գոտեմարտի ելած Հայաստանի բանվորների և գյուղացիների պայքարին։ Նա իր օժանդակությունն է ցույց տվել այդ պայքարին Հայաստանի սուվերեն սոցիալիստական հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմնի՝ Հայհեղկոմի խնդրանքով, ամեն մի կոնկրետ դեպքում ձեռնպահ մնալով ՀՍՍՀ սուվերեն իրավունքներին միջամտելուց։

Հետևաբար Հայաստանի հեղկոմը սովետական իշխանության հռչակումից մինչև ՀՍՍՀ Ժողկոմխորհի վերակազմվելը ընկած ողջ ժամանակաշրջանում հանդես է եկել որպես սուվերեն պետության՝ Հայաստանի սոցիալիստական սովետական հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմին։ Այս է միակ ճիշտ ելակետային դրույթը, որ բավարար հիմք է ծառայում ինչպես Հայհեղկոմի և սովետական մյուս հանրապետությունների պետական այլ մարմինների միջև համեմատություններ անցկացնելու,



այնպես էլ նրա՝ որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական իշխանության մարմնի էությունը բացահայտելու համար։

Նման հարցադրումը հնարավորություն է ընձեռում նաև լույս սփռել Հայհեղկոմի կազմավորման պրոցեսի վրա։ Պատմա-իրավաբանական գրականության մեջ առաջին հայացքից միանգամայն պարզ այս հարցը, ցավոք, նույնպես ունի իր ստվերոտ կողմերը։

Հայհեղկոմի և Անդրկովկասյան մյուս հանրապետությունների հեղկոմների մասին գրված գրեթե բոլոր աշխատություններում նրանց նշանակովի լինելը կասկածից դուրս է։ Դրանցից յուրաքանչյուրում կարելի է հանդիպել «Հեղկոմները նշանակովի մարմիններ էին» արտահայտությանը։ Ընդ որում, որպես կանոն, «հեղկոմներ» ընդհանուր հասկացությամբ հեղինակներն ընդգրկում են և Հայաստանի Հեղափոխական Կոմիտեն և ՀՍՍՀ տեղական հեղկոմները։ Սակայն օրինական հարց է առաջանում, եթե Հայհեղկոմը եղել է նշանակովի, ապա ո՞վ է նշանակել այդ մարմինը։ Սովետական պետական իրավունքի գիտության մեջ նշանակովիությունը դիտվում է որպես սովետական պետական մարմինների կազմավորման ձևերից մեկը։ Այդ նշանակում է տվյալ պետական մարմնի ստեղծումը մեկ այլ վերադաս մարմնի կողմից։

Նշենք, որ եթե մի պահ համաձայնենք անուղղակի պնդման հետ և գտնենք, որ Հայաստանի հեղափոխական կոմիտեն նշանակվել է պետական իշխանության մեկ այլ մարմնի կողմից, ապա նման հարցադրման դեպքում խոսք անգամ չի կարող լինել նրա՝ որպես սուվերեն հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմնի մասին։ Սակայն, անդրադառնանք ժամանակաշրջանի կոնկրետ փաստերին։ Հայտնի է, որ պետական մարմնի ստեղծմանը (այն նշանակված լինի թե այլ ձևով կազմավորված) պետք է նախորդի համապատասխան պետա-իրավական ակտ։ Հայաստանի հեղկոմի ստեղծման համար իրավական հիմք է հանդիսացել նրա 1920 թ. նոյեմբերի 29-ի՝ «Հայաստանը սոցիալիստական Սովետական հանրապետություն հայտարարելու մասին դեկլարացիան»։ Այդ ակտում խոսք անգամ չկա Հայհեղկոմի նշանակովի լինելու մասին։ Ահա Հայհեղկոմի կողմից հաջորդ օրը հրապարակված մի ուրիշ փաստաթուղթ—նրա ողջույնը Վ. Ի. Լենինին՝ Հայաստանում սովետական իշխանություն հռչակվելու կապակցությամբ։ Ողջույնում կարդում ենք. «Թող հայտնի լինի համաշխարհային հեղափոխության առաջնորդին, որ Դիլիջանի և Ղարվանսարայի շրջանների գյուղացիները, ղայրացած դաշնակցական կառավարության հանցագործ քաղաքականությունից բարձրացրին ապստամբության դրոշը։ Հայաստանի կոմունիստական կուսակցությունն իսկույն ստանձնեց այդ տարերային շարժման ղեկավարությունը և ստեղծեց Հայաստանի ռևկոմ՝ Հայաստանը հայտարարելով Սովետական Սոցիալիստական հանրապետություն»։ Այստեղ էլ խոսք չկա Հայհեղկոմի նշանակովիության մասին։ Հայաստանի հեղափոխական կոմիտեի ոչ նշանակովի լինելու մասին է վկայում նաև նույն օրը նրա հրատարակած դիմումը՝ «Բոլորի՛ն, բոլորի՛ն, բոլորի՛ն, Հայաստանում Սովետական Սոցիալիստական հանրապետություն հայտարարելու մասին» (նույն տեղը, էջ 407—408)։

Հետևաբար, Հայաստանի հեղափոխական կոմիտեի նշանակովիության մասին տեսակետը ոչ միայն հակասում է նրա՝ որպես սուվերեն սովետական սոցիալիստական հանրապետության բարձրագույն մարմնի էությանը, այլև չի համապատասխանում կոնկրետ պատմական փաստերին։ Նման կարևոր

հանգամանքի անտեսումը պետք է բացատրել պատմա-իրավաբանական գրականության մեջ հեղկոմների մասին, ընդհանուր առմամբ, վերացականորեն խոսելու ավանդույթյամբ և նրանց ու սովետների միջև ցայտուն տարբերությունները նշելու մղումով։ Ուստի, զարմանալի չէ, որ «Ի տարբերություն սովետների՝ հեղկոմները նշանակովի մարմիններ են» արտահայտությանը կարելի է հանդիպել ամեն մի քայլափոխի, անկախ այն բանից, խոսքը տեղական հեղկոմներին է վերաբերվում, թե՞ Հայհեղկոմին։ Մինչդեռ, երբ փորձ է արվում երևույթների ուսումնասիրությանը մոտենալ կոնկրետ, ապա դըժվար չէ նկատել նման արտահայտության անվերապահ գործածության անհիմն լինելը։

Միանգամայն այլ բան է, երբ խոսքը բացառապես ՀՍՍՀ տեղական հեղկոմների մասին է։ Այս դեպքում սկզբնական շրջանի համար որոշ վերապահում կատարելով կարելի է խոսել նշանակովիության, որպես նրանց կազմավորման հիմնական սկզբունքի մասին։ Հայհեղկոմը կյանքի է կոչվել ոչ թե մեկ այլ պետական մարմնի ակտի ուժով, այլ դաշնակցական կարգերի դեմ զինված ապստամբության ելած աշխատավորների կամքով, այն ծնունդ է առել որպես այդ ապստամբության կազմակերպման և ղեկավարման մարմին։

Հայհեղկոմի և Անդրկովկասի մյուս հանրապետությունների հեղափոխական կոմիտեների՝ աշխատավորների զինված ապստամբության կազմակերպման և ղեկավարման մարմնից սովետական սոցիալիստական հանրապետության պետական իշխանության բարձրագույն մարմնի վերածվելը պետք է դիտել որպես շարժման, զարգացման և ժամանակի սոցիալ-քաղաքական գործոնների հետ սերտ կապի մեջ գտնվող մի պրոցես։ Այս հարցում անթույլատրելի է ժամանակագրական կայուն պատնեշ կանգնեցնել և գտնել, որ մինչև այսինչ պահը հեղկոմը եղել է զինված ապստամբության կազմակերպման, իսկ դրանից հետո՝ պետական իշխանության մարմին։ Մինչդեռ, պատմա-իրավաբանական գրականության մեջ կարելի է հադիպել նմանօրինակ փորձերի։

Պետք է նկատի ունենալ, որ շահագործողների դեմ վճռական գրոհի ելած աշխատավորների ուժերի կազմակերպման և ղեկավարման մարմինը՝ հեղափոխական կոմիտեն, արդեն իսկ նրանց հեղափոխական իշխանության մարմինն էր և իր մեջ բովանդակում էր նոր հաստատվող պետական իշխանության ապագա մարմնի սաղմերը։ Ապստամբության հաղթանակի շնորհիվ ստանձնելով նորաստեղծ պետական իշխանության բարձրագույն մարմնի ֆունկցիաները, հեղկոմը չդադարեց շարունակվող ապստամբության ղեկավարը լինելուց, այլ իր մեջ հիանալիորեն զուգակցում էր ինչպես նախկին, այնպես էլ նոր ստանձնած ֆունկցիաները։ Ապստամբության վերջնական հաղթանակը բոլոր պայմանները ստեղծեց նրա, որպես պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմնի գործունեության լիակատար դրսևորման համար։

### բ) Հայհեղկոմի կազմում ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհրդի գոյության հարցի շուրջ

ՀՍՍՀ պետական մարմինների ստեղծման և զարգացման պրոցեսն արտացոլող մի շարք սկզբնաղբյուրներ վկայում են Հայհեղկոմի կազմում ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհրդի գոյության մասին։ Նման աղ-



բյուրների սակավաթվությունը և առանձին դեպքերում Հայհեղկոմի պետաիրավական գործունեությունն արտացոլող այլ տեղեկությունների հետ հակասական լինելը դժվարացնում են հստակ պատկերացում կազմել Հայհեղկոմի կազմում եղած ժողովրդական կոմիսարների խորհրդի իրավական վիճակի և գործունեության մասին։

Հայաստանի հեղափոխական կոմիտեի կազմում եղած ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհրդի մասին առաջին աղբյուրը Հայհեղկոմի 1921 թ. հունվարի 21-ի հրամանն է «Ժողովրդական կոմիսարների խորհրդի զբաղմունքների կարգի մասին»[1] (տե՛ս «ՀՍԽՀ Դեկրետների և հրամանների ժողովածու», 1921 թ. պ., 1, էջ 96—97)։ Այս ակտում չի նշվում ժողկոմխորհի ստեղծման փաստը։ Այն ամբողջությամբ նվիրված է վերջինիս գործունեության կարգավորմանը։ Հրամանը մասնավորապես սահմանում է, որ «Ժողովրդական կոմիսարների (կամ տեղակալների) խորհրդի նիստերը տեղի են ունենում ամեն օր...» (նույն տեղը, էջ 96)։

Հրամանը նույն կարգով շրջանցելով ստեղծման հարցը, թվարկում է ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահության լիազորությունները, սահմանում, որ «Խորհրդի նախագահությունը որոշում է՝ արդյոք խնդիրը պիտի քննության ենթարկվի՞ խորհրդի մեջ, թե նախագահության միջոցով» (նույն տեղը, էջ 97)։ «Շտապ հարցերը,— ասված է հրամանում,—տրվում են խորհրդի նախագահությանը անհապաղ վճիռ տանալու համար» (նույն տեղը)։ Հայհեղկոմի հրամանը ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների վրա պարտականություն է դնում իրենց բոլոր հրամանների և որոշումների պատճեններն ուղարկել խորհրդի նախագահությանը։ Ժողովրդական կոմիսարները երկու շաբաթը մեկ անգամ պարտավոր էին խորհրդի նախագահությանը գրավոր զեկուցումներ ներկայացնել իրենց ենթակա կոմիսարիատների գործունեության մասին (նույն տեղը)։

Ժողովրդական կոմիսարների խորհրդի գոյության մասին վկայող մյուս աղբյուրը Հայհեղկոմի գործերի կառավարչության 1921 թ. հունվարի 31-ի № 676 գրությունն է՝ ուղղված ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարներին։ «Նկատի ունենալով ժողկոմխորհի մոտակա նիստը,— ասված է գրության մեջ,—Հայհեղկոմի գործերի կառավարչությունը՝ նախագահի կարգադրությամբ, արանով խնդրում է վաղը ևեթ ներկայացնել այն բոլոր հարցերը, որոնք կոմիսարիատի կողմից դրվելու են ժողովրդական կոմիսարների խորհրդի քննարկմանը» (տե՛ս «ՀՍՍՀ հոկտեմբերյան հեղափոխության և սովետական շինարարության կենտրոնական պետական արխիվ», ֆ. 30/116, ց. 1, Գ. 1, թ. 15)։

Հայհեղկոմի կազմում ստեղծված ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհրդի գործունեության մասին մի այլ, առավել ուղղակի վկայություն կա ՀՍՍՀ Հոկտեմբերյան հեղափոխության և սովետական շինարարության պետական կենտրոնական արխիվի 122-րդ ֆոնդի 1-ին ցուցակի 8-րդ գործում։ Այստեղ կա ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհրդի 1921 թ. փետրվարի 7-ի նիստի արձանագրությունը։ Նիստին նախագահել է Հայհեղկոմի նախագահը։ Քննարկվել են ՀՍՍՀ պետական կյանքի ամենատարբեր բնագավառներին վերաբերվող 12 հարցեր (տե՛ս նշված տեղը, թ. 34—36)։

ՀՍՍՀ ժողկոմխորհի իրավական վիճակի մասին վկայության ենք հանդիպում նաև ՀՍՍՀ Գյուղատնտեսության ժողովրդական կոմիսարիատի կանոնադրության մեջ, որը 1921 թ. ապրիլի 23-ին հաստատվել է Հայհեղկոմի կողմից։ Կանոնադրությունը սահմանում է, որ եթե ՀՍՍՀ գյուղատնտեսության ժո-

*ղովրդական կոմիսարին նշանակում է Հայհեղկոմը (հոդ. 3, նույն տեղը, ֆ. 123, ց. 1, գ. 15, թ. 15, հաջորդ երեսը), ապա վերջինիս առընթեր կոլեգիայի երկու անդամները նշանակվում են ժողովրդական կոմիսարների խորհրդի կողմից (հոդ. 4, նույն տեղը)։*

*Եվ վերջապես, ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի կուսակցական արխիվում պահպանվող իրավական ակտերից մեկը (տե՛ս նշված արխիվը, ֆ. 1, պ. 75, փ. 5, թ. 76), որի տակ ստորագրել են Հայհեղկոմի նախագահը և ՀՍՍՀ սոցիալական ապահովության ժողովրդական կոմիսարը, կրում է «Ժողովրդական կոմիսարների խորհրդի որոշումը» անվանումը։*

*Ի՞նչ հետևություններ կարելի է հանգել այս բոլորից։ Այն, որ՝ ա) Հայհեղկոմի կազմում գործել է ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհուրդը, որի նիստերին մասնակցել են ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարները կամ նրանց տեղակալները, բ) ժողովրդական կոմիսարների խորհրդի և նրա նախագահության իրավասությունն ու գործունեության կարգը սահմանվել են Հայհեղկոմի կողմից, գ) ժողովրդական կոմիսարների խորհրդի նիստերը նախապատրաստվել են Հայհեղկոմի կողմից՝ վերջինիս ապարատի միջոցով, դ) ժողկոմխորհի կողմից ընդունված իրավական ակտերը հրատարակվում էին Հայհեղկոմի կողմից՝ Հայհեղկոմի նախագահի ստորագրությամբ։*

*Հետևաբար, մեր կարծիքով, հանձին Հայհեղկոմի կազմում գործած ժողովրդական կոմիսարների խորհրդի, մենք գործ ունենք ոչ թե ՀՍՍՀ պետական իշխանության և կառավարման ինքնուրույն իրավասությամբ օժտված մարմնի, այլ Հայհեղկոմի գործունեության իրավական-կազմակերպման ձևերից մեկի հետ, մի օղակի, որը կարևոր տեղ է գրավել Հայհեղկոմի՝ որպես ՀՍՍՀ պետական իշխանության բարձրագույն մարմնի իրավասության կենսագործման մեխանիզմում։*

*ՀՍՍՀ պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմնի՝ Հայաստանի հեղափոխական կոմիտեի գործունեության հետագա ծավալումը, նրա կողմից ՀՍՍՀ պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական կյանքի ամենաբազմազան բնագավառներում ծավալվող հասարակական հարաբերությունների նորանոր խմբերին իրավական կարգավորման ոլորտում ընդգրկելը, անշուշտ, տանում էին դեպի նրա գործունեության իրավական-կազմակերպական ձևերի հետագա դիֆերենցիացիա։ Նման պրոցեսը, մասնավորապես, հրամայաբար պահանջում էր ճշգրտել այն տեղը, որ գրավում է ժողովրդական կոմիսարների խորհուրդը ՀՍՍՀ պետական ապարատում։*

*Այս կապակցությամբ, 1921 թ. ապրիլի 29-ին, Հայհեղկոմի և ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհրդի խառը նիստը լսեց Հայաստանի հեղափոխական կոմիտեի և ժողկոմխորհի իրավական փոխհարաբերությունների սահմանազծման հարցը։ Որոշվեց «Հանձնարարել ՀՍՍՀ արդարադատության ժողովրդական կոմիսարիատին՝ մշակել և Հայհեղկոմի նիստին ներկայացնել Հայհեղկոմի և ժողկոմխորհի օրենսդրական փոխհարաբերությունները սահմանազծող դեկրետի նախագիծը»։*

*Սակայն, դեկրետի այդ նախագիծը Հայհեղկոմում չքննարկվեց, քանի որ շուտով Հայաստանի հեղափոխական կոմիտեն ինքը վերակազմվեց՝ ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհրդի։*



## գ) Հայաստանի հեղափոխական կոմիտեի վերակազմվելը ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհրդի

*1921 թ. մայիսի 18—19-ին Հայաստանի Կոմունիստական Կուսակցու-
թյան Կենտրոնական կոմիտեի պլենումը քննարկեց ՀՍՍՀ կառավարության
կառուցվածքի հարցը։ Պլենումը հաստատեց ՀՍՍՀ հեղափոխական կոմիտեի
նոր կազմը, որի մեջ մտան Հայհեղկոմի նախագահը, որը միաժամանակ ՀՍՍՀ
ռազմական գործերի ժողովրդական կոմիսարն էր և տասներկու անդամներ
(որոնցից մեկը ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության խորհրդի նախագահն էր,
մյուսները՝ ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարներ)։
Կուսակցության կենտրոնական կոմիտեի պլենումը միաժամանակ հաս-
տատեց Հայհեղկոմի նախագահության նոր կազմ, բաղկացած Հայհեղկոմի
նախագահից և նախագահության չորս անդամներից։ Անդրադառնալով հան-
րապետության պետական իշխանության և կառավարման բարձրագույն
մարմնի անվանման հարցին, պլենումը որոշեց՝ «...անվանումը թողնել
նույնը՝ «ՀԵՂԿՈՄ» (տե՛ս «ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստ.
Հայկական ֆիլիալի Կենտրոնական Կուսակցական արխիվ», ֆ. 1, ց. 1, պ. մ.
13, փ. 2, թ. 1—2)։
Երկու օր հետո, մայիսի 21-ին, առանց որևէ նոր փոփոխություն մտցը-
նելու իր կառուցվածքի և կազմի մեջ, Հայհեղկոմն իր իսկ որոշմամբ վերան-
վանվեց ՀՍՍՀ ժողովրդական Կոմիսարների խորհուրդ։
Կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի ձեռնարկած
այս միջոցառման նպատակն էր բարելավել հանրապետության պետական
իշխանության և կառավարման բարձրագույն մարմնի կազմը, հստակություն
մտցնել նրա կառուցվածքի և գործունեության իրավական-կազմակերպական
ձևերի մեջ և դրանով իսկ օգնել նրան իր առաջ դրված մեծ ու պատասխանա-
տու խնդիրների լուծման գործում։
Ընդգծելով կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի
կողմից ՀՍՍՀ պետական իշխանության բարձրագույն մարմնի կազմակեր-
պական ամրապնդման ուղղությամբ ձեռնարկած այս միջոցառման կարևոր
նշանակությունը, չի կարելի աչքաթող անել այն հանգամանքը, որ դրանով
որևէ սկզբունքային փոփոխություն չմտցվեց այդ մարմնի կազմավորման
կարգի և իրավական վիճակի մեջ։ Հայաստանի հեղափոխական կոմիտեի
նման ՀՍՍՀ ժողովրդական Կոմիսարների Խորհուրդը շարունակում էր մնալ
որպես հանրապետության պետական իշխանության ոչ-ընտրովի ներկայա-
ցուցչական բարձրագույն մարմին և, որպես այդպիսին, առաջնահերթ խըն-
դիր ուներ ամենամոտիկ ապագայում կազմակերպել և անցկացնել ՀՍՍՀ պե-
տական իշխանության ընտրովի-ներկայացուցչական մարմինների, ՀՍՍՀ
բանվորների, գյուղացիների և կարմիրբանակայինների պատգամավորների
սովետների ընտրությունները և այդ սովետների համահայաստանյան մար-
միններին հանձնել իր լիազորությունները։
Թերևս անհրաժեշտություն չէր լինի նման մանրամասնությամբ նկարա-
գրելու Հայհեղկոմի՝ ՀՍՍՀ ժողկոմխորհի վերակազմվելու այս միանգամայն
դյուրըմբռնելի պրոցեսը, եթե գրականության մեջ այս հարցի կապակցու-
թյամբ առաջ քաշված չլիներ մեկ այլ՝ տրամագծորեն հակադիր տեսակետ։
Այսպես, Ա. Ս. Փարեմուզյանն իր* Բանվորների, գյուղացիների և զինվորնե-
րի դեպուտատների սովետների կազմակերպումը Հայաստանում (1921—

1922 թթ.) հոդվածում, անդրադառնալով այս հարցին՝ գրում է, որ «1921 թ. մայիսից հետո, երբ լիկվիդացվեց Հայաստանի ռևկոմը և կազմակերպվեց ՀՍԽՀ Ժողկոմխորհ՝ իր առանձին կոմիսարիատներով, ստեղծվել էր այնպիսի դրություն, երբ կենտրոնում արդեն կար կազմակերպված և խաղաղ շինարարության անցնելու համար նպատակահարմար սովետական պետական ապարատ, իսկ գավառում, գավառամասերում և գյուղերում դեռևս գործում էին ռևոլյուցիոն կոմիտեները։ Կենտրոնում նոր ապարատի կազմակերպումը և ստորին օղակներում պետական իշխանության հին օրգանների գոյությունը, անկասկած խանգարում և հնարավորություն չէր տալիս ինչպես ՀՍԽՀ Ժողկոմխորհին, նույնպես և նրա կոմիսարիատներին՝ ծավալուն կերպով անցնելու նոր խնդիրների իրագործմանը». (տե՛ս նշված աշխատությունը—էջ 14, ընդգծումները մերն են՝ Վ. Ն.)։

Եթե նույնիսկ մի պահ անուշադրության մատնենք հեղինակի՝ ՀՍՍՀ տեղական հեղկոմները սովետական պետական ապարատի օղակներ չհամարելու և դրանք՝ որպես «պետական իշխանության հին օրգանների» ՀՍՍՀ Ժողկոմխորհին և ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարներին՝ որպես «սովետական պետական ապարատի» հակադրելու ոչնչով չհիմնավորված դրույթը, ապա միանգամայն ակներև է, որ հեղինակը շփոթում է սովետական պետական իշխանության մարմինների ընտրովի-ներկայացուցչական լինելու և ժամանակավորապես այդպիսին չլինելու սկզբունքային հարցը այդ մարմինների կառուցվածքային վերակազմավորման հարցի հետ։ Այդ շփոթը նրան բերում է այն համոզման, թե իբր «լիկվիդացման» ու կազմակերպման» շնորհիվ ՀՍՍՀ պետական իշխանության ու կառավարման կենտրոնական մարմինները դարձան «սովետական» (իսկ մինչ այդ ի՞նչ էին), մինչդեռ տեղերում մնացին պետական իշխանության «հին մարմինները»։

Սոցիալիստական հեղափոխության շնորհիվ Հայաստանում հաստատված բանվոր-դասակարգի և նրա կողմից գլխավորվող աշխատավոր գյուղացիության դասակարգային կամքն արտահայտող սովետական պետական իշխանությունն իր ժողովրդային, աշխատավորական բնույթով այնպիսին էր, որ անպայմանորեն պետք է տաներ և տարավ դեպի այդ իշխանության կենսագործման լավագույն քաղաքական ձևի՝ ՀՍՍՀ բանվորների, գյուղացիների և կարմիր բանակայինների պատգամավորների սովետների ստեղծումը։ Երկրում տիրող պատմական, տնտեսական և քաղաքական մի շարք գործոնների ազդեցության հետևանքով ՀՍՍՀ սովետական պետական իշխանության ընտրովի-ներկայացուցչական մարմինները կյանքի կոչվեցին ոչ թե Հայաստանում սովետական իշխանության հռչակման առաջին օրվանից, այլ ավելի ուշ։ Հարկ եղավ, որպեսզի պատմական մի կարճատև ժամանակաշրջանում ՀՍՍՀ պետական իշխանության կենսագործման խնդիրները ժամանակավորապես իրենց վրա վերցնեն աշխատավորների հեղափոխական պայքարի կազմակերպման և ղեկավարման մարմինները և աշխատավորների դասակարգային շահերին լիովին համապատասխան իրականացնեն՝ սովետական պետական իշխանության ընտրովի-ներկայացուցչական մարմինների ստեղծման համար, կազմակերպեն և անցկացնեն վերջիններիս ընտրությունները։



# ԴԱՍԱԳԻՐՔՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ Է

«Լենինյան ուղիով» ամսագրի 1966 թվականի № 10-ում տպագրված «Հայ գրականությունը դպրոցում» իր հոդվածում ընկ. Ռ. Աթայանն իրավամբ գտնում է, որ հայ գրականության ավանդման ներկայիս վիճակը մեր շատ դպրոցներում դեռևս բավականին հեռու է բավարար լինելուց։ Մեր կարծիքով այդպիսի վիճակը ո՛չ միայն հոդվածում քննարկված, այլև շատ այլ պատճառների արդյունք է։ Սակայն դժվար է համաձայնել նրա մի քանի հարցադրումների հետ։

Ըստ Աթայանի գրականության ավանդման ժամանակ ավելի կարևորություն պետք է տալ ոչ թե գաղափարական բովանդակությանը (ի՞նչ է ուզում ասել հեղինակը), այլ երկի յուրահատկությանը՝ լեզվի, ոճի, պատկերների, արտահայտչական միջոցների, տրամաբանական կառուցվածքի, հոգեբանական բախումների վերլուծման միջոցով։ Դժվար է հավատալ, թե ընկ. Աթայանը մոռանում է, որ իր թվարկածները միջոց են գաղափարը մարմնավորելու համար, դրանք ձև են, որոնցով դրսևորվում է բովանդակությունը։

Ինքը՝ հոդվածագիրն էլ, որևէ գեղարվեստական երկ վերլուծելիս առյուծի բաժինը չէր հատկացնի լեզվին, ոճին, պատկերներին, արտահայտչական միջոցների յուրահատկությանը, ինքնատիպությանը և միայն հարևանցի կանդրադառնար գաղափարական բովանդակությանը։ Գեղարվեստը, ընդհանրապես և գրականությունը, մասնավորապես, գեղեցիկ ճաշակ կրթելուց, աշակերտների լեզուն հարստացնելուց, նրանց բանավոր ու գրավոր խոսքի մշակույթը զարգացնելուց զատ ունի ավելի կարևոր մի նպատակ—ծառայելու այդ ամենը նոր սերնդի բարոյահոգեկան ու գաղափարական դաստիարակության գործին, թերևս միայն այս տեսակետից ճիշտ են և՛ դասագրքերը, և՛ բոլոր այն ուսուցիչները, որոնք շեշտը դնում են երկի գաղափարական բովանդակության վրա։

Հոդվածի հեղինակն առաջարկում է գրականության տեսության (գրականության պատմության) դասավանդումը փոխարինել գրական ընթերցանությամբ։

Ճի՞շտ է արդյոք կարծել, թե ամեն մի միջակ աշակերտ մեկ անգամ
կարդալով, ինքնուրույն կարող է բացատրել Թումանյանի Գիքորի «գաղա-
փարական բովանդակությունը» կամ Հառաչանք պոեմի բարոյախոսությունը.
ուշադրություն դարձրեք՝ «գաղափարական բովանդակությունը» հոդվածա-
գիրն առնում է չակերտների մեջ, որ կնշանակի, թե դասագրքում այդպես է,
և դա շաբլոն է, մինչդեռ ինքը Հառաչանքը համարում է «բարոյախոսական»։
Գրականության չոր ու ցամաք դասավանդման պատճառը, մեր համոզ-
մամբ, միայն ծրագրերն ու դասագրքերը չեն, որոնք հարմարեցված են
մեկը մյուսին (այդ բնական է), բայց ոչ դպրոցի նպատակներին (որը խիստ
անբնական է)։ Նման վիճակի հիմնական պատճառը մենք համարում ենք
նյութը հրամցնելու և յուրացումն ստուգելու՝ ուսուցչի մեթոդը։
Ճշմարիտ է, որ աշակերտներից շատերը գեղարվեստական երկը կար-
դալու փոխարեն գերադասում են սերտել դասագրքում տրված (հաջող թե
անհաջող, դա արդեն այլ հարց է) վերլուծությունը։ Եվ այդ է պատճառը, որ
ընկ. Աթայանը գտնում է, որ դպրոցում չպետք է անցնեն գրականության
պատմություն, այլ՝ գրականություն, իբրև այդպիսին, և առաջարկում է դպրոց-
ների համար հրատարակել գրականության քրեստոմատիաներ, ուր պետք է

զետեղվեն ոչ թե ամբողջական երկերը, այլ հատվածներ: Քանի որ դպրոցա-
կան ծրագրով նախատեսվող գրեթե բոլոր երկերը մի քանի անգամ են հրատա-
րակվել, մեր կարծիքով հարկ չկա վերադառնալու քրեստոմատիաներին:
Գրականության, և ոչ միայն գրականության, դասավանդման ծանր վի-
ճակի հիմնական պատճառը մենք համարում ենք հոգեբանական փորձով հաս-
տատված մանկավարժական մեթոդների բացակայությունը:
Հնարավո՞ր կլինի արդյոք միանգամից փոխել դրությունը, եթե գրակա-
նության պատմության փոխարեն դպրոցում անցնենք գրականություն,
ունենանք ամենահաջող դասագրքեր ու քրեստոմատիաներ. հավանաբար
վիճակը չի փոխվի, եթե ուսուցիչները շարունակեն դասը վարել այնպիսի
մեթոդներով, որոնք աշակերտների ինքնուրույն մտածողությունն ու հետա-
քրքրասիրությունը խթանելու փոխարեն նրանց մեջ մեռցնում են ինքնու-
րույն դատողություններ անելու համարձակությունը, վերջիններս վարժվում
են լսածն ու կարդացածը անվերապահորեն ընդունելուն, նույնությամբ կրկ-
նելուն: Ներկայումս բարձր դասարանների երեք դասագրքերում էլ գեղար-
վեստական երկերի վերլուծության մեջ համաչափությունը խախտված է և միշտ
ի վնաս լեզվի, ոճի, արտահայտչական միջոցների, կերպարների տիպա-
կանացման և, ընդհանրապես, գեղարվեստական կողմի: Այսպիսի բացը ոչ
բոլոր ուսուցիչները և ոչ միշտ կարող են լրացնել:
Մեր կարծիքով դասագրքի լինել թե չլինելու հարցը չպետք է ծագի:
Դասագիրք միշտ էլ պետք է, կարևորն այստեղ այն է, թե ինչպիսի: Դասա-
գիրքը ուղեցույց պետք է լինի թե՛ աշակերտի և թե ուսուցչի համար: Իսկ
«գործող» դասագրքերը, թերություններով հանդերձ, համապատասխանում
են այս պահանջներին: Կա նաև շատ կարևոր մի հանգամանք, որը երբեք
չպետք է վրիպի մեր ուշադրությունից. ինչպե՞ս անել, որ աշակերտները
նախ՝ կարդան գեղարվեստական երկը, ապա՝ դասագիրքը:
Այստեղ ավելի մեծ ու կարևոր են ուսուցչի անելիքն ու դերը, քան դա-
սագրքերինը:
Բազմիցս ու բազում առիթներով խոսվել է ուսուցիչների ծանրաբեռն-
վածության մասին (դրա հետ կապված և վարձատրության), սակայն դրու-
թյունը գրեթե ոչնչով չի փոխվել:
Հայտնի է, որ ֆիզկուլտուրայի, աշխարհագրության, պատմության,
բնագիտության, գրականության ուսուցիչների դրույքները սահմանվում են
համաչափ դասաժամերից, առանց հաշվի առնելու, որ գրականության դա-
սատուն 34—35 շարադրություն ստուգելու համար լրացուցիչ պետք է նստի
առնվազն 4—5 ժամ, իրազեկ լինի ժամանակակից գրականության նորու-
թյուններին: Տարօրինակ, անարդարացի հավասարություն:
Ի դեպ, կարծում ենք, ժամանակն է մտածելու դասարանական կոլեկ-
տիվները փոքրացնելու մասին: Այժմ, իսկ հետագայում ավելի ևս, կլինեն
անհրաժեշտ պայմաններ աստիճանաբար դասարանական կոլեկտիվները
20—25 աշակերտից կազմելու համար: Բայց քանի որ այդ դեռևս բարի ցան-
կություն է միայն, ապա, ուրեմն, կարելի է և պետք է 25-ից ավելի աշա-
կերտներ ունենալու դեպքում գրականության ու հանրահաշվի դասերին դա-
սարանը բաժանել երկու խմբի:
Ընկ. Աթայանը գտնում է, որ գրականության տեսության ուսուցումը
դպրոցից պետք է հանվի և դառնա բուհերի համապատասխան ֆակուլտետ-
ների մենաշնորհը:



Նախ՝ նման պահանջ կարելի է ներկայացնել գրեթե բոլոր առարկանե-
րի (մաթեմատիկա, ֆիզիկա, քիմիա և այլն) գծով, և երկրորդ՝ այդ այդպես
էլ կա, որովհետև դպրոցում գրականության տեսությունը, ինչպես և մայրե-
նի լեզուն ուսուցվում են ոչ այնպիսի խորությամբ, ծավալով և բարդությամբ,
ինչպես բուհի համապատասխան ֆակուլտետում: Համամիտ լինել նման
կարծիքի չենք կարող, որովհետև ամեն մի զարգացած մարդ, ինչպիսի
մասնագիտություն էլ ունենա, պետք է ծանոթ լինի մայրենի լեզվին ու
գրականությանը:
Հայտնի է, որ վերջին տարիներս բուհերում ընդունելության քննություն-
ներին այլ մասնագիտությունների համար հայոց լեզուն և գրականությունը
համարվում են ոչ պրոֆիլային առարկա: Այս «ոչ պրոֆիլային» հասկացության
հետևանքով հայոց լեզուն քննությունների ցուցակում դրվեց վերջում՝ պրո-
ֆիլային առարկաներից հետո: Դրա հետևանքով լեզվի և գրականության
քննությունը դառնում է ձևական: Մենք դեմ ենք մայրենի լեզուն ու գրականու-
թյունը ոչ պրոֆիլային համարելուն:
Ավելին, քանի որ տեխնիկական և այլ մասնագիտական բուհերում
այլևս չեն ուսումնասիրում այդ առարկան, ուստի, դրա քննությունը, որպես
վերջին ստուգում, պետք է անցկացվի ավելի խորությամբ ու լրջությամբ, քան
մասնագիտական առարկաներինը, որոնց պակասը լրացվելու է հետագա
ուսուցման ընթացքում:

ԾԱՏՈՒՐՅԱՆ Բ. Մ.
Համալսարանի մանկավարժության և
հոգեբանության ամբիոնի դիսերտանտ

## ՊԱՏՃԱՌ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

Լիովին համամիտ ենք ծրագրերի ու դասագրքերի առթիվ ընկեր Աթա-
յանի հայտնած կարծիքին, թե VII—VIII, ինչպես և բարձր դասարանների
ծրագրերի ժամանակագրական հաջորդականության կարգը անհեթեթություն
է: Մեր կարծիքով, ծրագրերի վերակառուցման պրոցեսում պետք է նկատի
առնվեն հետևյալ սկզբունքները.
ա) Վերացնել թեմատիկ կրկնությունները:
բ) Խախտել ժամանակագրական հաջորդականությունը, հիմնվելով
պարզից, հստակից դեպի բարդը, դժվարինը սկզբունքի վրա, նկատի ունե-
նալով տարիքային առանձնահատկությունները: Այս դեպքում հնարավոր
կլինի դժվարամարս շատ թեմաներ անցնել ոչ թե VII, այլ բարձր դասա-
րաններում:
գ) Որքան հնարավոր է հեշտացնել, կամ ուղղակի վերացնել ակնարկա-
յին թեմաները, որոնք իրենց էությամբ, մանավանդ արծարծած հարցերի
ծավալով, չեն համարեցված դասագրքերին. Թերևս դասագրքերը պետք է
կազմվեն ծրագրերի պահանջից ելնելով:
Ակնարկային թեմաները, առավել կարևոր հանգուցային հարցերը կա-
րելի է ուսումնասիրել այս կամ այն գրողի կյանքի և գրական գործունեու-
թյունն անցնելիս: Առաջարկում ենք ծրագրերը կազմելիս անցյալի կլասիկա-
յի լավագույն գրողների հետ միասին մեծ տեղ հատկացնել սովետական ժա-
մանակաշրջանի նշանավոր գրողների երկերին:

*Որպեսզի ծրագրերի ու դասագրքերի միջև հակասություն չլինի, ականավոր գիտնականներից՝ լեզվաբաններից ու գրականագետներից, հոգեբաններից ու շարքային լավագույն ուսուցիչներից պետք է ստեղծել հեղինակային կոլեկտիվ, նոր ծրագիր և դասագրքեր կազմելու համար։*

ԱՎԵՏԻՍՅԱՆ Ա.
Սիսիանի ժողկրթբաժնի դպրոցական տեսուչ

# ԴԱՍԱԳԻՐՔՆ ՈՒՂԵՑՈՒՅՑ Է

*Ամեն մի առարկա ունի իր ծագման ու զարգացման պատմությունը, բայց ոչ մի առարկայի պատմություն չի դրվում դպրոցական ծրագրում, բացի գրականության պատմությունից։ Ցավոք, գրականության դպրոցական ծրագիրը չի ընդգրկում նրա բաղկացուցիչ մասերի որոշակի ստորաբաժանումները, որը, մեր կարծիքով, մեծ դժվարություն է հարուցում գրականության լիարժեք դասավանդման գործում։*

*Գրականության միևնույն թեմաների հաջորդական կրկնությունը՝ նախորդից հաջորդ դասարաններում, ձանձրացնում է աշակերտներին, տեղ չի թողնում գրական թարմ ու բազմազան թեմաների համար։ Չի արդարացվում մանկավարժորեն ոչ ճիշտ՝ «լայնացնելու ու խորացնելու» կոնցենտրիկ մեթոդը, որի սկզբունքով կազմված են մեր ծրագրերն ու դասագրքերը։*

*Չնայած այդ ամենին, մեր կարծիքով, գրականության դասագիրքն անհրաժեշտություն է. այն կազմելիս, ո՛չ միայն պետք է նկատի ունենալ աշակերտների տարիքային ու դասարանական առանձնահատկությունները, այլև ընդգրկել գրականության պատմական զարգացման էտապները, գրական մեթոդներն ու հոսանքները, իրենց ժամանակի համար առաջնակարգ գրողների կյանքն ու նրանց ստեղծագործությունների ընդհանուր բնութագիրը։ Դասագրքերում չպետք է վերլուծվեն հեղինակների երկերն ու կերպարները։*

*Գրականության պատմության դասընթացի շարադրանքը պետք է լինի պարզ, աշակերտությանը մատչելի։ Լավ կլինի դպրոցների համար հրատարակել ծրագրով նախատեսված հեղինակների ընտիր գործերի ժողովածուներ, կամ ալմանախ։ Գրականության լավ դասագիրքն ու ճշգրիտ ծրագիրը ուղեցույց են և՛ ուսուցչի, և՛ աշակերտի համար։*

*Դասագիրք կազմողները պետք է բացահայտեն ամեն մի գրողի առանձնահատուկ կողմերը. չէ՞ որ յուրաքանչյուր տաղանդավոր գրող անկրկնելի է, իսկ համանման էպիզոդներն ու որակավորումը մի մասշտաբի տակ են դնում ամենքին։ Դասագրքերում ինչպես հարկն է չի պարզաբանված գրողների կրած ազդեցությունների հարցը։ Մի գրողը մյուսից կարող է ստանալ հոգեկան մղում, բայց նրա գրական ստեղծագործությունն ունենա այլ որակ, այս ևս գրական ազդեցություն չէ։ Գաղափարական ազդեցությունը չի կարելի նույնացնել գրական ազդեցության հետ։ Հակոբ Հակոբյանը Ստ. Շահումյանից կրել է գաղափարական ազդեցություն, բայց ոչ գրական։*

*Մի կարևոր հարց ևս, որ մեր դասագրքերի թերություններից է։ Դասագրքերում երբեմն թվարկվում է գրողների ստեղծագործությունների ժամանակագրական հաջորդական շարքը, որի ժամանակ հիմնականում ուշադրություն է նվիրվում հեղինակների գաղափարական հասունացման և ոչ թե նրանց գրական վարպետության աճին։*



*Համամիտ չենք ընկ. Աթայանի այն մտքին, թե գրականության պատմությունը պետք է հանել միջնակարգ դպրոցից, այն համարելով «մասնագիտական ուսումնասիրության առարկա», որը պետք է սովորել բուհերում։*

*Մի քանի նկատառումներ գրականության ուսուցչի մասին։ Գրականության ուսուցչի դերը ավելի մեծ է, քան պատրաստի ծրագրերինն ու դասագրքերինը։*

*Գրականության ուսուցիչը պետք է կարողանա ընկալել գրական երկի թովչանքը, գեղագիտական նրբերանգները, խորապես ըմբռնելով երկի գաղափարական բովանդակությունն ու արժեքը, կարողանա այնպես հաղորդել այդ ամենը, որ աշակերտները սիրեն գրականությունը, գիտակցեն նրա մեծ նշանակությունը մարդու բարոյական դաստիարակության գործում։ Ինչպես Աթայանն է ասում՝ ուսուցիչը պետք է ունենա «գրականագիտական հատուկ պատրաստականություն»։ Ուսուցիչը չպետք է կրկնի այն, ինչ շարադրված է դասագրքում։ Իր անձնական օրինակով նա պետք է տրամադրի աշակերտին ինքնուրույն մտածելու, որը խիստ անհրաժեշտ է մարդուն։ Շատ կարևոր է ուսուցչի բառապաշարը՝ մեր լեզվի հանդեպ հետաքրքրասիրություն հարուցելու առումով, մեծ են նրա անելիքները աշակերտների բառապաշարը հարստացնելու ուղղությամբ։*

*Սակայն ծրագրերի ծանրաբեռնվածությունը, դասաժամերի անբավարարությունը թույլ չեն տալիս կատարելու բառարանային աշխատանք։*

*Գրականության ավանդման մեթոդական միօրինակությունը, մակերեսայնությունը մարում են աշակերտների հետաքրքրասիրությունը գրականության հանդեպ։ Գրքերի հաճախակի քննարկումները, գրական բանավեճերն ու երեկոները կօգնեն աշակերտներին՝ արտահայտիչ, բնական ու գեղեցիկ արտասանելու, ինքնուրույն մտքեր արտահայտելու, կնպաստեն նրանց բնածին ձիրքերի զարգացմանը, որը շատ կարևոր է մեր գրականության ապագա զարգացման համար։*

ՄԱՆՈՒԿՅԱՆ Գ. Մ.
Մարտունու շրջան, Վարդենիկի
միջնակարգ դպրոցի ուսուցիչ

# Գիտությունը և կյանքը

## ԲՈՒՍԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԻ ՊՈՏԵՆՑԻԱԼ ԿԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՄԱՐԴԿԱՆՑ ՍՆՈՒՑՈՒՄԸ

Դարեր շարունակ մարդկությանը հուզել է բուսական աշխարհի պոտենցիալ կարողությունների և մարդու սնուցման պահանջների բավարարման հետաքրքրական հարցը: Պրպտել, որոնել, նորանոր միջոցներ է գտել մարդը սնունդը ավելի բազմազան, բարձրորակ, նոր ժամանակներին հարմարեցնելու մղումով: Այդ հարցերը առավել հետաքրքրում են այժմ՝ գիտության ու տեխնիկայի արդի զարգացման ժամանակաշրջանում:

Մինչև բուն նյութին անցնելը մեզ անհրաժեշտ է մի փոքր շեղվել հիմնական նյութից և մտովի տեղափոխվել մարդկության պատմության անցյալ դարաշրջանները՝ նույնիսկ մի քանի հազարամյակ առաջ: Երկրագնդի այժմյան անապատային շատ մասերում հայտնաբերվել են երբեմնի ծաղկող քաղաքի բեկորների մնացորդներ՝ ծածկված ավազուտներով: Ստույգ ապացույցներ կան նույնիսկ ամբողջական ազգերի անհետացման մասին՝ իրենց բարձր կուլտուրայով հանդերձ: Դրա հիմնական պատճառներից մեկը երկրագնդի այս կամ այն կոնկրետ հողակտորի բերքատվության և մարդկանց պահանջմունքների միջև եղած անհամապատասխանությունն է, որն այժմ համաշխարհային մասշտաբով անհանգստացնում է մարդկությանը, և զուր չէ այդ անհանգստությունը:

Գիտնականների բազմաթիվ ուսումնասիրությունները, հասարակական գործիչների հաղորդումները ցույց են տալիս, որ երկրագնդի որոշ վայրերում հողի կոնկրետ պտղաբերության և մարդկանց սնուցման պահանջմունքների միջև նկատվում է բացահայտ ճեղքման վտանգ:

Թերևս քչերը կարողանան պատասխանել՝ ի՞նչ է սպասում մարդկությանը 2000 թվականին, ինչպե՞ս կընթանա կյանքը հետագա ատոմային նոր էպոխայում: Երկրագնդի բնակչությունը բավականին արագ է աճում, մինչդեռ հողի բերքատվությունը կարծես մնում է նույնը: Կարո՞ղ է արդյոք հողը բավարարել օրեցօր աճող բնակչության՝ սննդամթերքի հարաճուն պահանջները:

Իմպերիալիզմի քարոզիչներն այս հարցին պատասխանելու համար մշակել են հատուկ տեսություն՝ Մալթուսի ուսմունքը, ըստ որի աշխատավորների աղքատությունը կապիտալիզմի օրոք բնության օրենքների ներգործության, այլ խոսքով՝ երկրի բացարձակ գերբնակության արդյունք է: Նրանք



առաջադրում են բնակչության թիվը կրճատելու մի շարք ռեակցիոն միջոցառումներ՝ արդարացնելով ագրեսիվ պատերազմները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները մերկացրել են մալթուսականության սնանկությունը, ցույց տվել, որ բնակչության աճը պայմանավորված է ոչ թե բնության օրենքներով, այլ հասարակական օրենքների զարգացմամբ: ՆՐԱՆՔ ՀԱՍՏԱՏԵԼ ԵՆ, ՈՐ ՄԱՐԴԸ ԲՈԼՈՐ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ՈՒՆԻ ԲԱՎԱՐԱՐԵԼՈՒ ԻՐ ՍՆՈՒՑՄԱՆ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԸ:

Մարդկանց թիվը մեր մոլորակում գնալով մեծանում է: Այսպես՝ XX դարի 20—30-ական թվականների ընթացքում երկրագնդի բնակչությունն ավելացել է 11, իսկ 1951-ից մինչև 1960 թվականն ընկած տասնամյակում՝ 19 տոկոսով: Այժմ արդեն երկրագնդի բնակիչների թիվն անցնում է 3 միլիարդից: Միավորված ազգերի կազմակերպության տվյալներով երկրագնդի բնակչության թիվը 1975 թվականին կհասնի մոտ 4, իսկ 2000 թվականին՝ 6 միլիարդի: Մեզ մոտ՝ Հայաստանում, բնակչության ընդհանուր թիվը սովետական իշխանության տարիներին ավելացել է մոտ երեք անգամ, հասնելով 2,3 միլիոնի: Ներկայումս բնակչության տարեկան աճը հասնում է 2,7 տոկոսի, որը համարյա 1,5—2 անգամ գերակշռում է համաշխարհային միջին ցուցանիշը: Հետևաբար Հայաստանի բնակչությունն իր բնական աճի շնորհիվ 2000 թվականին կհասնի մոտ 4,5 միլիոնի, իսկ եթե այդ թվերին գումարենք նաև այլ հանրապետություններից ու պետություններից աստիճանաբար ներգաղթող մեր հայրենակիցներին, ապա այդ թիվը հավանաբար կանցնի 5 միլիոնից:

Այդպիսի թվով մարդկանց սնելու համար անհրաժեշտ կլինեն երկու անգամ ավելի շատ կենսամիջոցներ, քան այժմ հայթայթվում են բնությունից: Հնարավո՞ր է այդ: Հնարավոր է, պատասխանում է գիտությունը: Ինչպե՞ս են ստեղծվում երկրագնդի սննդամիջոցները: Դրանք բուսական աշխարհի կենսագործունեության արգասիք են, որոնք 99 տոկոսով նպաստում են օրգանական նյութերի ստեղծմանը՝ ինչպես ցամաքում, նույնպես և օվկիանոսում: Միայն մեկ տարում աշխարհում սինթեզվում է մոտ 375 միլիարդ տոննա օրգանական նյութ: Երբեք չպետք է մոռանալ, որ անասնապահական մթերքների արտադրությունը լրիվ կախված է բուսական աշխարհի հարստությունից:

Հողի բերքատվությունը կարելի է բարձրացնել՝

1. Բերքատվության բարձրացման՝ գիտությանը հայտնի բոլոր ուղիների կիրառմամբ, մասնավորապես բույսերի ֆոտոսինթեզի ակտիվությունը բարձրացնող արդյունավետ միջոցառումների մշակմամբ, ցածր տրանսպիրացիոն գործակցով օժտված, օդի խոնավություն և ազոտ կլանող բույսերի ընտրությամբ, հիդրոպոնիկ սարքավորումների գործադրմամբ և այլն:

2. Գենետիկայի և սելեկցիայի նվաճումների հիման վրա ստացված բարձր բերքատու սորտերի, անասունների լավագույն ցեղերի բուծման ու հետագա ընտրության միջոցով:

3. Հողերի բերրիությունն ապահովող՝ օրգանական ու հանքային պարարտանյութերի, հակաէրոզիոն միջոցառումների կիրառմամբ: Պայքարը հողմնահարության և ջրային էրոզիայի դեմ համաժողովրդական մեծ գործ է: Դրանով է պայմանավորված գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու համախառն բերքի ավելացումը: Այդ նպատակով էլ նախատեսվում է ՍՍՀՄ-ում 1968—1970 թթ. ստեղծել 324 հազար հեկտար դաշտապաշտպան

անտառաշերտեր, անտառապատել ձորակները, փոսորակները, ավազուտները (827 հազար հեկտար), տեռասավորել զառիթափ լանջերը (89 հազար հեկտար), ստեղծել հակաէռոզային հիդրոտեխնիկական և հեղեղապաշտպան կառուցվածքներ՝ 188 միլիոն ռուբլի նախահաշվային արժեքով։

4. Ծովերի և օվկիանոսների սննդային հարստությունների լայն օգտագործմամբ. առայժմ օգտագործվում է այդ հարստությունների 10 տոկոսը միայն։

5. Հացահատիկի և գյուղատնտեսական այլ կուլտուրաների բերքը վնասատուներից, հիվանդություններից և կրծողներից պաշտպանելու, դրանց դեմ արդյունավետ պայքար կազմակերպելու միջոցով (այդ կորուստները կազմում են ամբողջ բերքի $1/3$, իսկ երբեմն նույնիսկ $1/2$ մասը)։

6. Բնության արհավիրքների՝ ցրտահարության, մրրիկների, կարկտահարման, երաշտի, խորշակի դեմ պայքարելու միջոցով։ Մեր ժամանակներում ստեղծվել են բնության վերափոխման այնպիսի համարձակ նախագծեր, ինչպես՝ հյուսիսային գետերի ընթացքի հարմարեցումը հարավի անջրդի շրջաններին, ծովային ցուրտ ու տաք հոսանքների ուղղությունը փոխելը, մառախուղի և ամպերի վրա ակտիվ ներգործելու շնորհիվ եղանակը ղեկավարելու փորձերը։

7. Նյութատեխնիկական բազայի ստեղծմամբ և կոմպլեքսային մեքենայացման արմատավորմամբ։

8. Ջրի նպատակահարմար օգտագործմամբ։ Ջուրը բույսերի և կենդանիների կենսագործունեության կարևորագույն գործոնն է. ջրապահովվածության տեսակետից երկրագունդը բաժանվում է երկու մարզի՝ ջրով ապահովված և ոչ լրիվ ապահովված կիսաչոր և չոր պայմաններ։

Եթե նկատի ունենանք, որ երկրագնդի ընդհանուր մակերևույթը կազմում է մոտ 83 միլիոն քառակուսի կիլոմետր, ապա միայն չոր և անապատային հողերը կկազմեն 35 տոկոս։ Չորային են կոչվում այն երկրները, որտեղ մեկ տարվա մթնոլորտային տեղումների ընդհանուր քանակը չի անցնում 500 մմ-ից. անապատային երկրներում այն հասնում է 200 մմ-ի։ Չորային երկրներում մեծ տարածություն են գրավում նաև աղուտները։ Չորային պայմաններում ցածր է բուսականության բերքատվությունը, ավելի դժվար անասնապահության զարգացման գործը։

Ջուրը բերքատվության բարձրացման ամենակարևոր լծակն է։ Հայկական ՍՍՀ պայմաններում, ուր հողերի մեծ մասը չորային է, առանց ոռոգման համարյա թե հնարավոր չէ երկրագործական աշխատանքը։ Սակայն ոչ ռացիոնալ օգտագործման հետևանքով կորչում է այնքան ջուր, որով կարելի է ջրել առկա հողատարածություններից երկու անգամ ավելին։ Մեզ մոտ նման շռայլումը չափազանց վնասաբեր է։ Դարեր շարունակ հայ շինականը ջուր է երազել։ Այդ երազանքն իրականություն դարձավ միայն սովետական իշխանության տարիներին։ Կուսակցության և կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ կառուցվեցին հարյուրավոր ջրանցքներ, ջրհան կայաններ, ջրամբարներ։ Սևանի կենարար ջրերը շունչ տվեցին Արարատյան հարթավայրի դարավոր պապակ և արևախանձ հողերին, դրանք դարձան ծաղկուն այգեստաններ։ Մեր հանրապետությունում ձեռնարկված ջրաշինարարական աշխատանքների շնորհիվ 1970 թվականին ջրովի նոր հողերի տարածությունը կանցնի 84 հազար հեկտարից։



Որոտանի ջրերը կբարձրանան Սյունյաց լեռները և կոռոգեն լեռնաշխարհի հողերը։

Հայաստանի գետերի ջրերը չշարաշահելու համար կառուցվել և կառուցվում են տասնյակ ջրամբարներ, ուր կհավաքվեն անձրևի, ձյան, ինչպես և գետերի ու գետակների ջրերը։ Միայն այս ջրամբարների միջոցով տարեկան կկուտակվի 850 միլիոն խորանարդ մետր ջուր։

Հայաստանի ջրային պաշարների միակ ամենախոշոր աղբյուրի՝ Սևանա լճի մակարդակը 17 մետրով իջեցնելու հետևանքով 40 տոկոսով նվազել են այնտեղ կուտակված ջրերի դարավոր պաշարները։ Բնական է, որ այն երկար շարունակել հնարավոր չէ։ Բայց դրա հետ մեկտեղ առանց իռիգացիայի մենք ո՛չ միայն չենք կարող ավելացնել գյուղատնտեսական մթերքների բերքատվությունը, այլև նույնիսկ պահպանել դրանց ներկա մակարդակը։ Մոտ ապագայում Արփա—Սևան ջրանցքի շինարարությամբ կլուծվի նաև այդ հարցը։ Մինչև ջրանցքի ավարտումը կօգտագործվեն Արտաշատի և Մխչյանի ջրհան կայանները, որի շնորհիվ Սևանում տարեկան կտնտեսվի ավելի քան 190 միլիոն խորանարդ մետր ջուր։

Ո՛չ միայն տնտեսաբար պետք է օգտագործել ջուրը, այլև հետևել, որ այն չաղտոտվի։ Առանձին գործարաններ ու փաբրիկաներ, տեխնիկական նպատակներով մեծ քանակությամբ ջուր գործածելով, թունավոր նյութեր են բաց թողնում ջրի մեջ, որը հետագայում բացասաբար է անդրադառնում ինչպես գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության, նույնպես և ջրային փաունայի վրա։ Մինչդեռ երկրագնդի շատ մասերում նույնիսկ խմելու ջրի բացակայության պատճառով մշակվում են մեթոդներ՝ ֆիլտրացիայի միջոցով ծովերի և օվկիանոսների ջրերն օգտագործելու համար։

Մեր մոլորակի մակերևույթը շատ անհավասար է հերկված։ Արևմտյան Եվրոպայում վարելահողերին է հատկացվում հողերի 31, Միացյալ Նահանգներում՝ 11, ՍՍՀՄ-ում՝ 10, Հարավային Ամերիկայում՝ միայն 4 տոկոսը։ Մասնագետները գտնում են, որ կարելի է վարել նաև ցամաքի 6—7 տոկոսը, որը մոտ 45 տոկոսով կնպաստի գյուղատնտեսական սննդամթերքների ավելացմանը։

Հայկական ՍՍՀ-ում վարելահողերը կազմում են ընդամենը 9, արոտավայրերը՝ 33 տոկոս, խամ ու խոպան «գցովի» հողերը՝ 160 հազար հեկտար կամ վարելահողի $1/3$-մասը։ Այդ հողերի յուրացումը գյուղատնտեսության առաջնահերթ խնդիրն է։ Արդեն սկսված է աղուտների և ճահճուտների (շուրջ 35 հազար հեկտար) ու Սևանի ազատված հողակտորների (18 հազար հեկտար) յուրացումը։ Մեր հանրապետությունում շատ նոր հողատարածություններ կյուրացվեն թեք լեռնալանջերից։

Տեխնիկայի արագ զարգացումը և էկոնոմիկայի ամրապնդումը շատ երկրների հնարավորություն կընձեռեն ավելի լայնորեն օգտագործելու հողային ֆոնդը։ Նորանոր հողակտորները օգտագործելի հողերի շրջանառության մեջ են դրվում ֆինանսական խոշոր ներդրումների հաշվին։

Քաղաքների և արդյունաբերական օբյեկտների ստեղծմամբ օգտագործվում են նոր հողատարածություններ՝ նախկինում անտառներ, մարգագետիններ և վարելահողեր։ Այսպես, միայն Երևանի սինթետիկ կաուչուկի գործարանն զբաղեցնում է 200 հեկտար տարածություն։ Մեզ մոտ ասես թե տրադիցիա է դարձել փաբրիկան, գործարանը կամ արդյունաբերական նշանակություն ունեցող որևէ օբյեկտ ստեղծել լավագույն հողերի հաշվին, մինչդեռ

այդ նպատակով կարելի է օգտագործել ցածր պտղաբեր, քարքարոտ կամ հիրաքխային հատվածները: Արդյունաբերական օբյեկտների տեղաբաշխումը գյուղատնտեսության համար ոչ պիտանի վայրերում հնարավորություն կտա զգալի չափով տնտեսելու ջրով ապահովված հողատարածություններ:

Հայկական ՍՍՀ-ում, ինչպես և լեռնային այլ երկրներում, զգալի տարածություն են գրավում նաև խոտհարքներն ու արոտները: Դրանք մեզ մոտ կազմում են հողատարածությունների 33 տոկոսը և հիմնականում կենտրոնացված են ալպյան, ենթալպյան և լեռնատափաստանային գոտիներում՝ հանդիսանալով մեր անասնաբուծության ոսկե ֆոնդը: Արոտների ընդհանուր վիճակով են պայմանավորված անասնապահության թե՛ քանակական և թե որակական ցուցանիշները: Ալպյան մարգագետինները չափից ավելի ծանրաբեռնելիս կամ անսիստեմ օգտագործելիս ենթարկվում են դեգրադացիայի՝ քայքայման: Արժեքավոր կերային խոտերը դուրս են մղվում խոտածածկից, և դրանց տեղը գրավում են մոլախոտերը: Մինչև այժմ մեր մարգագետինները չեն պարարտացվում, չեն ցանվում արժեքավոր խոտաբույսեր, որի պատճառով արոտները, աստիճանաբար կորցնելով իրենց ջրակլանիչ հատկությունները՝ ենթարկվում են էռոզիայի: Նրանց հաշվառումն ու պասպորտիզացիան լոկ հաշվառման միջոցառում է և ոչ թե արոտների ու խոտհարքների արմատական բարելավման և դրա մեկ միավորից ստացվող խոտածածկույթի ծավալի և արդյունավետության բարձրացման միջոց:

Ներկա էտապում անհրաժեշտ է ոչ թե մարգագետինների պասպորտիզացիա, այլ արոտների վիճակը բարելավող բազմաթիվ միջոցառումների անհապաղ իրագործում (գազոնային սիստեմ, պարարտացում, արժեքավոր կերաբույսերի ցանք, պայքար մոլախոտերի դեմ և այլն):

Արոտների գերարածեցումը մեծ վնաս է հասցնում բուսական ծածկույթի պոտենցիալ կարողությունների դրսևորմանը, վերջին հաշվով՝ աղքատացնում է հողը: Նույնիսկ մեկ գերարածեցումը զգալի չափով իջեցնում է արոտի արդյունավետությունը, իսկ սիստեմատիկ արածեցումները շարքից հանում են արոտավայրերը: Թեկուզ երկու տարի տևողությամբ արոտավայրը հանգիստ թողնելով, վերջինիս արդյունավետությունը կբարձրանա մի քանի անգամ: Իսկ եթե մեր արոտավայրերում կազմակերպվեն արմատական բարելավման այնպիսի միջոցառումներ, ինչպես՝ հարթեցումը, հորիզոնական վարը, արոտի մաքրումը վնասակար խոտաբույսերից և քարերից, պարարտացումը, հորմոնների (անի ստիմուլյատորների) ներարկումը, նոր և արժեքավոր կերահորմոնների ցանքսը, ջրարբիացումը և այլն, ապա խիստ կբարձրանա արոտավայրերի արդյունավետությունը:

Գյուղատնտեսության ներկա վիճակը և զարգացման հեռանկարները հիմք են տալիս ասելու, որ մարդկությունը բնության պարգևած օրգանական հարստությունների ռացիոնալ օգտագործման հետ մեկտեղ պետք է օգնի նրան՝ վերականգնելու եղած հարստությունները, իսկ գիտության ու տեխնիկայի զարգացման ներկա էտապում այդ հնարավոր է: Դրա համար անհրաժեշտ է խոր և բազմակողմանի, կոնկրետ ուսումնասիրել ողջ մոլորակի օրգանական աշխարհի արտադրողականությունը, որը մարդկանց սննդանյութերի և տեխնիկական հումույթների միակ աղբյուրն է: Այժմ գիտնականների միջազգային ասոցիացիան, ուր ընդգրկված են նաև սովետական գիտնական-կենսաբաններ, զբաղված է մեր մոլորակի կենսական ռեսուրսների չեշտակի բարձրացման հարցերով: Այդ իսկ առիթով որոշված է ստեղծել միջազգային



բիոլոգիական ծրագիր: Ասոցիացիան առաջնորդվելով դրանով, հինգ տարում (սկսած ընթացիկ տարվանից) միաժամանակ, տարբեր երկրներում մի ընդհանուր ծրագրով ու մեթոդիկայով ուսումնասիրություններ կկատարի՝ բացահայտելու բուսական ու կենդանական աշխարհի բիոլոգիական արդյունավետությունը ցամաքում, ծովում, լճերում: Այդպիսով հնարավոր կլինի սահմանել օրգանական նյութերի բաշխման հիմնական օրինաչափությունները, անը, ամենամյա վերանը և վերականգնման չափերը: Անհրաժեշտ է գտնել, թե ինչ պայմաններում է հնարավոր հասնել հողի առավելագույն արդյունավետության:

Սովետական Միությունում արդեն վաղուց են զբաղվում համանման ուսումնասիրություններով, որոնք համապատասխանում են միջազգային բիոլոգիական ծրագրին: Այդ գործում մեծ ավանդ են ներդրել նաև Հայկական ՍՍՀ գիտնականները, հիդրոլոգները, հողագետները, կենսաբանները՝ ուսումնասիրելով անտառների, մարգագետինների, ջրավազանների արդյունավետությունը, որը հատկապես կարևոր է քսերոֆիտ-անապատային շրջաններում:

Բույսերի արդյունավետության հարցերին նվիրված խոշոր գիտաժողով տեղի ունեցավ 1966 թվականին, ՍՍՀՄ ԳԱ Լենինգրադի բուսաբանական ինստիտուտում: Սովետական ազգային կոմիտեին կից միջազգային բիոլոգիական ծրագրով նախատեսված այդ գիտաժողովում լսվեցին 100-ից ավելի զեկուցումներ, ուր ընդհանրացվում էին ինչպես նախկինում կատարված աշխատանքների արդյունքները, այնպես էլ սովետական գիտնականների այդ ծրագրով նախատեսված աշխատանքները՝ միջազգային բիոլոգիական ծրագրի իրականացման ասպարեզում:

ՄՈՒԼՔԻՋԱՆՅԱՆ Յ. Ի
ԲԱՐՍԵՂՅԱՆ Ա. Մ

կալից փոփոխության չի ենթարկվել։ Այն մնացել է որպես ծանր, ոչ ազատ աշխատանք՝ շահագործողների օգտին։ Միայն աշխատանքի տեխնիկական բովանդակության փոխվելը, որքան էլ այն մեծ լինի, առանց սոցիալիստական հեղափոխության, չի բերում և չի կարող բերել աշխատանքի բնույթի արմատական փոփոխում։ Ուրիշների համար կատարվող աշխատանքը, առանց այդ արմատական պայմանի, չի դառնում աշխատանք իր համար, ամբողջ հասարակության համար։ Արտադրության տեխնիկական բազիսում կատարված փոփոխությունները կըհանգեն աշխատանքի սոցիալ-տնտեսական բնույթի փոփոխման միայն ու միայն հասարակական որոշակի պայմաններում։

Աշխատանքի բնույթի արմատական փոփոխման, սոցիալիստական աշխատանքի ձևավորման վճռական հիմքը ոչ թե տեխնիկական պրոգրեսն է ինքնըստինքյան, չնայած այն կարող է որոշակի պայմաններում զգալի դեր խաղալ, այլ, առաջին հերթին, հին հասարակարգի խորտակումը, մասնավոր սեփականության և կապիտալիստական արտադրության լիկվիդացիան, որը հիմնված է ուրիշի աշխատանքի յուրացման վրա։ Արտադրության միջոցների սոցիալիստական սեփականության ստեղծումը և սոցիալիստական հասարակության կառուցման մյուս միջոցառումները վճռական նշանակություն ունեն աշխատանքի բնույթի արմատական փոփոխման համար։ Միայն այդ վերափոխությունների բազայի վրա արտադրության տեխնիկական պրոգրեսը կարող է հսկայական դեր խաղալ՝ իր բնույթով սոցիալիստական աշխատանքի ձևավորման գործում։ Հետևաբար գործի էությունը տեխնիկայի մեջ չէ ինքնըստինքյան, այլ այն սոցիալական պայմանների մեջ, որոնցում տեղի է ունենում տեխնիկական պրոգրեսը։

Խոսելով սոցիալիստական աշխատանքի ձևավորման, նրա բնույթի, սոցիալ-տնտեսական բովանդակության արմատական փոփոխման մասին, մենք ի նկատի ունենք այդ օրինաչափ պրոցեսի պատմականորեն հիմնավորված երկու գլխավոր էտապները։ Առաջին էտապում կատարվում է անցում շահագործողների համար կատարվող աշխատանքից իր համար կատարվող, սոցիալիստական ամբողջ հասարակության օգտին կատարվող աշխատանքին։ Ստեղծվում է շահագործումից ազատ աշխատանք, որը հիմնված է արտադրամիջոցների հանրային սեփականության վրա և իրականանում է, «Ով աշխատի, նա կուտի» սկզբունքով։ Այստեղ աշխատանքն իրականացվում է ըստ ընդունակությունների և աշխատանքի վարձատրումը կատարվում է ըստ անհատական աշխատանքի որակի և քանակի։ Երկրորդ էտապում կատարվում է անցում սոցիալիստական աշխատանքից կոմունիստական աշխատանքին, մի աշխատանք, որը կդառնա մարդկանց առաջին կենսական պահանջմունքը, որը հիմնովին կազատագրվի իր վանող կողմերից, կդառնա իսկական ստեղծագործական աշխատանք։ Այս դեպքում ևս աշխատանքը հիմնված է արտադրամիջոցների հանրային սեփականության վրա, մարդիկ աշխատում են ըստ իրենց ընդունակությունների և նյութական ու հոգևոր բարիքներից օգտվում են ըստ իրենց պահանջմունքների։ Այդ երկու էտապներում էլ վճռական նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության անշեղ աճը, որը հանդիսանում է արտադրողական ուժերի զարգացման և սոցիալական վերափոխությունների հիմնական ցուցանիշը։

Սոցիալիստական աշխատանքին անցնելու հետ միասին բարձր հիմքի վրա վերականգնվում է արտադրամիջոցների և աշխատանքի միասնությունը։ Ինչպես արտադրամիջոցների սեփականության, այնպես էլ աշխատանքի ներկայացուցիչն այստեղ մեկն է՝ աշխատավոր մարդը, ժողովուրդը, նյութական և կուլտուրական բոլոր արժեքների ստեղծողը։ Նման պայմաններում, ինչպես նկատում էր Վ. Ի. Լենինը, «Ուրիշի համար հարյուրամյակներ աշխատելուց, շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո, առաջին անգամ է հնարավորություն ստեղծվում իր համար աշխատելու, այն էլ այնպիսի աշխատանքի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր նվաճումների վրա» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 26, էջ 495)։

Սոցիալիզմի պայմաններում աշխատանքը դառնում է համընդհանուր, բոլոր քաղաքացիների ընդհանուր պարտականությունը։ Ընդմիշտ ոչնչացվում է դարերով գոյություն ունեցող սոցիալական այն անարդարությունը, ըստ որի նա, ով աշխատում է, ոչինչ ձեռք չի բերում, իսկ ով չի աշխատում, բայց հանդիսանում է արտադրամիջոցների սեփականատերը, ձեռք է բերում ամեն ինչ։

Աշխատանքի բնույթի արմատական փոփոխումը, սոցիալիստական աշխատանքի ձևավորումը որպես պատմական մեծ ժամանակաշրջան ընդգրկող պրոցես, ուղեկցվում է երկու էական հանգամանքներով։ Նախ, զարգանում, խորանում է աշխատավորների անձնական նյութական շահագրգռվածությունն իրենց աշխատանքի արդյունքի նկատմամբ և, հատկապես, արտադրողականության բարձրացման գործում, ուժեղանում են աշխատանքի բարոյա-քաղաքական և հասարակական ազդակները, երևան է գալիս աշխատանքի նոր մոտիվը՝ գաղափարայնությունը աշխատանքում, ձևավորվում են կոմունիստական աշխատանքի տարրերը, մյուս կողմից՝ արմատապես փոխվում են աշխատավորների տեղը, դերը և դրությունը հասարակական արտադրությունում և ամբողջ սոցիալական կյանքում։ Աշխատավոր մասսաները դառնում են երկրի լիիրավ տերերը, նոր սոցիալիստական կյանքի կերտողները։ Սոցիալիզմի պայմաններում ոչ միայն արմատապես փոխվում է աշխատանքի բնույթը, այլև սոցիալիստական աշխատանքի քուրայում ձևավորվում է նոր մարդն՝ աշխատանքի, սեփականության, աշխատանքային ընկերների նկատմամբ իր նոր հայացքներով։

Սոցիալիստական արտադրական հարաբերությունները, որոնք շահագործումից ազատ մարդկանց ընկերական համագործակցության և փոխադարձ օգնության հարաբերություններ են, որոնք նպաստում, լայն ասպարեզ են բացում աշխատավոր մասսաների ստեղծագործական նախաձեռնության, ակտիվության, տաղանդի, ընդունակությունների զարգացման համար, ստեղծագործությունը դարձնում են մասսայական։ Այդ հարաբերությունները բարձրացնում են աշխատավորների խոր շահագրգռվածությունը ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման գործում, որոնք գիտակցում են, որ այդ զարգացումը ամբողջությամբ վերցրած կախված է նրանց անհատական և համատեղ աշխատանքից։

Սոցիալիզմի պայմաններում արտադրողները միավորված են շահերի, նպատակի միասնությամբ, որն ավելի է ամրապնդում նոր սոցիալիստական վերաբերմունքը աշխատանքի, ժողովրդական տնտեսության, գիտակցական կարգապահության, սոցիալիստական սեփականության նկատմամբ։ Աշխատավորները ձգտում են բարձրացնել իրենց կուլտուր-տեխնիկական մակարդակը և մասնագիտական որակավորումը, խելացի ձևով կազմակերպել արտադրությունը, աշխատանքը և հանգիստը։

Հասկանալի է, իհարկե, որ սոցիալիստական աշխատանքի, նոր մարդու ձևավորումը միանգամից չի կատարվում։ Դրա համար պահանջվում են երկար և համառ գործունեություն, ծավալուն և ամենուրեք տարվող կոմունիստական դաստիարակություն։

Բուրժուական ինդիվիդուալիզմը, ինչպես մնացած բնագավառներում, այնպես էլ աշխատանքի ասպարեզում, անհատին թշնամաբար հակադրում է կոլեկտիվին, ելնելով «ամեն մեկն իր համար, միայն աստված բոլորի համար» սկզբունքից։ Միանգամայն պարզ է, որ մասնավոր շահի և անձնական օգուտի այդ գիշատիչ սկզբունքը անխուսափելիորեն ծնում է մրցակցություն, սպեկուլյացիա, թույլերի կլանում ուժեղների կողմից, առաջացնում է բոլորի կռիվը բոլորի դեմ, հաստատում և ամրացնում է ունևորների իշխանությունը չունևորների վրա և այլ երևույթներ։

Սոցիալիստական հասարակարգն արմատախիլ է անում այդ ամենը, հաստատում և զարգացնում է կոլեկտիվիզմի սկզբունքը, ճնշումից և շահագործումից ազատագրված մարդկանց ընկերական համագործակցության և փոխադարձ օգնության սկզբունքը։ Սոցիալիստական հասարակարգում հաստատվում է «բոլորը մեկի և մեկը բոլորի համար» սկզբունքը, երևան է գալիս աշխատավոր կոլեկտիվի միավորումը ընդհանուր հաջողության հասնելու նպատակով, որն իր հերթին դառնում է բազա ամեն մի մարդու նախաձեռնության և հնարագիտության երևան գալու համար։ «Անհատը,—գրել է Մարքսը,—իր ձիրքերը բազմակողմանիորեն զարգացնելու հնարավորություն տվող միջոցներն ստանում է կոլեկտիվի մեջ, հետևաբար, միայն կոլեկտիվում է հնարավոր անձնական ազատությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 75)։

Կուսակցությունը ելնում է նրանից, որ հասարակական շահերի առաջնության անտեսումը անձնականի նկատմամբ, անձնական շահի գերագասումը մարդկանց մոտ անխուսափելիորեն ծնում են մանրբուրժուական և բուրժուական տենդենցներ, անարխո-սինդիկալիստական հակումներ, անարխիզմի և կոմունիզմի նույնացման մտայնություն։ Մյուս կողմից՝ կուսակցությունը հաշվի է առնում, որ աշխատավորների անձնական շահերի ու նյութական շահագրգռվածության անտեսումը կամ ժխտումը թուլացնում է անհատի անձնական նախաձեռնությունը, հնարագիտությունը և ակտիվությունը, պրակտիկայում հարուցում է անհատի և հասարակության շահերի հակասություն և այլն։

Դրա համար էլ սոցիալիզմն ապահովում է, մի կողմից, անձնական և հասարակական շահերի ներդաշնակ զուգորդումը՝ վերջինիս առաջնայնությամբ, մյուս կողմից՝ անհատի առավելագույն ազատությունը նրա ստեղծարար գործունեության մեջ։ Մի կողմից, համաժողովրդական յուրաքանչյուր խնդիր և սոցիալիստական շինարարության ընդհանուր պլանը մաքսիմալ չափով կոնկրետացվում է յուրաքանչյուրի անհատական աշխատանքում, մյուս կողմից՝ յուրաքանչյուրի անհատական աշխատանքը բարձրացվում է համաժողովրդական խնդիրների մակարդակին։

Կոմունիստական կուսակցության վարած լենինյան քաղաքականության շնորհիվ մեզ մոտ ներդաշնակորեն զուգորդվում են անձնական ու հասարակական շահերը, փառքի վահանին են բարձրացվում հասարակական շահերի առաջնությունը խորապես ըմբռնող աշխատանքի հերոսները։ Նորարարությունը, գյուտարարությունը, արտադրության կազմակերպման նոր ձևերի և

օրինակ ընդհանուր տպաքանակով [1]։ Թերթի աշխատանքներին ակտիվ մասնակցում էին Աշ. Հովհաննիսյանը, Հ. Հովսեփյանը, Բ. Բորյանը, Հ. Բժշկյանը, Ե. Գարագաշը և ուրիշներ։ «Կարմիր դրոշակը» շուտով դարձավ հայ բոլշևիկների հատու զենքը՝ մերկացնելով ու քննադատելով հայ իրականության մեջ բուրժուա-ազգայնական կուսակցությունների հակահեղափոխական գործունեությունը։ Թերթը գտնում էր, որ հայ ժողովրդի ազատագրության հարցը լիովին կապված է Ռուսաստանի պրոլետարական հեղափոխության հետ։ Հայ տարագիրների, ինչպես և Անդրկովկասի ու Հայաստանի աշխատավորների շրջանում այն պրոպագանդում էր կոմունիստական կուսակցության հերթական խնդիրները, սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության էությունը։

Այսպիսով, Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմը ծավալեց ագիտացիոն պրոպագանդիստական լայն աշխատանք։ Հայկական գործերի կոմիսարիատի հետ միասին Մոսկվայում հրատարակվեց մոտ 40 անուն գիրք ու բրոշյուր [2]։ «Կարմիր դրոշակը» դարձավ սովետական Ռուսաստանի հայ աշխատավորության մարտական թերթը։

ՌԿ(բ)Կ տեղական կազմակերպությունների հայկական սեկցիաները 1919—1921 թվականներին հրատարակում էին՝ «Կարմիր բանվոր» (Աստրախան), «Բանվորի կռիվը», «Բանվոր», «Խարիբկիթ» (Ռոստով-Նախիջևան), «Կարմիր աստղ» (Կրասնոդար), «Բանվորի ձայն» (Արմավիր), «Կոմունայի զանգ» (Սիմֆերոպոլ), «Աստղ» (Օդեսա), «Շեփոր» (Պոլտորացկ) թերթերը, «Կոմունիստ» ամսագիրը (Կիև)։

1919 թվականի մարտի 3-ին Աստրախանում լույս տեսավ «Կարմիր բանվոր» թերթը 3 4 հազար օրինակ տպաքանակով (լույս է տեսել թերթի 20 համար)։ Թերթի խմբագիրն էր Հ. Գյուլիքևխյանը։ Ակտիվ աշխատակցում էին՝ Ա. Խումարյանը, Մն. Թավաքելյանը և ուրիշներ։ Թերթը մշտապես անդրադառնում էր ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամությանը, ընթերցողներին մեկնաբանում տարբեր ազգությունների բանվորների ու չքավոր գյուղացիների միասնական պայքարի անհրաժեշտությունը, ցույց տալիս հայ ժողովրդի ազատագրության ուղիները։ Թերթն անխնա մերկացնում էր բուրժուա-ազգայնական պրոպագանդայի ամեն դրսևորում։ «Կարմիր բանվորը» 1919 թվականին զգալի աշխատանք կատարեց Աստրախանի հայ տարագիրների կոմունիստական աշխարհայացքի ձևավորման ուղղությամբ։

1920 թվականի հունվարի սկզբին Դոնի-Ռոստովն ազատագրվեց սպիտակգվարդիական բանդաներից։ Տեղի կուսակցական կազմակերպությունները ձեռնամուխ եղան կուսակցական և սովետական շինարարության խնդիրների կենսագործմանը՝ դրանում ընդգրկելով քաղաքի բազմազգ բնակչությանը։ Ռոստով-Նախիջևանի հայ կոմունիստները առաջիններից էին, որ ստեղծեցին ՌԿ(բ)Կ Ռոստով-Նախիջևանի կազմակերպության հայկական սեկցիան՝ 1920 թվականի հունվարի 15-ին [1]։

Ռոստով-Նախիջևանի հայ ազգաբնակչության կյանքում զգալի դեր խաղաց հայկական սեկցիայի օրգան «Բանվորի կռիվը» թերթը, որի առաջին համարը լույս տեսավ 1920 թվականի մարտի 3-ին։ Այն խմբագրում էին Աշ. Հովհաննիսյանը, Ե. Զուբարը և Եր. Մելիքը (Երեմ Մելիք Յոլչյան)։ Թերթն անդրանիկ համարի առաջնորդողում նշում է իր անելիքները. «Հաղթական այս օրերին «Բանվորի կռիվը» գալիս է տարածելու ու ամրապնդելու հայ բանվորության ու գյուղացիության մեջ կոմունիստական հասկացողություններ, անխնա պայքարելու տեղական հակահեղափոխական տարրերի դեմ» [2]։

«Բանվորի կռիվը» ուներ Գեղի կազեր խմբագիրը կրող մի բաժին, որտեղ Նոր-Նախիջևանի բարբառով հոդվածներ էին տպագրվում, որոնք արտացոլում էին միջազգային դրությունը, հաղորդումներ՝ սովետական կառավարության որոշումների, Կարմիր բանակի գործողությունների մասին։ Հետագայում այդ բաժնի հիման վրա ստեղծվում է «Խարիբկիթ» (Զքավորություն) շաբաթաթերթը, որը նույնպես հայկական սեկցիայի օրգանն էր (առաջին համարը լույս տեսավ 1920 թվականի հունիսի 13-ին)։

Հայկական թերթերի շուրջը համախմբված ժուռնալիստները կատարում էին ո՛չ միայն գրական, այլև կազմակերպչական մեծ աշխատանք։

ՌԿ(բ)Կ Ռոստով-Նախիջևանի հայկական սեկցիան 1921 թվականին ևս մեծ ուշադրություն էր նվիրում տպագիր օրգանի ստեղծմանը։ 1920 թվականի հոկտեմբերի 24-ին 32-րդ համարից հետո «Բանվորի կռիվը» թերթը դադարեց գոյություն ունենալուց։ 1921 թվականի մարտի 8-ին լույս է տեսնում հայկական սեկցիայի օրգան «Բանվոր» թերթի առաջին համարը (1921 թ. ընթացքում լույս է տեսել 65 համար)։

---

1 Տե՛ս Հոկտ. հեղ. կենտ. պետ. արխիվ, ֆ. 1318, ց. 1, գ. 630, թ. 97։

2 Տե՛ս «Կոմունիստ», № 6, Մոսկվա, 1962։

3 Տե՛ս ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, ց. 1, գ. 779։

---

1 Տե՛ս «Советский Дон», № 136, Ռոստով-Նախիջևան, 1920։

2 «Բանվորի կռիվը», № 1, Ռոստով-Նախիջևան, 1920։





Սկզբում թերթը լույս տեսավ որպես ՌԿ(բ)Կ Ռոստով-Նախիջևանի կազմակերպության հայկական սեկցիայի օրգան։ Չորրորդ համարից այն դառնում է ՌԿ(բ)Կ Դոնի շրջանային կոմիտեի հայկական սեկցիայի օրգանը։ Թերթի խմբագրության կազմում էին՝ Ա. Բերբերյանը (խմբագիր), Ա. Խիրխիրյանը, Վ. Դոմբայանը, Ռ. Սարաֆյանը (պատասխանատու քարտուղար), Գ. Սողոմոնյանը (թարգմանիչ-սրբագրիչ), Գ. Աթարովը [1]։ «Բանվորը» անխոնջ պրոպագանդում էր ինչպես Դոնի շրջանի, այնպես էլ Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության վերականգնման ուղղությամբ հայ աշխատավորների գործունեությունը։

1920 թվականի սկզբին Եկատերինոդարում (Կրասնոդար) ՌԿ(բ))Կ Կուբան-սևծովյան շրջանային կոմիտեին կից ստեղծվում է հայկական սեկցիա [2], որը վարում էր նաև գրավոր պրոպագանդա։ Դեռևս 1918 թվականին Կրասնոդարում լույս էր տեսնում «Արձագանք» շաբաթաթերթը։ Խմբագրության կազմի մեջ մտնում էին՝ Ծ. Թորգոմյանը, Վ. Վաղարշյանը, Գ. Գայֆեճյանը, Գ. Մխիթարյանը, Ա. Բաբասյանը։ Հետագայում լույս է տեսնում նաև «Արշալույս» գրական-հասարակական ժողովածուն։

1920 թվականի ապրիլի 7-ին ՌԿ(բ)Կ Կուբան-սևծովյան մարզային կոմիտեն քննարկում է հայերեն տպագիր օրգանի հրատարակման հարցը [2]։ Նկատի ունենալով նյութական դժվարությունները, այն ժամանակ թերթի հրատարակությունը հետաձգվում է։ Սակայն հայ կոմունիստների եռանդուն աշխատանքն ապարդյուն չի անցնում։ 1920 թվականի օգոստոսի 1-ին լույս է տեսնում «Կարմիր աստղ» հայերեն թերթի առաջին համարը։ Թերթը խմբագրում էին Ն. Տեր-Անդրեասյանը և Կ. Հալաբյանը։ «Կարմիր աստղը» սկզբում հրատարակվում էր որպես Ռուսաստանի կոմունիստական կուսակցության Կուբան-Սևծովյան քարտուղարությանը կից արևելյան ազգությունների բաժնի օրգան, իսկ 38-րդ համարից սկսած՝ ՌԿ(բ)Կ Կրասնոդարի հայկական սեկցիայի օրգան։ 1920 թվականին լույս տեսավ թերթի 38, իսկ 1921-ին՝ 100 համար։ Թերթի տիրաժը հասավ 3000-ի։

1920 թվականի վերջին Կրասնոդարում ստեղծվում է կոմերիտմիության Կուբան-սևծովյան շրջանային կազմակերպությանը կից հայկական սեկցիա։ Այն ուներ իր օրգանը՝ «Կարմիր երիտասարդության թերթիկը», որի առաջին համարը լույս տեսավ 1921 թվականի հունիսի 21-ին, որպես «Կարմիր աստղ» թերթի մի էջ (խմբագիրներ՝ Ե. Հովհաննիսյան, և Ս. Մելիքսեթյան)։ 1921 թվականին լույս տեսան «Կարմիր երիտասարդության թերթիկի» 5 համար։

1918—1921 թվականներին Սովետական Ռուսաստանի տարբեր քաղաքներում հայերեն լույս տեսան 19 թերթ ու ամսագիր։ Այդ պարբերականներն անփոխարինելի դեր խաղացին հայ ազգաբնակչության շրջանում՝ հանդիսանալով նրա շահերի ու ձգտումների արտահայտիչը։ Թերթերը գրավոր պրոպագանդայի այն միակ միջոցն էին, որոնցով ամեն օր աշխատավորներն ընկալում էին մարքսիզմ-լենինիզմի գաղափարները։

Ռուսաստանի սովետահայ թերթերի էջերում տպագրվել են բանվորական ու գյուղացիական ժողովների ու միտինգների բազմաթիվ որոշումներ ու արձանագրություններ, որոնք դժբախտաբար չեն պահպանվել մեր արխիվներում։

Հաղթանակել էր Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ Ճնշված ժողովուրդներին ազգային ու գաղութային լծից ազատագրելու հետ մեկտեղ անհրաժեշտ էր հսկայական աշխատանք ծավալել, նրանց հեղափոխական տեսությամբ զինելու, սովետական իշխանության գաղափարների ճշմարտացիությունը ցայտուն արտացոլելու նպատակով։ Սովետական երկրում ամենուրեք հունի մեջ էր մտնում լենինյան ազգային քաղաքականությունը։ Ռուսաստանի հայկական մամուլը ևս ծառայում էր այդ քաղաքականության ծավալմանը՝ իր առաջնակարգ խնդիրը համարելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեկնաբանումն ու պրոպագանդումը, բուրժուական գաղափարախոսության անողոք քննադատությունը և պայքարը դրա դեմ։

ՍԱՐԳՍՅԱՆ Ս. Հ.

Բանասիրական գիտությունների թեկնածու

---

1 Տե՛ս Ռոստովի մարզի պետական արխիվ, ֆ. 67, ց. 1, գ. 2, թ. 32։

2 Տե՛ս ՍՄԿԿ Կրասնոդարի երկրամասի կուս. արխիվ, ֆ. 1, ց. 1, գ. 90, թ. 180։

---

1 Տե՛ս ՍՄԿԿ Կրասնոդարի երկր. կուս. արխիվ, ֆ. 1, ց. 1, գ. 7, թ. 4։

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Կուլտուրական հեղափոխության մասին: *Մ., Քաղհրատ, 1967, 272 էջ:*

*Այստեղ ամփոփված են Վլադիմիր Իլյիչի աշխատությունները, ելույթների սղագրությունները և այլ նյութեր, որոնցում տրված են նրա հայացքներն ու համոզմունքները կուլտուրական հեղափոխության մասին:*

ՁԵՐԺԻՆՍԿԻ Ֆ. Է.— Ընտիր երկեր *երկու հատորով: Հ. I (1897—1923) 590 էջ, Հ. II (1924—հուլիս 1926): Մ., Քաղհրատ, 1967, 416 էջ:*

*Երկհատորյակում զետեղված են Վ. Ի. Լենինի մերձավոր զինակից, հեղափոխության թշնամիների դեմ անողոք մարտնչող Ձերժինսկու աշխատությունները, գրած թռուցիկները, կարդացած զեկուցումները, ելույթները կուսակցության համագումարներում, կոնֆերանսներում, Կենտկոմի պլենումներում, աշխատավորության ժողովներում և այլ նյութեր:*

ԶՈՒԲՈՎ Ն.— *Ֆ. Է. Ձերժինսկի: «Հայաստան» հրատ., 1967, 517 էջ:*

*Արխիվային նյութերի և գրականության հիման վրա հեղինակը հանգամանորեն նկարագրել է ՍՄԿԿ անձնվեր գործիչ, սովետական կարգերի հաղթանակի աննկուն մարտիկ, Վ. Ի. Լենինի մերձավոր զինակից Ֆելիքս Էդմունդովիչ Ձերժինսկու (1877—1926) կյանքը, հերոսական գործունեությունը և անժամանակ մահը:*

Հայ-ռուսական հարաբերությունները XVIII դարի առաջին երեսունամյակում: *Փաստաթղթերի ժող. հատ. 2, մասն 2: Ե., ԳԱ հրատ., 1967, 420 էջ:*

*Ակադեմիկոս Ա. Գ. Հովհաննիսյանի խմբագրությամբ տպագրված ժողովածուի այս մասում զետեղված են ռուսերեն և հայերեն վավերագրեր 1722 թվականից մինչև 1736 թվականն ընկած ժամանակաշրջանի հայ մելիքների, Իսրայել Օրու, Մինաս վարդապետի և այլոց դիմումները, գրությունները և պատասխանները՝ ուղղված ռուսական թագավորներին և գործիչներին:*

ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ.— Մարքսիզմի տարածումը Հայաստանում *(1880-ական թթ.—1904 թ.) Գիրք առաջին: Եր., ԳԱ հրատ., 1967, 456 էջ:*

*Հեղինակն ուսումնասիրել է մարքսիզմի տարածման ու զարգացման ընթացքը Հայաստանում, հայ հասարակական, քաղաքական մտքի պատմության մեջ կատարված արմատական շրջադարձը, նրա ներգործությամբ հայկական պրոլետարիատի ու աշխատավորական զանգվածների մղած ազատագրական, հեղափոխական պայքարը:*

---

## *ՈՒՂՂՈՒՄ*

*Մեր ամսագրի 1967 թ. № 12-ի 94-րդ էջի, 2-րդ սյունի նախավերջին պարբերության ներքևից 5-րդ տողում կարդալ. «Այդ պայքարը դրսևորվեց 1250 թվականին...» ու այնուհետև ինչպես տեքստում:*


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59գ.: Հեռախոսներ. խմբագիր՝ 7—16—90, պատ. քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ — Ստորագրված է տպագրության 29/II 1968 թ.:

ՎՖ 05501 — Պատվեր 330 — Տիրաժ 11.356 — Գինը 25 կոպ.:

*Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:*


## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### *ԼՈՒՅՍ՝ «ՈՉՆՉԻՑ»*

*Ապակյա խողովակը լուսավորում է պայծառ էլեկտրական լամպի նման: Այստեղ արտասովոր է այն, որ ցերեկային լույսին հատուկ ոչ մի հաղորդալար չկա, կարծես թե խողովակն «ինքն իրեն է» լուսավորում: Սա հրաշք չէ, այլ անգլիական ինժեներների նոր հայտնագործությունը: Խողովակի ներքին մակերեվույթը ծածկող լյումինաֆորը լուսավորվում է բետա-ճառագայթների հարվածներից: Իսկ այդ ճառագայթները «արտադրում է» խողովակի մեջ լցված տրիտիում գազը՝ ջրածնի ռադիոակտիվ իզոտոպը: Ռադիոակտիվ ճառագայթումը կլանվում է խողովակի ապակու կողմից և մարդու վրա չի ազդում:*

*Այդպիսի խողովակներից արդեն պատրաստում են լուսային ռեկլամներ, որոնցով լուսավորում են մուտքերը և մութ սանդուղքները:*

### *ՍԵՎ, ԹԵ՞ ՍՊԻՏԱԿ*

*Սովորական դասարանային գրատախտակները ներկում են սև, դարչնագույն, երբեմն էլ կանաչ:*

*Ճապոնական ֆիրմաներից մեկն առաջարկում է դասարաններում պոլիէթիլենից պատրաստված սպիտակ գրատախտակներ դնել: Դրանց վրա գրում են գունավոր, սև կամ դարչնագույն կավճով և գրվածը շատ ավելի լավ է երևում, քան սովորական գրատախտակների վրա. ուսումնական կինոսեանսի ժամանակ այն ծառայում է իբրև հիանալի էկրան:*

### *ԹՉՈՒԿԸ՝ ՀԱՂՈՐԴԻՉ*

*Բուլղարիայում նախագծվել է տրանզիստորային 150 գրամանոց ռադիոհաղորդիչ, որը նախատեսված է մարզումների ժամանակ սպորտսմենների ֆիզիկական ծանրաբեռնվածության մասին տեղեկություններ ստանալու համար: Այդպիսի հաղորդչի և գրանցվող ապարատի օգնությամբ մարզիչը և բժիշկը միաժամանակ հետևում են մարզվող սպորտսմենների զարկերակին ու շնչառության հաճախականությանը: Ռադիոհաղորդիչն ամրացնում են սպորտսմենի գլխին և այն ոչ մի անհանգստություն չի պատճառում վերջինիս:*

### *ՍԵՐԿԵՎԻԼԱԽՆՁՈՐ*

*Սերկևիլը համով է ու հոտով, բայց համարյա վերամշակված ձևով են ուտում: Հում վիճակում այն շատ կոշտ է:*

*Բուլղարական հայտնի պտղաբույծ Վասիլի Պանովը սերկևիլի այդ արատը վերացնելու նպատակով այն խաչաձևում է խնձորի հետ: Ստացվում են երկու կայուն հիբրիդ, որոնց պտուղներում համադրված են երկու ծնողների արժանիքները. սերկևիլի յուրահատուկ համն ու բույրը զուգակցված է խնձորի հաճելի փափկության հետ: Պտուղների քաշը հասնում է 500 գրամի:*

### *ՄԱԳՆԻՍԸ ԱՐԱԳՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԱՎՈՐԻՉ*

*Գնացքների արագությունը կարգավորելու նպատակով, ճանապարհային սարքավորման օգնությամբ Բրիտանիայում կսկսեն կիրառվել էլեկտրամագնիսներ: Այժմ այդ սիստեմը փորձարկվում է փորձնական տեղամասերում: Երկաթգծի վրա տեղադրվում են հոսանքով սնվող երկու հաղորդիչ: Դրանցից մեկն ուղղագիծ է և զուգահեռ գծի առանցքին: Երկրորդը դրված է զիգզագաձև, որի չափերն ուղիղ համեմատական են պահանջվող արագությանը:*

*Լոկոմոտիվը սարքավորված է կոճով, որը որսում է հաղորդիչների փոխադարձ ինդուկցիայի միջոցով ստեղծված մագնիսական դաշտը: Եթե գնացքը գնում է անհրաժեշտ արագությամբ, այն ժամանակ դաշտի տատանումներից ստացված հաճախականությունը մնում է անփոփոխ: Եթե գնացքի արագությունը փոքր է կամ մեծ, տատանումների արագությունը փոփոխվում է: Դա արգելակների կամ արագությունն ավելացնող սարքավորումների ավտոմատիկ գործադրման ազդանշանն է: Այդ սիստեմի առավելությունն այն է, որ գնացքը միշտ ընթանում է տվյալ պայմանների համար առավել մեծ արագությամբ:*

Գ Ի Ն Ը 25 Կ.

77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԹՂԹԻՑ ԲԱՐԱԿ

*Իլլինոյի տեխնոլոգիական ինստիտուտի լաբորատորիայում ստացել են ապակի 0,05 միլիմետր հաստությամբ պլաստինի տեսքով, այսինքն՝ թղթից բարակ։ 50 այդպիսի սինթետիկ ձյութով սոսնձած պլաստիններից ստացվում է թափանցիկ պլիտա, որն իր ամրությամբ չի զիջում զրահային պողպատին։ Ի դեպ, այդպիսի պլիտաները օգտագործում են միջուկային ռեակտորների իլյումինատորում (ԱՄՆ)։*

## ԻՆՖՐԱԿԱՐՄԻՐ ՋԵՐՄԱՉԱՓ

*Ամերիկայում հնարել են ինֆրակարմիր ջերմաչափ, որով հնարավոր է հիվանդի ջերմությունը չափել մի ակնթարթում, առանց նրան կպչելու։ Բուժքույրը, հիվանդից մեկ-երկու մետր հեռավորության վրա, սարքի օբյեկտիվն ուղղում է դեպի նրա բաց բերանը, քթի խոռոչը կամ աչքի խնձորիկը։ Այդ օբյեկտներից յուրաքանչյուրը ճառագայթում և ցույց է տալիս հիվանդի ջերմությունը։*

## ՊԱՇՏՊԱՆԱԿԱՆ ՄՈՒՇՏԱԿ ԱՊԱԿՈՒՑ

*Ներկայումս, երբ ամուր ապակիները զարմանք չեն հարուցում, այս ապակու ամրությունը համարվում է արտասովոր։ Այն երեսուն անգամ ամուր է պողպատից։*

*Հետաքրքրական է, որ ի տարբերություն սովորական ու թրծած ապակիների, որքան մեծանում է ջերմությունը, այնքան ավելի ամուր է դառնում այս ապակին։ Ֆրանսիական ապակեգործներն այն ստացել են դժվարահալ ապակյա թիթեղը ավելի ցածր ջերմաստիճանում հալված ապակու մեջ սուզելով։ Բարակ ապակյա «մուշտակը» ապակեթիթեղի մակերեսի փխրուն ապակուն հաղորդել է «պողպատի հատկություն»։*

## ԻՆՖՐԱԿԱՐՄԻՐ ԱՐԵՎ՝ ԲԵՏՈՆԻՆ

*Որպեսզի բետոնե պանելները և բլոկները ձեռք բերեն կայուն ամրություն, 16—18 ժամ շարունակ դրանք տաքացնում են գոլորշիով։ Սովետական ինժեներ Յա. Ֆելդմանը առաջարկել է երկաթբետոնը տաքացնել ոչ թե գոլորշիով, այլ ինֆրակարմիր ճառագայթներով։ Այս ձևով տաքացման ժամկետը հինգ ժամով կրճատվել է։ «Ինֆրակարմիր» բետոնը շատ ավելի ամուր է, քան «գոլորշայինը», իսկ բետոնի բլոկները ավելի էժան են։ Նոր տեխնոլոգիայի համաձայն ամուր բետոն ստանալու համար պահանջվում է երեք անգամ քիչ ջերմություն։*

## Ո՞ՐՆ Է ՄԱՐԴՈՒ ԱՃՄԱՆ ԳՈՐԾՈՆԸ

*Բերկլիում (ԱՄՆ, Կալիֆոռնիա) մի խումբ գիտնականների հաջողվել է ստանալ մարդու աճի հորմոն և պարզել դրա կառուցվածքը։ Պարզվել է, որ այն բաղկացած է քիմիական 188 տարբեր նյութերից։ Ամերիկյան ամսագիրը, տպագրելով այդ հայտնագործության մասին, գտնում է, որ դա վիթխարի քայլ է մարդու աճը կարգավորող դեղամիջոց գտնելու ճանապարհին։*

## ԽՈՆԱՎՈՒԹՅՈՒՆԸ ՉԱՓՈՒՄ ԵՆ ՆԵՅՏՐՈՆՆԵՐԸ

*Արդյո՞ք բավարար չափով չորացել են նոր տան պատերն ու առաստաղը։ Այստեղ շինարարներին օգնում է նոր նեյտրոնային խոնավաչափը, որն ստեղծել են Պանֆիլովի անվան կոմունալ տնտեսության ակադեմիայի և փորձարարական նախագծման գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները։*

*Նեյտրոնային խոնավաչափը հնարավորություն է ընձեռում ճշգրիտ և օպերատիվ ձևով չափելու պատերի և առաստաղի խոնավությունը։*